# ՔԱՋՆ-ՎԱՐԴԱՆ

ԿԵՆՍԱԳՐՈՒԹԻՒՆ

ՀԱՅՈՑ ՄԵԾ ՍՊԱՐԱՊԵՏ ԿՈՐՈՎԻՆ ԵՒ ԿԱՐՄԻՐՆ

## ՎԱՐԴԱՆ ՄԱՄԻԿՈՆԵԱՆԻ

ԵՒ

## ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՎԱՐԴԱՆԱՆՑ ՊԱՏԵՐԱԶՄԻՆ

ԸՍՏ ԵՂԻՇԷԻ

ԵՒ

ԱՅԼԵՒԱՅԼ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹԻՒՆՔ
ՎԱՐԴԱՆԱՆՑ ՊԱՏԵՐԱԶՄԻՆ ՎՐԱՅ

Գրեց
ԲԱԲԳԷՆ ԵՊԻՍԿՈՊՈՍ

1920
ՊՈՍՏՈՆ

# ՁՕՆ

ՀԱՅՈՑ ՄԵԾ ԱՍՊԵՏ ԵՒ ՍՊԱՐԱՊԵՏ

ՔԱՋՆ-ՎԱՐԴԱՆԻ

ԱՆՁԻՆ ԵՒ ԳՈՐԾԻՆ

ՆՈՒԻՐԵԱԼ ԱՅՍ ԳՐՔՈՅԿԸ ԿԸ ՁՕՆԵՄ

ԲՈԼՈՐ ԱՆՈՆՑ, ՈՐ ԿԸ ՆԵՐՇՆՉՈՒԻՆ

ԱՒԱՐԱՅՐԻ ԴԻՒՑԱԶՆԻՆ ԱՍՊԵՏԱԿԱՆ ՈԳԻԷՆ,

ԱՆՈՐ ԱՐԻԱԿԱՆ ՈՒ ՔՐԻՍՏՈՆԷԱԿԱՆ ՆԿԱՐԱԳՐԷՆ,

ԵՒ

ԿԸ ԾԱՌԱՅԵՆ ԻՐԵՆՑ ԱԶԳԻՆ

ՄԱՔՈՒՐ ԱՆՁՆՈՒԻՐՈՒԹԵԱՄԲ,

ԱՍՊԵՏԱԿԱՆ ՎԵՀԱՆՁՆՈՒԹԵԱՄԲ,

ԵՒ

ԾԱՌԱՅՈՒԹԵԱՆ ԲԱՐՁՐ ԳԻՏԱԿՑՈՒԹԵԱՄԲ,

ԱՐԱՐԱՏԷՆ ՄԻՆՉԵՒ ՏԱՒՐՈՍ

ԵՒ

ՄԵՐ ԲՆԱՇԽԱՐՀԷՆ ՀԵՌՒ ԳԱՂՈՒԹՆԵՐՈՒ ՄԷՋ:

ԲԱԲԳԷՆ ԵՊԻՍԿՈՊՈՍ

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ

# ԿԱՐԵՒՈՐ ՈՒՂՂԵԼԻՔՆԵՐ

*Էջ* 32, *Ծանօթութեան առաջին երկու տողերը ուղղել այսպէս.*

— Աւելի ճիշդ է ըսել, Արտաշէսի գահազրկութենէն երեք չորս տարի ետքը, 431–32ին, եւլն.:

*Էջ* 57, *տող* 11, *«Վասակ, արիացած է»ի տեղ պիտի ըլլայ՝ «Վարդան արիացած է»:*

# ՇԱՐԱԿԱՆ ՎԱՐԴԱՆԱՆՑ

## Ս Տ Ե Ղ Ի

Դկ.

Արիացեալք առ հակառակսն, քաջութեամբ առնուլ ըզվրէժ խարէութեան· հանճարեղք 'ի հատուցումըն դաւանացն զամբարըշտացն արդարադատ չափըմամբ· *Զօրականք յաղթողք, պըսակեալք 'ի Քրիստոսէ*:

Փոխանակեալք զունայնութիւնս ընդ ճըշմարիտ յուսոյ անմահութեանն· փափաքանաց ձերոց առիք ըզկատարումն, մաքրիլ արեամբ յաղտոյ մեղաց տըղմոյ· *Զօրականք յաղթաղք, պըսակեալք 'ի Քրիստոսէ*:

Հայցեցէ'ք զխաղաղութիւն, ճըշմարիտ վըկայք Սըրբոյ Երրորդութեան, նեղելոցն յանօրինաց բըռնութենէ· զի ցընծասցուք յաղթանակաւ մարտի ձերոյ· *Զօրականք յաղթողք, պըսակեալք 'ի Քրիստոսէ*:

# ՅԱՌԱՋԱԲԱՆ

ՎԱՐԴԱՆԱՆՑ ՊԱՏԵՐԱԶՄԸ մեր Ազգային Պատմութեան այն դրուագներէն է, որոնց պէտք է որ լա՛ւ ծանօթանայ Հայ ժողովուրդը:

Այս գրքոյկը գրուած է, որպէս զի այդ ծանօթութիւնը ճշգրիտ ու հարազատ կերպով մատչելի ըլլայ մեր ժողովուրդին:

Ստոյգ է որ Վարդանանց Պատերազմէն ասդին մեր Ազգը հազար տեսակ պատերազմներու մէջ մտաւ ելաւ իր գոյութիւնը պահպանելու համար· ստոյգ է որ 451-էն մինչեւ 1920, հազար չորս հարիւր վաթսուն ինը տարիներու ընթացքին՝ մեր ժողովուրդին մտածելու, գործելու կերպերն ու պայմանները նոյն չմնացին· ստոյգ է որ 1895-էն ի վեր մա՛նաւանդ մեր ժողովուրդը անցաւ քաղաքական այնպիսի տագնապներէ, որոնք նախընթաց չունին· ստոյգ է որ այդ տագնապներուն եւ հալածանքներուն մէջ մեր ազգը ծնաւ բազմաթիւ *նոր* Վարդաններ, *նոր* Վահաններ, *նոր* Ղեւոնդ Երէցներ, *նոր* Սահակ Ռշտունիներ, ինչպէս նաեւ *նոր նոր* Վասակներ եւ Գդիհոններ· վերջապէս ստոյգ է, որ այս բոլոր նորագոյն դէպքեր եւ իրողութիւններ սիրտ չեն թողուր մեր ներսը, որ մոռնանք ներկայ անողոք իրականութիւնը եւ ելլենք զբաղինք շա՛տ հին անցեալի մը պատմութիւններով…: — Եւ սակայն, ստոյգ է նաեւ որ մենք ուզենք չուզենք, Վարդանանց Պատերազմն է, որ կ'արժանանայ շքեղ կոթողի մը պէս մեր ազգային բոլոր տագնապներուն, բոլոր հալածանքներուն, բոլոր

քաջագործութիւններուն, բոլոր ինքնապաշտպանութեան շարժումներուն եւ բոլոր ազատագրական պատմութիւններուն սկիզբն ու գլուխը:

Եւ ամէն տարի, երբ Սրբոց Վարդանանց Զօրավարաց Տօնը կու գայ, Հայ ժողովուրդը կը խանդավառի.— որովհետեւ մեր ազգային ողջմտութեան, մեր ազգային ազատ գոյութեան գիտակցութեան տօնին դարադարձն է որ կու գայ:

Ամերիկայի Հայոց մէջ կա'ն այնպիսիներ, որ կը մոլորին Վարդանանց Պատմութեան մէջ, եւ գրչով ու խօսքով կ'եղծեն այդ ազգային, այդ հայացի շարժման պատմական նկարագրին ամէնէն քնիկ եւ ամէնէն գեղեցիկ գիծերը, և այսպէս՝ անքաւելի մեղքեր կը գործեն ընդդէմ պատմական ճշմարտութեան:

Ես 1914 Հոկտմ. 22-ին ոտք դրի Նոր Աշխարհիս հողին վրայ, եւ այդ թուականէն ի վեր ամէն տարի, Վարդանանց Տօնին առթիւ, քան մը գրեցի թերթերու մէջ եւ խօսեցայ բեմերու վրայ, երկու որոշ նպատակով. նախ՝ ներկայացընել այդ իրողութիւնը ինչպէս որ է պատմութեան մէջ, եւ յետոյ՝ Վարդանանց ոգւով տոգորել մեր ժողովուրդը:

Շատ ուրախալի երեւոյթ մըն է արդարեւ, որ Ամերիկայի Հայութեան մէջ կա'ն հետաքրքիրներ, որոնք կը փափաքին ո'չ միայն լաւ սորվիլ Վարդանանց Պատերազմին պատմութիւնը, այլ նաեւ կը հիանան Քաջն-Վարդանի ասպետական վեհանձնութեան, արիական հայրենասիրութեան եւ հաւատարիմ քրիստոնէութեան վրայ, եւ կ'ուզեն որ այդ ոգւով ու նկարագրով դաստիարակուի Հայութիւնը:

Այս տարի, 1920, Շիքակօ էի, երբ վրայ հասաւ Վարդանանց Տօնը: Հոյլ մը բարեկամներ առաջար-

կեցին ինձ, որ դասախօսութիւն մը ընեմ այդ առթիւ: Ընդունեցի առաջարկը եւ այդ նպատակով պատրաստեցի Քաջն–Վարդանի կենսագրութիւնը եւ կարդացի զայն՝ Փետր. 16, ԲՇ. գիշեր անոնց ընտիր հաւաքոյթին առջեւ:

Շատ բան գրուած եւ խօսուած է Վարդանանց Պատերազմին վրայ. բայց այդ պատերազմի Սպարապետին կեանքը անծանօթ է առհասարակ, եւ շատեր ու շատեր Աւարայրի պատերազմով միայն կը ճանչնան Մամիկոնեան Զօրավարը: Մինչ այս մեծ եւ նորահրաշ Զինուորը՝ քարձր կրթութեամբ օժտուած եւ հոյակապ գործունէութեամբ փառաւորուած վաթսուն զարուններու ժպիտներով ու թեթեւութեամբ կը զուարթանայ Տղմուտի ափերուն մօտ, ի նիւս ճերմակ եւ օդապարիկ երիվարին:

Այդ կենսագրութիւնը հետզհետէ կարդացի նաեւ Ուստր, Փետր. 29, Կիր. գիշեր՝ հրապարակային ժողովի մը մէջ, եւ Մարտ 16, ԳՇ. գիշեր, Պոստոն, դարձեալ ընտիր հաւաքոյթի մը առջեւ, որոնց երկուքն ալ սարքուած էին ի յիշատակ Սրբոց Վարդանանց Զօրավարաց, եւ Քաջն–Վարդանի կեանքին վրայ սփռուած այս լոյսեր այնքան հանելի եւ կրթիչ տպաւորութիւն մը ըրին ունկնդիրներու վրայ, որ նոյն իսկ անոնց քաղձանքով որոշեցինք հրատարակել զայն եւ մատչելի ընել ժողովրդեան:

Ես 1908–ին հրատարակած եմ քննական ուսումնասիրութիւն մը ԵՂԻՇԷի Վարդանանց Պատերազմի Պատմութեան վրայ, որ զուտ բանասիրական ու պատմագիտական գործ մըն է, գրուած մասնագէտներու համար:

Դ

Քաջն-Վարդանի այս կենսագրութիւնը գրուած է այդ գործին քննական արդեանց համաձայն, ինչ ինչ նորագոյն յաւելուածներով:

Եւ որովհետեւ Քաջն-Վարդանը կենսագրելու ատեն՝ նպատակս եղած էր ո՛չ միայն Աւարայրի պատերազմին Հրամատարը ծանօթացնել, այլ նաեւ ի վեր հանել այդ պատերազմին նշանակութիւնը, ատոր համար Քաջն-Վարդանի կենսագրութեան կցորդեցի ԵՂԻՇէի Վարդանանց Պատմութեան շատ խիտ մէկ ամփոփումը, ինչպէս նաեւ ուրիշ յօդուածներ, զորս գրած եմ Ամերիկա հասնելէս ի վեր — քիչ մը յառաջ ալ դիտել տուի արդէն — Վարդանանց Զօրավարաց Տօնին առթիւ:

Թէ՛ կենսագրութիւնը եւ թէ՛ այս անջատ նիւթեր գրուած են ժողովրդեան համար, պատմութեան հաւատարիմ ոգւով եւ ոճով, եւ ամէնքը միասին կը կազմեն գրեթէ ամբողջութիւնը այն բոլոր նիւթերուն եւ խնդիրներուն, որ կարեւոր են Քաջն-Վարդանի կեանքը եւ Աւարայրի Պատերազմը շիտակ հասկընալու համար:

Ես, որ քսան հինգ տարիէ իվեր քննասիրութեանս նիւթ եմ ըրած մեր ազգային պատմութեան Ե·րդ Դարուն այս փառաւոր դէպքը, տեսակ մը նուիրական պարտք եւ իրաւունք կը համարիմ ինձ խնդրել ընթերցողներէս, որ սիրով եւ ուշի ուշով կարդան այս գրքոյկը, եւ ըստ այնմ սորվին եւ իւրացնեն պատմութեան հարազատ դասերը:

Դժբախտաբար մեր ժողովուրդը առ հասարակ չգիտեր իր ազգային պատմութեան դասերը:

Եթէ մենք՝ Հայերս՝ լաւ եւ շիտակ սորված ըլլայինք մեր Ազգին Պատմութիւնը, այսօր, հաւատա-

ցէ՛ք, տարբեր առանելութիւններով եւ յաջողութիւններով կ'ելլէինք 1915–ի հայկական հալածանքներու արհաւիրքներէն, որոնց ենթարկուեցաւ մեր Ազգը եւրոպական մեծ պատերազմի պատճառաւ:

Այսպիսի պատմական ուսումնասիրութիւններ գրելու առեն իմ ջանքս եղած է սա՛ ծառայութիւնը ընել իմ հայրենակիցներուն, որ անոնք դիւրին դիւրին սորվին եւ լա՛ւ սորվին մեր ազգային պատմութեան դասերը:

Եւ պէտք է խնամքով դիտել տամ, որ Վարդանանց Պատերազմին դասը այդ դասերուն գլխաւորն է եւ պարտաւորիչը:

* * *

Վարդանանց Պատերազմին պատմութիւնը թերի կը մնայ, եթէ այն զատուի Վահանեանց Պատերազմին Պատմութենէն: Այս է պատճառը, որ Վահանեանց շարժման կարեւորութիւնը եւ առոր վերաբերեալ խնդիրները յաճախ շեշտեցի եւ ի վեր հանեցի այս գրքոյկին մէջ:

Ինչպէս ԱՒԱՐԱՅՐ Վարդանանց Պատերազմին մէջ, նոյնպէս ՆՈՒԱՐՍԱԿ Վահանեանց դիմադրութիւններու ելքին վրայ՝ ա՛յնպիսի հանգրուաններ են, որոնց անունները ու թուականները պէտք է որ ամէն Հայ գիտնայ ջուրի պէս:

451 Աւարայրի Պատերազմին եւ Քաջն–Վարդանի նահատակութեան թուականն է. իսկ 484՝ ՆՈՒԱՐՍԱԿի դաշինքին եւ Քաջն–Վահանի յաղթանակին թուականը. յաղթանակ մը, որով կը պսակուի Վարդանանց Պատերազմը:

Եւ ահիկա կը նշանակէ, որ մեր նախնիք Արտաշատու ժողովքէն (449), ուր պաշտօնապէս յայտարարուեցաւ Վարդանանց դիմադրութիւնը, մինչեւ ՆՈՒԱՐՍԱԿԻ դաշինքը, *երեսուն հինգ* տարի խնդիր եւ կռիւ ունեցան Պարսից հետ, մինչեւ որ յաջողութեամբ ձեռք բերին ազգային ինքնօրինութեան իրաւունքը(*)։

Ազգային իրաւանց հասկըցողութեան եւ անոնց պաշտպանութեան մէջ ի յայտ եկող ներդաշնակութիւնը, կռիւներու մէջ տիրող յարատեւ ոգին, ազգային փառաւոր աւանդութեանց հանդէպ ցոյց տըրուած նախանձախնդրութիւնը, եւ միշտ սակաւաթիւ հաւատարիմներու վճռողական եւ անձնուէր արտայայտութիւնը այնպիսի իրողութիւններ են՝ Վարդանանց եւ Վահանեանց շարժումներուն մէջ, որոնց այսօր ալ պէտք ունի մեր Ազգը՝ այսքան աննըկարագրելի Զոհողութիւններէ ետքը...։

Բ. Ն.

Ուսթըրթաուն, 1920 Յուլիս 1, ՆՇ։

Ի Տօնի Սրբոց Թարգմանչացն Մերոց
Սահակայ եւ Մեսրոպայ

---

(*) Վահանեանց շարժումներու մասին առանձինն ուշադրութիւն դարձնելու համար, իմ ընթերցողներուն կը յանձնարարեմ հմտօրէն գրուած եւ դիւրամատչելի գրքոյք մը. — ՎԱՀԱՆ ՄԱՄԻԿՈՆԵԱՆ, *Հայրենեաց Ազատարար*, Կեանք եւ Գործունէութիւն, Պատմական եւ Աշխարհագրական Ծանօթութիւններ. Գրեց Վ. Մ. Քիւրքճեան. 1917. Տպ. Նեբսօ, Նիւ Եորք, Գին՝ 50 սէնթ։

# ՔԱՋՆ–ՎԱՐԴԱՆԻՆ

## ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆԸ ՅԱՋԿԵՐՏ Բ.Ի

### ԱՌՋԵՒ ԵՒ ԻՐ ԽՈՐՀՐԴԱՒՈՐ ՈՒԽՏԸ

— «Զիմոց զնախնեացն զհպատակութիւն եւ զվաստակ՝ զոր յայս Դուրս եւ առ Ձեր Թագաւորութիւնդ արարեալ է, ի ժամանակէ յորմէհետէ կարգեալ եմք ի ձեր ծառայութիւնդ, դուք ամենեքեան քաջագոյն գիտէք· եւ ինձ ոչ է պիտոյ յաղագս այդպիսի իրաց մի ըստ միոջէ տեղեկացուցանել զձեզ, զոր ստուգագոյն առաւել ճանաչէք քան զիս:

«Իսկ ես, թէպէտ և շատ նուաղ եմ քան զիմ նախնիսն, սակայն ո՛րչափ կարն էր յիս, եդեալ էր ի մտի արդար վաստակօք հաճել զմիտս ձեր· եւ ուր հասեալ էի ի գործ ի ձեր հրամանէ, տեսեալ էր զօրագլխաց ձերոց եւ իմ ընկերաց՝ ըստ իմ ուժոյ միամտութեամբ զիմ զգործն եւ զվաստակն:

**«ԲԱՅՑ ԱՐԴ ՅԱՅՍՄՀԵՏԷ ԱՅՍՊԷՍ ԿԱՄՔ ԵՆ, ՋԱՆԱՄ ԶԻ ԹԷ ՅԱՅԺՄ ԳՈՐԾԵԱԼ ԻՆՉ ԻՑԷ՝ ԵՒ ՈՉ ԱՐԺԱՆԻ ԱՆՈՒԱՆ ԿԱՄ ԳՈՎՈՒԹԵԱՆ, ՅԱՅՍՄՀԵՏԷ ՀՆԱՐԻՄ ԱՄԵՆԱՅՆ ԶՕՐՈՒԹԵԱՄԲ ԵՒ ՈՒԺՈՎ՝ ՕԳՆԱԿԱՆՈՒԹԵԱՄԲՆ ԱՍՏՈՒԾՈՅ՝ ԳՈՐԾԵԼ ԳՈՐԾ ԱՅՆՊԻՍԻ, ԶՈՐ ՈՉ ՄԻԱՅՆ ԱՌԱՋԻ ՁԵՐ ԱՐԵԱՑ, ԱՅԼ ԵՒ Ի ԿԱՅՍԵՐ ԴՐԱՆՆ ԵՒ ՅԱՅԼ ԱԶԳՍ ՊԱՏՄԵՍՑԻ ՀԱՄԲԱՒՆ ԱՅՆ ՄԻՆՉԵՒ ՅՅԱՒԻՏԵԱՆ»** (Ղ. ՓԱՐՊ. էջ 175–76)։

# ՔԱՋՆ - ՎԱՐԴԱՆ

## ՎԱՐԴԱՆԻՆ ԾԱԳՈՒՄԸ
### (ՄԱՄԻԿՈՆԵԱՆՔ)

ՄԱՄԻԿՈՆԵԱՆ Տոհմին շառաւիղն է Քաջն Վարդան:

Եւ կ'արժէ որ Քաջն Վարդանը ճանչնալէ յառաջ, ճանչնանք Մամիկոնեանները, գիտնալու համար թէ ի՞նչպիսի տոհմէ մը սերած է Աւարայրը Դիւցազնը:

Մեր ազգային պատմագիրներ(1) կ'աւանդեն, թէ Մամիկոնեանք բնիկ Ճենացի են, քաջատոհմիկ, թագաւորական տոհմէ, եւ իրենց նախնին Մամգուն (ըստ Խորենացւոյ), Ճենաց աշխարհէն եկած հաստատուած է ի Հայաստան, ներքին խռովութեան մը հետեւանքով:

Խորենացի շատ հետաքրքրական տեղեկութիւններ կուտայ Ճենաց վրայ, եւ ճարտարօրէն ալ կը նկարագրէ Ճենաց աշխարհին բնական ճոխութիւնները: — Այդ տեղեկութեանց համաձայն՝ Ճենք մօտաւոր են Հայաստանի սահմաններուն, արեւելեան հիւսիսային կողմէն, եւ իրենց աշխարհն ալ առաջին

(1) Փ. Բուզանդ, Մովսէս Խորենացի, Սեբէոս:

եւ գլխաւոր *է հիւսիսական բոլոր ազգերու մէջ:* *Ճենք՝* խաղաղասէր *են նկարագրով, իսկ իրենց աշխարհն ալ* սքանչելի *է:*

*Խորենացւոյ նկարագրութեան մէջ ուշագրաւ են* քրքմաւէտ, սիրամարգաշատ, բազմամետաքս *բացառութիւններն եւ թանկագին քարերու եւ մարգարիտներու շատութիւնը*(1):

*Առաջին տեսութեամբ այս բոլորը այնպէս կարծել կուտան, թէ Խորենացին՝ Ճենք, Ճենաց աշխարհ ըսելով՝ ակնարկած ըլլար ո՛չ թէ Հայաստանի* մօտաւոր *ազգի մը եւ երկրի մը, այլ* հեռաւոր *Չինաց եւ Չինաստանի, որ կը տարածուի Ծայրագոյն Արեւելքի հարաւային արեւելեան սահմաններու վրայ, մինչեւ Խաղաղականի ջուրերը: Բայց իրողութեան մէջ այդպիսի բան մը չկայ:*

*Վասն զի, եթէ այդ նկարագրութիւնը պատշաճէր իսկ Չինաստանի, Խորենացին հակասութեան մէջ ինկած պիտի ըլլար ինքնին, երբ մէկ կողմէն Ճենաց*

---

(1) Խորենացւոյն խօսքերը յառաջ կը բերեմ·— «'Ի սորա (Շապհոյ) աւուրս եկեալ 'ի Հայս նախնի ազգին Մամիկոնէից *յարեւելից հիւսիսականէն*, 'ի *քաջատոհմիկ* եւ 'ի *գլխաւոր* աշխարհէ եւ ամենայն հիւսիսականաց ազգաց *առաջին*, ասեմ իսկ զՃենացն՝ որ ունին զրոյց այսպիսի»:— «Սքանչելի է եւ աշխարհըն առատութեամբ պտղոց, եւ գեղեցիկ բուսովք զարդարեալ, քրքմաւէտ եւ սիրամարգաշատ եւ բազմամետաքս, անբաւութիւն յամուրաց եւ հրէշից, եւ որ էշայծեմունդն անուանեն· ուր հասարակաց կերակուր ասեն զառ մեզ պատուական եւ սակաւուց ճաշակելիս, զփասեան եւ զպոր, եւ այլ այսպիսիք: Այլ զականց եւ զմարգարտաց ոչ ասեն գիտել զհամար՝ մեծամեծացն· իսկ պատուականս առ մեզ զգեստուց եւ սակաւուց ագանելիք, հասարակաց նոցա է զգեստ: Եւ այս յաղագս աշխարհին Ճենաց» (Մ· Խոր· Բ· ձա·):

աշխարհը կը տեղագրէ իբրեւ մօտաւոր Հայոց աշխարհին, արեւելեան հիւսիսային դիրքով, եւ միւս կողմէն ալ դէ՛ Չինաստանը մատնանիշ ընէր, իբրեւ երկիր ֆրֆմաւէտ, սիրամարգաշատ եւ բազմամետաֆս:

Չինական արիւնը, չինական դիմագիծը, չինական լեզուն, մէ՛կ բառով, չինականութիւնը՝ բոլորովին օտա՛ր է ճեճազճեայ Մամիկոնեանց, որոնց յատուկ անունները, դիմագիծը, անոնց մարտնչող ոգին, արիական եւ հայացի նկարագիր մը ունին:

Գ. Փառնակ, հիմնուելով Փ. Բուզանդի մէկ տեղւոյն վրայ (Դ. բ.), ուր կը նկարագրուի Մամիկոնեանց սպարապետական կարգուսարքը եւ անոնց դրօշը, իբրեւ ազաճազգիֆ, աղաճադրօշֆ, արծուէճշաճֆ եւ վարժճակաճիշֆ, Մամիկոնեաններու ծագումը կը փնտռէ Ալանաց մէջ. իսկ Ալանները, ինչպէս նաեւ Պահլաւ կամ Պարթեւները ազգակից կը համարի սկիւթական ցեղի մը, կամ աւելի բացայայտ կերպով կը նոյնացնէ զանոնք Թիւրքմէններու հետ(1):

Թիւրֆմէճճեր արիական ցեղէ են, եւ նոյն՝ մեր Թորգոմեաճց հետ, եւ հետեւաբար սկիւթական ծագում չունին:— Որովհետեւ Սկիւթիա (Scythia) ըսուած երկիրը, ըստ Կիպպընի (Ա. էջ 271, Ծնթ.) կը տարածուի Պալթիկ Ծովէն մինչեւ Արալ Լիճը, եւ այն ժողովուրդը, որ կը բնակէր այդ երկրին հիւսիսային արեւելեան անկիւնը, ընդմէջ Կեղտիկայի եւ Սկիւթիոյ, կը կոչուէր Կեղտօ–Սկիւթացի: Իսկ ըստ Մոմսէնի (Գ. էջ 281), Սկիւթացիք կը պատկանին

(1) Տե՛ս ԱՆԱՀԻՏ, Ժ. Տարի, 1908, թիւ 1–4. եւ ՏԱՒՐՈՍ 1918, էջ 172–74:

Մոնկոլեան ցեղին, և շատ կը նմանին Սիպերիոյ արդի ժողովրդեան՝ իրենց սովորութիւններով և իրենց բնախօսական երեւոյթներով: Ըստ Ջամչեանի՝ Սկիւթացիք եւ Թաթարք նոյն են ծագումով, բայց կը բաժնուին բազում ցեղերու եւ թագաւորութեանց (Գ. էջ 197, 418, 419, եւյլն.)։

Արդ՝ Մամիկոնեանք դարձեալ իրենց արիական ցեղի յատուկ անուններով եւ Հայացի նկարագրով ինչպէս որ ժխտեցին չինական գաղթի մը երեւոյթը, նոյնպէս կը ժխտեն սկիւթական (Մոնկոլ կամ Թաթար) ծագման մը վարկածն ալ:

Մեզ համար պարզ եւ բաւական գոհացուցիչ են Խորենացւոյն տուած տեղեկութիւնները Ճենաց եւ Ճենաց աշխարհի մասին, Հայաստանի արեւելեան հիւսիսային կողմերը, մօտաւոր սահմաններու վրայ:

Դժբախտաբար պատմութիւնը զլացեր է մեզ լրացուցիչ տեղեկութիւններ Ճենաց շուրջ, եւ այս պատճառաւ անկարելի է ճշգրտել անոնց երկրին բուն դիրքն ու սահմանները:

Ստուգիւ, պատմութեան համար դժբախտութիւն մըն է այս, եւ այս դժբախտութիւնը արդիւնք է այն մեծ յեղափոխութիւններուն, որոնք, դարերու ընթացքին, վերիվայր շրջեցին Կովկասեան բոլոր ցեղերը, որոնցմէ ոմանք բնաջինջ եղան իսպառ. ոմանք իրարու խառնուեցան ու ձուլուեցան:

Եւ այս ջնջումներու եւ փոփոխութեանց մէջ դժուար է ուրուագծել հին ազգաց պատմութիւնը եւ անոնց բնաշխարհներուն տեղագիրը:

Իսկ այս դժուարութեանց մէջ դարձեալ Խորենացւոյն սուղ տեղեկութիւններն են, որ քիչ մը լոյս կը նշողեն Մամիկոնեան նախարարութեան սկզբնա-

ուրութեան վրայ՝ Հայաստանի մէջ, առանց խառնե-
լու եւ խառնել տալու մեզ այդ քաջատոհմիկ եւ ազ-
նուական տոհմին արիւնը Չինական կամ Մոնկոլեան
ցեղերու արեան հետ:

Եւ հետեւելով Խորենացւոյն, կը տեսնենք, որ
ճենաց Թագաւորական ցեղէն Մամգուն անուն նա-
խարար մը, քաղաքական պատճառներով, կը թողու
իր բնաշխարհը, եւ տնով տեղով փախստեայ կ'իյնայ
նախ Պարսկաստան, եւ յետոյ՝ Հայաստան, Տրդատի
առէն, եւ մեծ ընդունելութիւն կը գտնէ Հայոց սէգ
թագաւորէն:

Տրդատին դէմ նախարարական ներքին դաւա-
դրութիւններ կային այդ պահուն, եւ Տարօնի մէջ
(Մշոյ աշխարհ) Սլկունեաց Նախարարութիւնը պար-
զած էր ապստամբութեան դրօշը՝ իր բերդին, հուշա-
կաւոր Ողական ամրոցի վրայ:

Մամգուն շատ հաւատարիմ կ'ըլլայ Տրդատին, և
լաւ կազմուած ծրագրի մը համաձայն, օր մըն ալ կը
հեռանայ Տրդատի քովէն, իբրեւ թէ թշնամու-
թեամբ, եւ կ'անցնի Սլկունեաց կողմը, առանց տեղի
տալու ոեւէ կասկածի:

Քիչ յետոյ, երբ Մամգուն կը գրաւէ Սլկունեաց
բացարձակ վստահութիւնը, կը գործադրէ իր ծրա-
գիրը· այսինքն՝ սրէ կ'անցընէ ապստամբութեան
պարագլուխները եւ բնաջինջ կ'ընէ Սլկունեանց Նա-
խարարութիւնը:

Տրդատ, վարձատրելու համար Մամգունի հա-
ւատարմութիւնն ու քաջագործութիւնը, անոր կը
պարգեւէ Ողական ամրոցը եւ Սլկունի Նախարարու-
թեան բոլոր կալուածներն ու իրաւունքները: Եւ
այս կերպով ճենազն Մամգունի ցեղը, այսինքն՝ Մա-

*միկոնեանք, տէր կ'ըլլան Տարօնին կամ Մշոյ աշխարհին, եւ իրենց աւանդական հաւատարմութեամբ եւ քաջութեամբ կը ծառայեն իրենց նոր հայրենիքին։*

## ՄԱՄԻԿՈՆԵԱՆՑ ԿԱԼՈՒԱԾՆԵՐԸ

ՏԱՐՕՆ *սիրտն է Հայաստանին։ Հեթանոս Հայաստանի պարծանքն է Տարօն, իր համբաւաւոր մեհեաններով՝ Աշտիշատէն մինչեւ Քարքէ։ Քրիստոնեայ Հայաստանի ալ փառքն եղաւ Տարօն՝ իր եկեղեցիներով, Աշտիշատէն մինչեւ Ս. Կարապետ։ Տարօն եղաւ Հայ զինուորութեան հայրենիքը։ Տարօն եղաւ Հայ քաղաքակրթութեան օրրանը։ Հայ գրականութեան ոսկեդարը կերտուեցաւ Տարօնի մէջ։ Տարօնցի են Ս. Սահակ եւ Ս. Մեսրոպ, եւ Տարօնի հայերէնն է, որ եղաւ հայերէն Աստուածաշունչի լեզուն։*

*Բայց միայն Տարօն կամ Մշոյ աշխարհ չէր Մամիկոնեանց սեփականութիւնը։*

*Տայոց աշխարհն ալ Մամիկոնեանց սեփականութիւնն էր վաղեմի ժամանակներէ իվեր, եւ նոյն իսկ կարելի է ըսել, թէ Մամիկոնեանք Տարօնէն յառաջ տէրն էին Տայոց։*

*Տայք՝ հին Հայաստանի հնգետասան Նահանգներէն կամ Աշխարհներէն ժԴ.րդն է, որ ունէր ութը Գաւառներ։*

*Տայոց աշխարհը կը համապատասխանէ Սեւ Ծովու եզերաց վրայ այն երկրին, որ մէկ կողմէն կ'ընդգրկէ Տրապիզոնի նահանգին մէկ մասը, միւս կողմէն կը հասնի մինչեւ Պաթում։ Իսկ ներքին կողմէն*

*Բաբերդի (Պայպուրդ) եւ Օլթիի (նախնեաց* Ուխ-
տիքը) *գաւառները:*

*Պոնտոսի Ճանիւս (Ճանիք) կամ Խաղտիք մասը, Պարխար լեռները*(1) *ծորոխ գետը՝ Տայոց աշխարհին մէջ են:*

*Եւ Տայք նշանաւոր էր իր անմատչելի լեռներով, ձորերով, եւ մա'նաւանդ իր թանձրախիտ անտառներով, այնպէս որ Եղիշէ,* անլոյս *կ'անուանէ Խաղտեաց երկիրը:*

*Այդ ամուր եւ անմատչելի բարձունքներու վրայ շինուած էին Ախանի կամ Էրախանի Բերդը, եւ ուրիշ ամրոցներ, ուր կ'ապաստանէին Մամիկոնեանք ի հարկին, եւ պատերազմի ատեն հո'ն կը պահէին իրենց ընտանիքները:*

*Մամիկոնեանք ունէին նաեւ ուրիշ կալուածներ Այրարատի եւ Գուգարաց մէջ:*

*Բայց իրենց գործունէութեան մէջ նշանաւոր են Տարօն եւ Տայք, երկուքն ալ, անմատչելի իրենց լեռնոտութեամբ, եւ այդ լեռներու վրայ է որ պահեցին իրենց ազատութիւնը, արծիւներու պէս:*

*Մամիկոնեանք կարող եղան դարերով պահել իրենց գոյութիւնը Սասնոյ լեռներուն մէջ:*

*Մինչեւ ԺԳ·րդ դար, մեր ազգային պատմութիւնը արձանագրած է Մամիկոնեան տոհմին քաջագործութիւնները:*

---

(1) *Պարխար* լերինք, ըստ Ալիշանի, հիւսիսային արեւմուտքէն Համշէնը եւ հարաւային արեւմուտքէն ալ Կիւրճիստանը կը զատեն իրարմէ: Իսկ այս վերջին մասը *Կիւրճիստան* բռուած է, երբեմն վրաց ձեռքին տակ ըլլալուն համար: (Տեղագիր Հայոց Մեծաց, 39):

# ՄԱՄԻԿՈՆԵԱՆՑ ՆԿԱՐԱԳԻՐԸ

ՄԱՄԻԿՈՆԵԱՆ տոհմին նկարագիրն է ծառայութիւն հայրենեաց՝ բացարձակ հաւատարմութեամբ. ասպետական, անպարտելի քաջութիւն, եւ մեռնիլ պատերազմի դաշտին վրայ:

Այս նկարագիրը չեղծուեցաւ Մամիկոնեանց վրայ, հակառակ այն քանի մը անարժաններու, որոնք խոտորեցան Մամիկոնեան տոհմին փառաւոր աւանդութենէն:

Մամիկոնեան քաջերէն արիասիրտն Վաչէ, երբ մեռաւ պատերազմի դաշտին վրայ, հայրենիքի ազատութեան համար, Վրթանէս Կաթողիկոս, ի յիշատակ անոր մեծամեծ ծառայութեանց, տարեկան տօն հաստատեց(1), եւ սրբոց կարգը դասեց զայն (Փ. Բուզ. Գ. ժա.):

Եւ այս կանոնը մնաց Հայաստանեայց Եկեղեցւոյ մէջ, եւ հայրենիքի համար արիւն թափողներու տօներ հաստատուեցան:

Արտաւազդ եւ Վասակ Մամիկոնեաններն էին, որ Ռշտունի եւ Արծրունի նախարարութեանց անճիտման պահուն ազատեցին երկու մանչ մանուկներ, մին՝ Մեհրնդակ Ռշտունիի որդին՝ Տաճատ, իսկ միւսը՝ Վաչէ Արծրունիի որդի Շաւասպ, եւ պահեցին, մեծցուցին զանոնք իրենց Տայոց աշխարհի Էրախանի բերդին մէջ (Փ. Բուզ. Գ. ժը.):

Սպարապետ Վասակ Մամիկոնեան՝ Արշակ Թագաւորի հետ հիւր էր Տիզբոն, Շապուհի արքունեաց մէջ:

---

(1) Վաչէ Զօրավարին տօնը, յայտնի չէ թէ ի՛նչ պատճառաւ, դժբախտաբար խափանուած է:

*Արշակ օր մը փափաքեցաւ այցելել արքունի ախոռ եւ տեսնել Շապուհին ձիերը:*

*Ախոռապետը ո՛չ միայն չմեծարեց Հայոց Թագաւորը, այլ ընդհակառակն ծաղրել ուզեց զայն, ըսելով պարսկերէն,*

*— Է՛ այծերու (Հայոց) թագաւոր, եկուր նստէ սա՛ խոտերու խուրձին վրայ*(1):

*Վասակ, որ Արշակին քովն էր, չհանդուրժեց այս նախատինքին եւ իր կեանքը վտանգելով, քաշեց իր սուրը եւ հոն սատկեցուց ախոռապետը (Փ. Բուզ. Դ. ծզ.):*

*Մուշեղ Մամիկոնեան, որ Քաջն Վարդանի նախահայրն է, երբ մէկ կողմէն այնքան խստիւ կը պատժէր Հայ ուխտադրուժներն եւ ուրացեալները, միւս կողմէն մեծ խնամքով կը պահէր Շապուհին գերուած կանանոցը, եւ զայն պատուով կը ղրկէր անոր:*

*Շապուհ այնքան զգածուեցաւ Մուշեղ Զօրավարի այն ասպետական ընթացքէն, որ իր գինիի գաւաթին վրայ քանդակել տուաւ Հայոց Ճերմակաձի Սպարապետին պատկերը, եւ ամէն անգամ, որ գաւաթը ձեռք կ՚առնէր, Մուշեղի կենաց կը պարպէր զայն, ըսելով.—* «Ճերմակաձին գինին արբցէ», *(Փ. Բուզ. Ե. բ.):*

*Մուշեղ Զօրավար պատերազմի մը մէջ բռնեց Աղուանից Ուռնայր Թագաւորը:*

---

(1) Արշակ շատ մազոտ էր մարմնով, եւ առ հասարակ Հայեր թաւամազ են: Ախոռապետը հաւանաբար այդ նախատինքը յանդգնեցաւ ընել, ակնարկել ուզելով Արշակին թաւամազութեան:

Մուշեղ ըսաւ անոր՝ թէեւ բռնեցի քեզ, բայց պիտի չըսպաննեմ, որովհետեւ թագաւոր մըն ես, եւ թեթեւ պատիժով մը թող տուաւ որ փախչի երթայ իր երկիրը։

Եւ երբ ասոր համար Մուշեղ ամբաստանուեցաւ Պապ թագաւորին առջեւ, եւ Պապ բացատրութիւն պահանջեց քաջ Զօրավարէն, սա՛ ըսաւ.

Ես սպաննեցի իմ աստիճանակիցներս, բայց Ուռնայր թագաւոր մըն էր, եւ ես չէի կրնար ձեռք երկնցնել թագաւոր մարդուն։ Ան աստիճանակից է քեզ, եթէ կ՚ուզէիր անոր մահը, պէտք էր որ դուն սպաննէիր զայն պատերազմի մէջ։ Եթէ ասոր համար կ՚ուզես սպաննել զիս, սպաննէ՛ (Փ. Բուզ. Ե. դ)։

Վերջապէս Մուշեղ զոհ գնաց դաւաճանութեան մը՝ Վարազդատ թագաւորի պալատան մէջ, երբ նոյն դիւրահաւան թագաւորին հրամանաւ բռնուեցաւ։ Բայց ի՞նչ բռնուիլ.— տասուերկու հուժկու մարդիկ, վեցը մէկ թեւէն եւ վեցը միւս թեւէն բռնեցին եւ զօրով կրցան ոլորել զանոնք, եւ այդպէս վատաբար կտրեցին այս անխոցելի Քաջին գլուխը։

Մեծ Զինուորը հազիւ ատեն ունեցաւ Վարազդատին երեսն ի վեր բողոքելու սա՛ խօսքերով.

— Միթէ ա՞յս է իմ ծառայութեանց, իմ թափած արիւն քրտինքին հատուցումը։

Բայց այս մահը ձիու վրայ հանդիպելու էր ինձ... (Փ. Բուզ. Ե. լե.)։

Մանուէլ Մամիկոնեան, որու սպարապետութեան ատեն Հայաստան կատարեալ խաղաղութիւն վայելեց, երբ ստիպուեցաւ վերոյիշեալ դեռատի, յաւակնոտ եւ անփորձ Վարազդատին դէմ պատերազ-

միլ, Վարազդատ տկարացաւ կռուին մէջ, եւ Մանուէլ Զօրավարին երկու զաւակները, Հմայեակ եւ Արտաշէս, յարձակեցան անոր վրայ եւ պիտի սպաննէին զայն, եթէ Մանուէլ չպոռար եւ չարգիլէր·

«Ա՛յ, մի՛ լինիք տիրասպանուք»:

Մանուէլ սապէս ըրաւ իր կտակը մահուան մահճին մէջ, իր խօսքերը ուղղելով իր որդւոյն եւ յաջորդին Արտաշիր Մամիկոնեանի·

— Հնազանդ, հպատակ եղիր Արշակ Թագաւորին· անկեղծօրէն ջանա՛ եւ ծառայէ, եւ անձդ զոհէ Հայոց աշխարհին, ինչպէս որ մտադիւր զոհեցին նախնիքդ: Վասն զի Աստուծոյ առջեւ Արդարութիւն է այդ· երբ այդ կերպով կը ծառայէք՝ Աստուած ձեռքէ չթողուր ձեզ:

Քաջի անուն թողէք երկրի վրայ· իսկ Երկինքին ընծայեցէք Արդարութիւնը:

Մահէն մի՛ վախնաք ամենեւին, այլ ձեր յոյսը դրէք Անոր վրայ, որ ամէն բանի ստեղծիչն է եւ հաստիչը:

Նենգութիւնը, պղծութիւնը, չարութիւնը մերժեցէ՛ք ձեզմէ:

Սրբութեամբ եւ անկեղծութեամբ պաշտեցէք զՏէր Աստուած, եւ «համարձակութեամբ մեռարուք» աստուածապաշտ Հայաստանի վրայ· վասն զի Եկեղեցւոյ եւ անոր Ուխտին, ինչպէս նաեւ մեր երկրի բնիկ տէր Արշակունիներու համար մեռնիլ՝ Աստուծոյ համար մեռնիլ է:

Պատմիչը աւելի յառաջ տանելով Մանուէլ Սպարապետին վերջին վայրկեաններուն նկարագրութիւնը, կ՚ըսէ·

— Մանուէլ բոլորովին մերկացաւ անկողնի մէջ,

եւ ցոյց տուաւ իր մարմինը, որուն վրայ ողջ խայծ մը չէր մնացած.— պատերազմի խոցերով եւ սպիներով ծածկուած էր բոլորովին:

Հսկայ Զօրավարը սկսաւ լալ եւ ըսել.— Մանկութենէս ի վեր պատերազմներու մէջ սնայ, եւ այս բոլոր վէրքերը առի մեծ մեծ քաջութիւններով:

Երանի՜ թէ այս մահը պատերազմի մէջ հասնէր ինծ եւ այսպէս՝ անասունի պէս չմեռնէի: Այո՛, երանի՜ թէ պատերազմելով մեռնէի հայրենիքի վրայ, Հայոց աշխարհին բնիկ տէր Արշակունիներու վրայ, մեր կիներու եւ զաւակներու վրայ, աստուածապաշտ մարդոց վրայ, եղբայրութեան, ընկերութեան եւ մտերիմ բարեկամութեան վրայ: Բայց ի՞նչ օգուտ, «թէպէտ շատ զանձնս յանդուգն վարեցի, զվատթար մահս մահնացս եհաս ինձ մեռանել»:

— «Ի պատերազմի ի մահուանէ մի՛ երկնչիք, ուր ես չմեռայ. զի առանց Աստուծոյ ինչ ոչ լինի» (Փ. Բուզ. Ե. խդ.):

Կրօնական այս մաքուր եւ ազնուական ոգին սքանչելի է:

Մամիկոնեանք նշանաւոր եղան իրենց քրիստոնէական կեանքով, իրենց կենդանի գործունէութեամբ, եւ իրենց բարեպաշտ ու երկիւղած արտայայտութիւններով:

Ասպետական քաջագործութեանց այսպէս դըրուագներով յօրինուած է Մամիկոնեանց պատմութիւնը:

Եւ այդ քաջագործութիւններէն յառաջ բերուած քանի մը օրինակներով կ'ուզեմ ցոյց տալ, թէ Քաջն-Վարդան սերած է Տոհմէ մը, որուն պանծալի աւան-

դութիւնները աւելի եւս փառաւորուեցան նոյն ինքն Վարդանի եւ իր եղբօրորդւոյն Վահանի շարժումներով, ինչպէս որ պիտի տեսնենք։

Մամիկոնեանք, ըստ Մեսրոպ Երիցու տեղեկութեան, Մեծն Ներսէսի ատեն խնամութեամբ պատուաստուեցան Լուսաւորչի սերունդին, եւ այս կերպով աւելի եւս ուշագրաւ եղան իրենց քաջագործութիւնները՝ ազգային եւ կրօնական իրաւունքներու պաշտպանութեան մէջ։

Արեան խնամութիւնը ազնուացաւ եւ գեղեցկացաւ գաղափարի եւ սկզբունքի նոյնութեամբ եւ համագործակցութեամբ ալ։

Քաջ-Վարդանին ծնողքը, ինչպէս նաեւ նոյն ինքն Վարդան եւ իր եղբայրները, զարգացան եւ ուռճացան Սահակ-Մեսրոպեան շրջանին ներշնչումներով, եւ վայելեցին Հայ դպրութեան ոսկեդարեան գեղեցկութիւնները իրենց կրթութեան եւ դաստիարակութեան մէջ, եւ անոնք՝ այս բոլոր թանկագին առաւելութիւնները եւ առանձնաշնորհումները արժէցուցին իրենց հայացի ծառայութեան երկա՛ր ուղեգծին վրայ եւ փառաւոր ասպարէզին մէջ, եւ կարող եղան պահել ու պաշտպանել Հայութիւնը՝ անոր թագին ու մականին կորուստէն ետքն ալ։

Մամիկոնեանց ծառայութեան այդ նկարագիրը պէտք է, որ առաջնորդէ մեր Ազգին նոյն իսկ այսօր, Հայաստանի ազատագրութեան եւ վերաշինութեան այս Նոր շրջանին մէջ։

# ՄԱՄԻԿՈՆԵԱՆՑ ՊԱՏՄՈՒԹԻՒՆԸ

Մեր Ազգային Պատմութեան առաջին քանի մը դարերուն պատմութիւնը՝ գրեթէ նոյնացած է Մամիկոնեանց պատմութեան հետ։

Փաւստոս Բուզանդ, Ղազար Փարպեցի, եւ Եղիշէ, որոնք գոհարներն են մեր նախնեաց դրականութեան, նուիրուած են Մամիկոնեանց ծառայութիւնը ցայտեցնելու ազգային կեանքի քաղաքական եւ կրօնական բարդ դրուագներու մէջէն։

Հայ պատմութեան առաջին դրուագը գրի առնուած է Ագաթանգեղոսով։ Երկու գլխաւոր դէմքեր կան հոն, Տրդատ եւ Լուսաւորիչ, որոնց անուան եւ գործունէութեան շուրջ կը դառնայ Ագաթանգեղոս։

Իսկ Տրդատ եւ Լուսաւորիչ իրենց գործերով եւ իրենց արիւնով, քիչ ետքը կը միանան եւ կը նոյնանան Մամիկոնեանց հետ։

Կորիւն, որ գրի առած է Հայերէն այբուբենքին պատմութիւնը, իրականին մէջ ուրիշ բան չէ ըրած, եթէ ոչ պանծացնել Վռամշապուհի եւ Սահակ–Մեսրոպի գործունէութիւնը, որոնք միացած եւ նոյնացած են Մամիկոնեանց հետ։

Եւ այս բոլոր պատմիչներ մասնաւոր պատմիչներ են, այսինքն՝ որոշ դէպքերու եւ դէմքերու շուրջ կը դառնան՝ մեր ազգային կեանքը պատկերացնելու ատեն։

Միայն Մովսէս Խորենացին է, որ առաջին փորձ մը ըրած է մեր ազգին ընդհանուր պատմութիւնը գրելու։ Եւ իր պատմութեան Երրորդ Գիրքը, որ

*վերջին մասն է, պատմութիւնն է Լուսաւորչի յաջորդներուն, եւ Արշակունի վերջին թագաւորներուն եւ Հայերէն այբուբենքի գիւտին:*

*Շատ հետաքրքրական է դիտել, որ Խորենացի վերոյիշեալ պատմագիրներէն միայն Ագաթանգեղոսը կը յիշէ յաճախ, եւ լուռ է միւսներու մասին: Դարձեալ՝ կը պատմէ թէ ի՛նչպէս Քաջն Վարդանին հայրը, Համազասպ Մամիկոնեան Սպարապետ եղաւ. կը յիշատակէ նոյնպէս Քաջն-Վարդանին պատգամաւորութիւնը թէ՛ ի Բիւզանդիոն եւ թէ՛ ի Տիզբոն, բայց ոեւէ յիշատակ չունի Վարդանանց պատերազմէն:*

*Խորենացի, որ ըստ աւանդութեան, բնիկ Տարօնցի է, եւ Քաջն-Վարդանի բարձր պաշտօնները ճանչնալէ ետքը, հարկաւ պիտի ճանչնար նաեւ Վարդանանց Պատերազմին պարագաները, իր այդ բացարձակ լռութեամբ բաւական լուրջ շուարումի մատնած է քննադատները:*

*Ինչ եւ իցէ. իրականութիւնը սա՛ է. — Տարօնէն, Մամիկոնեանց կեդրոնէն է, որ կը ծագին Հայ քաղաքակրթութեան ոսկեդարը, եւ այդ հոյակապ շրջանին բոլոր նահապետներն ու գործիչները, եւ գրեթէ բոլոր պատմագիրները, յանձին մեր երանաշնորհ թարգմանչաց:*

*Եւ Մամիկոնեան Տոհմին գործունէութեան մէջ է ազգային բոլոր շարժմանց ծանրութեան կեդրոնը:*

*Հետեւաբար զարմանալի չէ, որ ժամանակակից պատմագիրներ գրեթէ Մամիկոնեանց պատմութիւնը գրած են,* Ազգային Պատմութիւն *գրելու ատեն:*

# ՎԱՐԴԱՆԻՆ ԾՆՈՒՆԴԸ

ՎԱՐԴԱՆԻՆ հայրն է Համազասպ Մամիկոնեան, իսկ մայրը՝ Սահականուշ Տիկին, Մեծն Սահակի միամօր դուստրը։

Համազասպի եւ Սահականուշի ամուսնութեան թուականը — հաւանական հաշուով մը — կ՚իյնայ 384–386 տարիներու մէջ։

Այս ամուսնութիւնը օրհնուեցաւ երեք մանչ զաւակներով, որոնց երէցն է մերն Վարդան, որ կը կոչուէր նաեւ Վարդկան։ Միջնակն է քաջ «Սեպուհն» Հմայեակ, հայրը Մեծն Վահանին եւ եղբարց. իսկ կրտսերն է՝ Համազասպ կամ Համազասպեան. երկուքն ալ զինակից եւ խորհրդակից եւ անձնուէր իրենց երէց եղբօր։

Վարդան, հաւանական հաշուով, ծնաւ 387ին։

Այդ միջոցին Հայոց Սպարապետն էր քաջն Սահակ Ասպետ, Բագրատունեաց Տոհմէն, որ հաւանաբար մեռաւ 388ին(1)։

Սահակ Ասպետին յաջորդեց՝ Վարդանին հայրը՝ Համազասպ Մամիկոնեան, Պարսից Շահ՝ Վռամ-Կռմանի (388–399) հրամանով, Մեծն Սահակի միջնորդութեամբ, զոր ըրաւ իր դստեր Սահականուշի թախանձանքին վրայ, հաւանաբար 389ին։

Ըսել է, որ Վարդան մէկ երկու տարուան մանչուկ մըն էր՝ երբ իր հայրը Սպարապետ եղաւ Հայկական Բանակին։

---

(1) Քաջն Սահակ Բագրատունի Սպարապետ եղաւ Պարսկաբաժին Հայաստանի վրայ, խոսրով թագաւորի կարգադրութեամբ (Մ. Խոր. Գ. Խդ.)։

# ՎԱՐԴԱՆԻՆ ԿՐԹՈՒԹԻՒՆԸ

ՎԱՐԴԱՆԻ պատանութեան միջոցին, այսինքն՝ 400–410ին էր, որ տեղի ունեցաւ Հայերէն այբուբենքին գիւտը, եւ Աստուածաշունչը Հայերէնի թարգմանուեցաւ Սահակ–Մեսրոպեան դպրոցին մէջ։

Վարդան եւ իր եղբայրները բախտ ունեցան ուղղակի իրենց մեծ հայրիկէն սորվելու Հայերէն գրականութիւնը եւ Սուրբ Գրոց ուսումը։

Կորիւն դիտել կուտայ, թէ Մեծն Սահակ մասնաւոր հոգ եւ խնամք տարաւ իր թոռներուն կրթութեան եւ դաստիարակութեան։

— «Առաւել երանելւոյն Սահակայ զՄամիկոնեան որեարն՝ ի վարժս վարդապետութեան պարապեցուցեալ· որոց առաջնոյն ՎԱՐԴԱՆ անուն էր, եւ ՎԱՐԴԿԱՆ կոչէր» (Կորիւն, էջ 13–14)։

Վարդանանց պատերազմին նախընթաց դէպքերուն մէջ կը տեսնենք, թէ Վարդան ստուգիւ կրօնական եւ քաղաքացիական շատ ընտիր եւ շատ զօրաւոր դաստիարակութիւն մը ստացած է, բացի իր զինուորական կրթութենէն։ Վասն զի Վարդան կ՚արտայայտէ ո՛չ միայն քաջամարտիկ զինուորի մը անվեհերութիւնը, այլ նաեւ խորունկ յարգանք եւ ակնածանք կը տածէ Սուրբ Գրոց մասին, պարծանքով կը յիշէ Մեծն Սահակին ուսուցչութիւնը՝ իբրեւ հաւատացեալ մարդ, եւ նոյն իսկ իր թշնամիներու երդումներուն եւ պատւոյ խօսքերուն կը վստահի՝ իբրեւ վեհանձն ասպետ։

Մեծն Սահակին տուած դաստիարակութիւնը այնքան զօրաւոր եղած էր, որ Վարդան դիւցազնու–

*թիւններ ըրաւ ո՛չ միայն Աւարայրի պատերազմին մէջ, այլ նաեւ իր մղած բոլոր պատերազմներուն մէջ, եւ մա՛նաւանդ պատերազմի դաշտերէն դուրս, իր առտնին եւ ընկերային կեանքին դժուարութեանց մէջ:*

*Ինչպէս որ պիտի տեսնենք քիչ ետքը, երբ Յազկերտի Դրան մէջ նենգութեամբ վար դրուեցան Հայ Ազգին ներկայացուցիչները եւ բռնադատուեցան կրօնափոխութեան, Վարդան յայտարարեց, թէ ինքն նախամեծար կը համարի պահել իր հաւատքը ամէն գնով, քան թէ ուրացող մը համարուիլ·*

— «Քա՛ւ լիցի· ոչ զվարդապետութիւն եւ զհաւատս Աւետարանին, զոր ուսոյց եւ հաստատեաց յիս ճշմարիտ հաւն իմ Տէր Սահակ, մերժեցի յինէն» (Ղ· Փարպեցի):

*Եւ* Վարդան *յանձն առաւ կեղծուրացութիւնը, իր բոլոր հոյակապ եւ հաւատացեալ բանտակիցներուն պնդումներուն վրայ, հայրենիքի փրկութեան սիրուն· վասն զի կը հաւատային, թէ միայն* Վարդան *կարող էր ի գլուխ հանել ապստամբութեան գործը եւ պաշտպանել Հայութեան ազգային եւ կրօնական ազատութիւնը:*

*Եղիշէ կը պատմէ, թէ Աւարայրի պատերազմին գիշերը, երբ Հայոց Ս· Կաթողիկոսն Յովսէփ եւ Հայ Քահանայութեան պարծանքն հիանալին Ս· Ղեւոնդ՝ կը քաջալերէին վաթսուն հազարներու բանակը, իրենց կրակոտ հայրենասիրութեամբ, Սպարապետ Վարդանն ալ, Մակաբայեցւոց գիրքն ի ձեռին, կը խանդավառէր իր զինակիցներն ու մարտակիցները, որպէս զի յառաջիկայ կռիւին մէջ Մակաբեան քաջերու պէս անմահանան:*

Եւ ասիկա ցոյց կուտայ, թէ Վարդան շատ լաւ սերտած էր Սուրբ Գիրքը, իր ճշմարիտ հաւուն, Մեծն Սահակի, առաջնորդութեամբ եւ շատ լաւ կը գործածէր զայն, որովհետեւ իր խօսակցութեան մէջ կը բիւրեղանան Աստուածաշնչական գաղափարներ ու ճշմարտութիւններ՝ բեղուն գեղեցկութեամբ մը:

Ղ. Փարպեցի եւ Եղիշէ դիտել կուտան, թէ Վարդան «յոյժ հմուտ էր եւ ընդել գրոց վարդապետութեան՝ ուսեալ խրատեալ ի սուրբ հայրապետէն ի Սահակայ ի հաւոյն իւրմէ» :— «Զի եւ ինքն իսկ տեղեակ էր ի մանկութենէ իւրմէ Սուրբ Կտակարանաց»:

Վարդանի դաստիարակութեան եւ կրթութեան մէջ վստահ եմ, որ իր մայրը, Սահականուշ Տիկինն ալ բաժին մը ունի:

Այդ ժամանակներու մէջ, Հայոց աշխարհի փափկասուն եւ առաքինազարդ Տիկիններու շարքին՝ Մամիկոնեան եւ Կամսարական Տուներու Տիկինները արտաքոյ կարգի իմաստութիւն եւ արիութիւն երեւան բերին:

Դժբախտաբար շատ քիչ բան գիտենք Սահականուշ Տիկնոջ կեանքին վրայ: Բայց ես վստահ եմ, որ Մեծն Սահակ իր միածին աղջիկը կրթեց եւ մեծցուց իր շնչով, եւ ընտրեց անոր ամուսին մը, յանձին Համազասպ Մամիկոնեանի, եւ հիմը դրաւ այնպիսի տան մը, որ օրհնութիւն եղաւ մեր Թագազուրկ Ազգին համար:

Մեծն Վահանին մայրը, Տիկին Զուիկ եւ ասոր քոյրը Անուշվռամ, Վրաց Բդեշխ Աշուշային Տիկինը, նոյն աւանդութեան եւ նոյն կրթութեան հաւատարիմ Մայրեր եղան:

*Մեծն Սահակ եւ իր աղջիկը, Սահականուշ Տիկին՝ Վարդանը տուին Հայ Ազգին, իր քաջազուն եւ քաջասուն եղբայրներով: Իսկ Տիկին Զուիկ, որ* «եղեւ կին անուանի եւ առաւելեալ ամենայն լաւ մասամբք յամենայն կանայս ի Հայաստան աշխարհիս», *եւ իր քոյրն Անուշվռամ՝ Հայ Ազգին տուին Վահանը, իր դիւցազն եղբայրներով, եւ այս երկու Մեծ Մամիկոնեաններ այնպիսի սխրալի քաջագործութիւններ ըրին, որ ստիպեցին Պարսիկ կառավարութիւնը ճանչնալու Հայ զինուորին արժանիքը եւ Հայ Ազգին ինքնօրէնութեան իրաւունքները:*

## ՀԱՅ ԶԻՆՈՒՈՐՈՒԹԻՒՆԸ
## ԵՒ
## ՄԱՄԻԿՈՆԵԱՆՔ

ՄՈՒՇԵՂ *Զօրավարի հրամանատարութեամբ Հայ գունդը այնպիսի հարուած տուաւ Պարսիկ բանակին, որ Շապուհ զարմացաւ, եւ սա՛ իմաստով յայտարարութիւն մը ըրաւ, պատերազմի դաշտէն Տիզբոն վերադառնալէ ետքը·*

*— Մանկութենէ իվեր կեանքս անցած է ճակատներու եւ կռիւներու մէջ· Թագաւորական գահն ալ բարձրացած եմ երկար տարիներէ իվեր, եւ առանց կռուի տարի մը չեմ անցուցած· բայց իմ ամէնէն տաք կռիւս եղաւ այս անգամ: Վասն զի, երբ Հայոց նիզակաւորներ յառաջ կ'անցնէին՝ այնպէս մը կը յարձակէին, որ կարծես թէ բարձր լեռ մը կամ հաստաբեստ, հզօր եւ անշարժ աշտարակ մը եղած ըլլար յարձակողը· եւ երբ մենք քչիկ մը կը շարժէինք զա-*

*նոնք, այն ատեն անոնք կ'ապաստանէին Հռոմոց Լէգէոնին, որ բանալով իրենց վահանափակները, կը շրջապատէին զանոնք ամուր պարիսպի մը պէս: Եւ հոն քիչ մը շունչ առնելէ ետքը, դարձեալ դուրս կ'ելնէին կռուելու համար, եւ ցիրուցան կ'ընէին մեր զօրքերը:*

*Ասկէ զատ ես շատ զարմացեր եմ* Հայաստան Գնդին *անկեղծ տիրասիրութեան. որովհետեւ այնքան ժամանակ անցած է Արշակ Թագաւորի մահուան վրայ, բայց դեռ Հայ զինուորներ անոր անունով կը խրախուսուին: Երբ իրենց ախոյեանները գետին տապալէին, կը գոչէին* «առ Արշակ». *այսինքն՝ զոհ եղեր մեր քաջ Արշակ Թագաւորին:*

*Իսկ հապա սա Մուշեղին մոլեկան գունդը՛:— Ինձ այնպէս կը թուէր, թէ հուր բոց մը կ'ելնէր այդ գունդէն եւ անոնց դրօշներէն. ինչպէս որ բոցը կ'անցնի եղէգի մէջէն, կարծես թէ այդպիսի հրդեհի բոց մը կ'անցնէր գունդին մէջէն:*

*Երանի՛ անոր, որ տէրն է Հայ գնդին, այդ տիրասէր, միաբան եւ անկեղծ զօրքերուն:*

— «Երանի՛ որ Հայոց գնդին տէր իցէ, այնպիսի տիրասէր եւ միաբան միամիտ զօրացն», (Փ. Բուզ. Ե. Ե.):

*Բայց այսպիսի պատուական զինուորութիւն մը, իր այնքան հաւատարիմ եւ արիական ծառայութեան փոխարէն, չարաչուք վիճակի մը ենթարկուեցաւ, երբ Յազկերտ Բ. զանոնք քշեց հեռաւոր երկիրներ, խոր անապատներ՝ Պարսկաստանի թշնամիներուն դէմ կռուելու համար, ծայրայեղ թշուառութեան մէջ:*

Ըստ Եղիշէի, Յազկերտ այս անգութ ընթացքը բռնեց, որպէս զի Հայերն ստիպէ ուրացութեան:

Եւ թէպէտ Հայ զինուորներ ներքնապէս ուրախ էին Քրիստոսի սիրուն, բայց անոնց արտաքին տեսքը շատ ողորմելի էր օտարութեան մէջ:— «Այնպիսի պատուական զինուորութիւն հասեալ էր ի չարաշուք անարգութիւն, եւ հայրենի ազատութիւնն չարաչար կայր ի ծառայութեան մարդախոշոշ բռնաւորին» (Եղիշէ Բ. Յեղ.):

Պարսիկ կառավարութեան անողորմ վարմունքը մէկ կողմէն, եւ ինչպէս որ կ'երեւի, Մամիկոնեանց պահ մը ասպարէզէն քաշուիլը միւս կողմէն, այնքան անարգ եւ խղճալի վիճակի մը հասցուցին Հայ զինուորութիւնը, որ այլեւս Պերոզ, Յազկերտ Բ.ին յաջորդը, հրապարակաւ կը նախատէր Հայ զինուորը, իբրեւ վատթար եւ անպիտան, եւ ասիկա կը խոցոտէր Վահան Մամիկոնեանին սիրտը:

Ղ. Փարպեցի կ'ըսէ. Հայոց զինուորները, որ ատենօք այնքան քաջանուն կը փայլէին ուրիշ զինուորներու մէջ, եւ անոնց զօրագլուխներն անուանի եւ յաղթող էին, հիմայ ծաղրուծանակ եղած էին ամենուն առջեւ, այնպէս որ նոյն ինքն Պերոզ յատենի յայտնապէս կը նախատէր, ըսելով. եթէ իմ իշխանութեան մէջ անպիտան եւ յետին գունդ մը կայ, ան ալ Ասորոց գունդն է. բայց Հայը՝ Ասորիէն ալ աւելի յետին է եւ անպիտան: Եւ ասիկա ողբ ու լացի արժանի լուր մըն էր:

Իսկ Վահան Մամիկոնեան, որ մահը աւելի կը նախընտրէր քան թէ Պերոզի այդ նախատինքը, երեք կռիւներու մէջ ցոյց տուաւ թէ բուն Հայ զինուորը,

*օժտուած Մամիկոնեան կրթութեամբ, վատթար եւ անպիտան չէր։*

*Վահան քաջաբար դիտել տուաւ Պարսից կառավարութեան ներկայացուցիչ Միհրանին, թէ Հայ զինուորութեան անկման պատճառ եղած է նոյն ինքն Պարսիկ կառավարութիւնը. որովհետեւ, յայտարարեց Քաջն Վահան, եթէ այս Հայ զինուորները իմ ձեռքիս տակ ըլլային այնպէս, ինչպէս որ էին իմ նախնեաց ձեռքին տակ, ես գլուխը կը կտրէի կռուի մէջ վատացողներուն. իսկ քաջացողներուն ալ պատիւ կուտայի, եւ այսպէս կը ցուցընէի Շահնշահին, թէ ո՛ր գունդը քաջ եւ անուանի էր Պարսից իշխանութեան մէջ։ Բայց ձեր կառավարութիւնը՝ վատատոհմ եւ անպիտան մարդոցմէ իշխաններ կարգեց Հայոց աշխարհին վրայ, եւ անոնք ալ իրենց յետնութեամբ Հայաստանէն ջնջեցին քաջութիւնը, բարի անունը եւ լաւութիւնը.—* «Զի գնդի՝ որոյ զօրագլուխն վատ է, գնդին լաւ լինել չէ հնար. եւ աշխարհի՝ որոյ իշխանքն յետին են, աշխարհին այնմ անհնար է յառաջադէմ եւ անուանի լինել» (*Ղ. Փարպ. էջ* 379–80, *եւ* 473–76)։

*Վահան Մամիկոնեան կարող եղաւ խօսք հասկցնել Պարսիկ կառավարութեան, եւ անգամ մը ընդունել տալէ ետքը իր նշանաւոր երեք պայմանները, առաջին գործը եղաւ իշխանութենէն վտարումը այդ անպիտան, յետին եւ վատթար ուրացեալներու, որուն հետեւանքով, դարձեալ իրեն տրուեցաւ Հայ Բանակին Սպարապետութիւնը, ինչպէս նաեւ, քիչ ետքը, Հայաստանին Մարզպանութիւնը, եւ այս բոլորին արդիւնքն եղաւ Հայ զինուորութեան պատուին ու վարկին վերականգնումը ու վերհաստատութիւ-*

նը, ինչ որ արդէն հաստատուած եւ հռչակուած էր Վահանեանց զարմանալի քաջագործութեանց մէջ։

Տրուած հայացի կրթութեան եւ հայացի դաստիարակութեան արդիւնքն էր այս։

Ի՛նչ որ կը ցանես եւ ի՛նչպէս որ կը ցանես, այնպէս ալ կը հնձես։

Վարդանին եւ իր եղբայրներուն ու եղբօրորդիներուն մտաւոր եւ մարմնաւոր պատրաստութիւնը եղած է շատ մեծ խնամքով եւ հոգածութեամբ։ Վարդան ճշմարիտ Հայ զինուոր մըն էր, որովհետեւ զինուորութեան մէջ էր ծնած եւ սնած, Մամիկոնեան Տան աւանդութեանց համաձայն։

Ասպետական ոգին, որ յատուկ է Վարդանի տիպէն զօրականներու, պէտք է խոստովանիլ, որ խօսքի եւ գործքի մէջ հաւասարապէս խանդավառած է Մամիկոնեան Քաջերը. եւ այդ ոգին աւելի եւս պայծառ ու ներշնչող եղած է յանձին Վարդանի եւ Վահանի, շնորհիւ տրուած խնամոտ դաստիարակութեան եւ կրթութեան։

## ՎԱՐԴԱՆ՝ ՍՏՐԱՏԵԼԱՏ

Ի՞նչ է Վարդանին կեանքը Աւարայրի պատերազմէն յառաջ։ — Այս մասին՝ դժբախտաբար շատ քիչ բան գիտենք պատմութենէն։ Բայց կրնանք ըսել հաւաստեաւ, թէ մեր Սպարապետը, որ վաթսունէ աւելի Մայիսներ բոլորած էր՝ երբ ինկաւ Աւարայրի պատերազմին մէջ, 451ի Մայիսին, փառաւորած էր իր կեանքն ու ասպարէզը՝ հայրենանուէր գործունէութեամբ եւ պաշտօններով։

Ամէնէն յառաջ կրնանք ըսել, թէ Վարդան իբրեւ Սեպուհ Մամիկոնեան Նախարարութեան, իր հօր Համազասպի ձեռքին տակ գործօն պաշտօն մը ունէր Սպարապետութեան մէջ։

Իսկ իր հօր մահէն (415) ետքը, երբ 28 տարեկան էր, ստանձնեց Մամիկոնեանց Տէրութիւնը կամ Տանուտէրութիւնը, ժառանգական իրաւունքով, իբրեւ անդրանիկը իր եղբայրներուն։

Եւ յայտնի վկայութիւններ կան պատմութեան մէջ, որոնք ցոյց կուտան, թէ Վարդան իբրեւ Տէր Մամիկոնեան Տան, իբրեւ կարող զօրական, իբրեւ ուսեալ եւ ներկայանալի անձնաւորութիւն, յաճախ գտնուած է կարեւոր եւ բարձր պաշտօններու մէջ։

Զոր օրինակ. Մ. Խորենացի կը պատմէ, թէ Վռամ Ե. (410–438), որ ծանօթ է իր Գոռ (Ցիռ, Վայրի էշ) տիտղոսով, երբ հաշտութիւն կնքեց Յունաց հետ, սկսաւ ճնշել Պարսկաստանի դրօշին տակ գտնուող փոքրիկ ազգերը։

Վռամին նեղութիւնները այնքան խստացան եւ անհանդուրժելի եղան պարսկաբաժին Հայաստանի մէջ, որ Մեծն Սահակ ստիպուեցաւ անցնիլ յունաբաժին Հայաստան։ Բայց հոն ալ Բիւզանդական կառավարութեան պաշտօնեաներ չուզեցին ճանչնալ Կաթողիկոսին հեղինակութիւնը, եւ հետեւաբար թոյլ չտուին, որ Նորագիւտ հայ այբուբենքը ուսուցուի եւ տարածուի Հայոց մէջ։

Մեծն Սահակ պարտաւորուեցաւ դիմել Բիւզանդիոն, թէ՛ Թէոդոս Բ. Կայսեր (408–450) եւ թէ՛ Ատտիկոս Պատրիարքին, ծագումով Հայ (406–426), որպէս զի վերջ տրուին այդ արգելքներուն։ Այս դիմումը ըրաւ պատկառելի պատգամաւորութեամբ

մը, 420ին, որու գլուխ նշանակեց Ս. Մեսրոպն ու իւր թոռ Վարդանը: Պատգամաւորութեան միւս անդամներէն յիշուած են Ս. Ղեւոնդին եւ Դերջանու Եպիսկոպոս Գնիթին անունները. բայց Ս. Ղեւոնդ կը մնայ ի Մելիտինէ, եւ Գնիթ Եպիսկոպոս կ՚երթայ մինչեւ Բիւզանդիոն:

Պատգամաւորութիւնը յաջողութեամբ ի գլուխ հանեց իր պաշտօնը, եւ այս առթիւ երկու գլխաւոր պատգամաւորներ պատուուեցան բարձր աստիճաններով: Ս. Մեսրոպին տրուեցաւ Առաջին Վարդապետ աստիճանը (յունարէն՝ Ակումիդ եւ Եկղեսիաստիկոս բառերով ճշդուած). իսկ Վարդանին տրուեցաւ Ստրատելատ զինուորական աստիճանը, որ կը նշանակէ Զօրավար, Զօրագլուխ, Սպարապետ:

Մեծն Սահակ յունաբաժին Հայաստանի մէջ թողուց Ս. Մեսրոպը եւ Վարդանին երկու եղբայրները, Հմայեակ եւ Համազասպեան, որպէս զի հոն օգնեն Ս. Մեսրոպի գրական եւ կրօնական աշխատութեանց, իսկ ինքն Հայ նախարարաց խնդրանքով, Վարդանի հետ վերադարձաւ Այրարատեան գաւառ, ուր նախարարական ժողով մը գումարեց (422), եւ այդ ժողովին մէջ որոշուեցաւ պատգամաւորութիւն մը ղրկել Տիզբոն, որպէս զի Վռամշապուհի որդի Արտաշէսը թագաւոր ըլլայ պարսկաբաժին Հայաստանի վրայ:

Այս պատգամաւորութեան գլուխ նշանակուեցան Սմբատ Ասպետ եւ Վարդան Ստրատելատ:

Վռամ Ե., որ արդէն Սմբատ Ասպետի միջոցաւ որոշած էր սիրաշահիլ Հայ նախարարութիւնը, կատարեց պատգամաւորութեան խնդիրքը, եւ թագա-

*ուրեցուց Արտաշէս Դ.ը Հայոց վրայ, Արտաշիր ա-նունով, որ եղաւ Հայոց վերջին Արշակունի Թագա-ւորը* (422–428)։

*Ըստ խս, այս առթիւ Վռամ Ե. ճանչցաւ Թէո-դոս Բ. Կայսեր կողմէ Վարդանին տրուած Սպարապե-լատութեան աստիճանը։ Որովհետեւ չատ բնական է, որ երբ Հայոց Թագաւոր մը տուաւ, տուաւ նաեւ անոր Սպարապետը։*

*Հայ նախարարք չսիրեցին Արտաշէսը, եւ որո-չեցին գահընկեց ընել տալ զայն։ Մեծն Սահակ խստիւ հակառակեցաւ անոնց։ Իսկ նախարարք թէ՛ Թագաւորը եւ թէ՛ Կաթողիկոսը միանգամայն ամ-բաստանեցին Վռամ Ե.ի առջեւ՝ իբրեւ յունասէրներ։*

*Արտաշէս եւ Սահակ կանչուեցան Դուռը։ Վռամ Ե. բռնադատեց զՍահակ որպէս զի միաբանի նախա-րարաց հետ եւ ամբաստանէ Արտաշէսը, այն խոս-տումով որ Վարդան, իր Թոռը, պիտի կարգուի Հա-յոց վրայ այնպիսի բարձր պաշտօնով մը, որ* զուգա-հաւասար է թագաւորին եւ համապատիւ։

*Մեծն Սահակ մերժեց այսպիսի դաւաճանական սակարկութիւն մը. հետեւաբար Արտաշէս զրկուե-ցաւ իր Թագաւորութենէն, եւ ինքն Սահակ ալ իր Կաթողիկոսութենէն եւ երկուքն ալ վար դրուեցան։ Արտաշէսին տեղ Հայաստանի վրայ Մարզպան կար-գուեցաւ Վեհմիհրշապուհ անուն* Պարսիկ *մը, իսկ Մեծն Սահակին տեղ հետզհետէ գործակալ-կաթողի-կոս եղան Սուրմակ եւ Բրքիշոյ անուն* Ասորի *եպիս-կոպոսներ։*

*Այս վիճակը երեք տարի հազիւ տեւեց։ Մեծն Սահակ փնտռուեցաւ։ Պատգամաւորութիւններ ղըր-*

կուեցան Վռամ Ե․ին, որ այս անգամ Թէեւ Թոյլ տուաւ Սահակին վերադառնալ Հայաստան եւ վարել կաթողիկոսութեան հոգեւոր իշխանութիւնը, բայց ընդդիմափառ եւ հակառակաթոռ գործակալ–կաթողիկոս մըն ալ նշանակեց, որպէս զի սա գործակցի Մարզպանին, հարկերու, դատական խնդիրներու եւ ուրիշ «աշխարհական կարգաց» հսկելու համար։ Այս ալ Ասորի եպիսկոպոս մըն էր Շմուէլ անունով։

Սահակ այս առթիւ մեծ համարձակութեամբ եւ պերճախօսութեամբ արդարացուց ինքզինքը, Թուեց իր ծառայութիւնները, պախարակեց եւ չքացուց իր հակառակորդներուն բոլոր ամբաստանութիւնները, եւ իբրեւ քաջաբան եւ ուժգնասիրտ մարդ՝ այնպիսի տպաւորութիւն մը Թողուց Վռամին վրայ, որ սա ուզեց զանձերով վարձատրել զինքն։ Բայց Մեծն Սահակ մերժեց դրամական ոեւէ պարգեւ, եւ անոնց տեղ խնդրեց վերահաստատութիւնը այն Նախարարութեանց, որոնք զրկուած էին իրենց գահերէն եւ իրաւունքներէն։

Վռամ հաւանեցաւ, կատարեց ազգասէր եւ վեհանձն Սահակին բոլոր խնդիրքը, եւ այս առթիւ հաստատեց նաեւ «զբոռն նորա զՎարդան Ստրատելատն ի տէրութիւն իւր ազգին Մամիկոնենից» (Մ․ Խոր․ Գ․ կե․)։

Այդ դէպքեր տեղի ունեցան 431–432 տարիներու ընթացքին։

Եւ այդ հաստատութիւնը կը նշանակէ Թէ Քաջն Վարդան, ո՛չ միայն Տէր, Նահապետ կամ Նախարար եղաւ Մամիկոնեան Տոհմին, այլ նաեւ Սպարապետ Հայ բանակին։

# ՍՊԱՐԱՊԵՏՈՒԹԵԱՆ ՆՇԱՆԱԿՈՒԹԻՒՆԸ

ԸՍՏ Փ. Բուզանդի՝ Սպարապետութիւն է «իշխանութիւն բովանդակ ի վերայ ամենայն զօրաց բազմութեան Մեծաց Հայոց» (Փ. Բուզ. Գ. ը):

Ալիշան տարբերութիւն մը կը դնէ Սպարապետութիւն եւ Ասպետութիւն պաշտօններուն կամ աստիճաններուն մէջ:

Ըստ Ալիշանի՝ Սպարապետն առաջնորդ է հետեւակ զունդերու. իսկ Ասպետ հրամանատարն է այրուձիոյն, այսինքն՝ հեծեալ զունդերու:

Ասպետութիւնը յատուկ էր Բագրատունեաց Նախարարութեան. իսկ Սպարապետութիւնը՝ Մամիկոնեանց:

Բայց յայտնի է, որ այս երկու պաշտօններն ալ միացած էին միեւնոյն անձի վրայ. այնպէս որ Բագրատունի Սահակ Ասպետ՝ կոչուած է միանգամայն Սպարապետ:

Եւ որովհետեւ Սպարապետութիւնը սեփական էր Մամիկոնեան Նախարարութեան, կ'երեւի թէ Մամիկոնեանց գլուխը փորձանք մը եկած է պահ մը՝ Պարսիկ կառավարութեան կողմէ, եւ այդ պատճառաւ Մամիկոնեանք զրկուած են Սպարապետութենէն, եւ Հայ բանակին հրամանատարութիւնը անցած է Բագրատունեաց:

Վերջապէս իրողութիւնը սա՛ է, որ Քաջն Վարդան 431–32ին կը վերահաստատուի Մամիկոնեան Նախարարութեան Տանուտէրութեան եւ Հայ բանա-

*կի հրամանատարութեան պաշտօնին մէջ, Վռամ Ե.ի կողմէն, եւ Հայ բանակին հրամանատարութիւնը կը ծաւալի թէ՛ այրուձիոյն եւ թէ՛ հետեւակներու վը-րայ:*

*Վարդանանց պատերազմը տեղի ունեցաւ* 451*ին, եւ գիտենք որ Քաջն Վարդան էր վաթսուն հազարներու Սպարապետը: Ուրեմն, Վարդան Մամիկոնեան* տասնը ինընէն քսան տարի *շարունակ Սպարապետ եղաւ Հայ բանակին, եւ Հայ Ազգին կամքով՝ վերջին անգամ առաջնորդեց անոր Աւարայրի դաշտը, ուր ինկաւ նիզակ ի ձեռին....:*

## ՎԱՐԴԱՆԻՆ ԱՌԱՆՁՆԱՑՈՒՄԸ ՄՈԿԱՑ ԼԵՌՆԵՐՈՒՆ ՄԷՋ

ԱՍՈՂԻԿ *կը պատմէ, թէ Արտաշէս Թագաւորի մահէն ետքը՝* (1) *Հայ նախարարներ ժողով ըրին եւ Սպարապետ կարգեցին «զսուրբն Վարդան», թէ Վարդան* տասնը ինը *տարի վարեց Հայ բանակին Սպարապետութիւնը, մինչեւ Վարդանանց պատերազմը, որուն մէջ մեռաւ* «ի վերայ սուրբ ուխտի եւ քրիստոնէական հաւատոյ ի դաշտին Աւերայրի, ի գաւառին Արտազու (Ասողիկ, Բ. բ.):

(1) Աւելի ճիշդ է ըսել՝ Արտաշէսի գահազրկութենէն ետքը, որ եղաւ 431–32ին, որուն վրայ աւելցնելով 19 տարիները Քաջն Վարդանի Սպարապետութեան, կ'ունենանք 451, Վարդանանց Պատերազմին, ինչպէս նաեւ իր մահուան թուականը:

Աստղիկ դիտել կուտայ միանգամայն, թէ այս
տասնը ինը տարիներու ընթացքին Հայք երբեմն հը-
նազանդ եղան Պարսից, երբեմն ալ ապստամբ։ Եւ
այս ապստամբութեան պատճառն էր հաւանաբար
Արշակունեաց Թագաւորութեան բարձումը, եւ Հայ
Արշակունի թագաւորին տեղ Պարսիկ Մարզպանի մը
ներկայութիւնը, յանձին Վեհմիհրշապուհի։

Գիտենք թէ Մամիկոնեանք, իբրեւ դայեակ եւ
ազգական Հայ Արշակունեաց, ո՛րչափ տիրասէր եւ
անձնուէր եղած էին սկիզբէն իվեր։

Թէ՛ Շահապիվանի Առաջին Ժողովին (445) եւ թէ՛
Թովմաս Արծրունիի պատմութիւններէն կը տեղե-
կանանք, որ այդ տասնը ինը տարիներու ընթացքին,
եւ հաւանաբար 445էն յառաջ, Քաջն Վարդան եւ բո-
լոր Մամիկոնեանք քաշուած էին Մոկաց ամուր եւ
անմատոյց լեռները, եւ կը մնային Ջողայլ (Ջոել,
Ջոայլ) բերդին մէջ, ուր կ՚այցելէին Հայոց Սպարա-
պետին՝ Մոկաց Յովհան, Ռշտունեաց Սահակ եւ
Անձեւացեաց Շմաւոն եպիսկոպոսները, հոգեւոր մը-
խիթարութեան համար։

Մոկք կամ Մոկաց Գաւառ, ըստ Ալիշանի, սա-
կաւածանօթ է իր անմատչելի լեռներուն եւ Քիւրտե-
րու բռնակալութեանց պատճառաւ։ Հին Հայաստա-
նի այս «աշխարհը», որ նշանաւոր էր իր ծառախիտ
անտառներով եւ խորափիտ խոխոմներով, իբրեւ բը-
նական վիթխարի ամրութիւն, հիմայ բաժնուած է
շատ մը մասերու, որոնց գլխաւորը կ՚իյնայ Վանի
Կուսակալութեան մէջ։ Մինչեւ ցարդ Մոկս կը կո-
չուի Հայ քաղաքաւան մը՝ դժուարակոխ քարալերի
մը վրայ։

Վարդան ամրացաւ այսպիսի երկրի մը լեռներուն մէջ եւ պարզեց ապստամբութեան դրօշը Ջըռղայլի վրայ:

Մամիկոնեանց բացակայութեան այս շրջանին է, որ ընկերային, առտնին եւ եկեղեցական զեղծումներ կը շեշտուին Հայ ժողովուրդի կենցաղին վրայ, Թերեւս հեթանոս կամ Պարսիկ ազդեցութեանց ներքեւ:

Ս. Սահակ եւ Ս. Մեսրոպ շատոնց էին վախճաներ: Ընդդիմափառ Ասորի գործակալ–կաթողիկոսներէն զզուած էր ժողովուրդը: Սահակ–Մեսրոպեան Դպրոցէն Յովսէփ եպիս., ըստ Ասողիկի, կաթողիկոս ընտրուեցաւ Հայոց եպիսկոպոսներու կողմէն եւ Քաջն Վարդանի հրամանաւ նստաւ «յաթոռ Կաթողիկոսութեան»:

Դիտելի է նաեւ, որ այս շրջանին մէջ վերջ կը գտնէ Պարսիկ Մարզպանին (Վեհմիհրշապուհ) 13 տարուան իշխանութիւնը, որ Արտաշէս Գ.ի գահազրկութենէն անմիջապէս յետոյ (428) ղրկուած էր Հայաստան, եւ Սիւնեաց Տէր հանրածանօթ Վասակ՝ Մարզպան կը կարգուի պարսկաբաժին Հայաստանի վրայ (441), Յազկերտ Բ.ի կողմէն:

Կ՚արժէ յիշատակել նաեւ, որ Վահան Ամատունի հայրաբար կը վարէր Հայոց աշխարհին հազարապետութիւնը (վերակացուութիւն), իսկ Վրիւ Խորխոռունի վրայ էր Մաղխազութեան (Թիկնապահութիւն?) պաշտօնը:

Այս բոլորը կը նշանակեն, թէ պարսկաբաժին Հայաստանի մէջ կերպով մը Հայկական ինքնավարութիւն հաստատուած էր, եւ Մամիկոնեանք այլեւս չէին կրնար փակուած մնալ Մոկաց ամրութիւննե–

րուն մէջ: Եւ մեզ շատ հաւանական կը թուի, որ Հայոց Սպարապետն այս միջոցին, այսինքն՝ 441էն ետքը վար իջած ըլլայ Մոկաց լեռներէն միանալու համար նորահաստատ Հայ Մարզպանին:

Յովսէփ Ա. Կաթողիկոսին առաջին գործը եղաւ ժողով մը գումարել ի Շահապիվան, վերցընելու համար տիրող զեղծումները:

Կ՚արժէ գիտնալ, որ ոսկեդարեան եւ հայերէնագիր Հայաստանի այս առաջին ազգային ժողովի տեղեկագրին մէջ չյիշուիր Յովսէփ Կաթողիկոսին ո՛չ նախաձեռնութիւնը, ո՛չ ալ ներկայութիւնը:

Իսկ Քաջն Վարդանի, ինչպէս նաեւ իր փեսին Արշաւիր Կամսարականի, նոյնպէս Մանաճիհր Ռըշտունիի եւ Ջիկ Դիմաքսեանի անունները կը յիշուին այդ տեղեկագրին ինչ ինչ օրինակներու մէջ միայն:

Սակայն շատ հաւանական է, որ այդպիսի կարեւոր ժողով մը չէր կրնար գումարուիլ առանց նախագահութեան Հայոց Կաթողիկոսին եւ առանց հաւանութեան եւ գործակցութեան Մամիկոնեան Սպարապետին:

Շահապիվանի այս Առաջին Ժողովը գումարուեցաւ 445ի Նաւասարդին (Օգոստոս) մէջ, Ամանորի տօնին(1):

---

(1) Շահապիվան շատ նշանաւոր վայր մըն է թէ՛ իր բնական դիրքով ու գեղեցկութիւններով, եւ թէ՛ իր պատմական դէպքերով: Այստեղ սաչափը միայն յիշենք եւ անցնինք, թէ Շահապիվան բուն բանակետղն է Հայոց Արշակունի թագաւորներուն: Լեռնոտ վայր մըն էր Շահապիվան, քաջերէ (որսի կենդանիներով լի), Ծաղկոտն գաւառին մէջ, հռչակաւոր իր Անգղ բերդով եւ Վարշակի ջերմուկով: Հոն էին Հայ թագաւորներէն շատերուն գերեզմանք, եւ նախնեացմէ մթերուած

*Այդ ժողովին եկան Հայ ազգին բոլոր դասակարգերուն ներկայացուցիչները: Խմբագրուեցաւ կանոնագիր մը քսան յօդուածներով, որոնք հիմնուած են Լուսաւորչի, Մեծն Ներսէսի, Սահակ–Մեսրոպի կանոնական եւ կարգապահական սկզբունքներուն վրայ, աղնուացնելու համար Հայոց ընկերային եւ ամուսնական բարքերը, եւ բարեկարգելու համար Եկեղեցւոյ վարչական գործերը, պատժական խիստ տրամադրութիւններով:*

*Շահապիվանի ժողովին բոլոր գործերն ալ ակընյայտնի ապացոյց են Մամիկոնեանց նախանձայուզութեան եւ հաւատարմութեան նախնեաց փառաւոր աւանդութեանց:*

*Քաջն Վարդանը անգամ մըն ալ կը գտնենք Արտաշատու միւս նշանաւոր ժողովին մէջ, որ տեղի ունեցաւ 449ի վերջերը, Յովսէփ Կաթողիկոսի նախագահութեամբ, պատասխանելու համար Միհրներսեհի ծանօթ պաշտօնագրին, որ սկիզբն եղաւ Վարդանանց Պատերազմին նախընթաց պաշտօնական գործերուն:*

---

բազում զանձեր: Քաջն Վարդան հոն անցուց իր վերջին ամառը՝ իր բանակով, վասն զի հիանալի հովոց (ամառանոց) մըն էր Շահապիվան (Ղ· Փարպ· էջ 193–94· Հմմտ· էջ 457):

Շահապիվան կ'իյնայ Բագրեւանդ գաւառին մէջ· Պայազիտի շրջանակ, եւ Բագրեւանդ նշանաւոր է ինչպէս իր հին բագիններով, նոյնպէս Ս· Յովհաննու հոյակապ եւ հրաշակառոյց Եկեղեցիով (*Իւչ–Քիլիսէ*), որ ի սկզբան շինուեցաւ ի յիշատակ Հայոց առաջին աշխարհախումբ մկրտութեան, որ կատարուեցաւ Եփրատի մէջ, Լուսաւորչի ձեռքով, սկսելով Տրդատ թագաւորէն:

# ՎԱՐԴԱՆԻՆ ԳԵՐԴԱՍՏԱՆԸ

Վ ԱՐԴԱՆԻՆ առտնին կեանքին վրայ շատ քիչ տեղեկութիւն հասած է մեզ, եւ ի՛նչ որ հասած է, այնքան զուարթ չէ:

Վարդան ամուսնացաւ, հաւանաբար 407–413 թուականներուն մէջ, երբ 20–25 տարեկան էր: Իր Տիկնոջ անունը պատմիչներէն յիշուած է Դուստր կամ Դստիկ կամ Դխտիկ ձեւերով, որոնք պարզապէս կը նշանակեն աղջիկ:

Վարդանի կնոջ անունը միայն մէկ անգամ յիշուած է պատմութեան մէջ, Մեծն Սահակի մահուան առթիւ, իբրեւ «սատուածասէր իշխանակին», որ տէր կ'ըլլայ Սուրբ Հայրապետի նշխարքին, եւ զայն Բագրեւանդէն փոխադրել կուտայ Մշոյ Աշտիշատ գիւղը, որ սեփական կալուածն էր Կաթողիկոսական Տան:

Վարդան ունեցաւ միայն երկու աղջիկ զաւակներ․— ՎԱՐԴԵՆԻ եւ ՎԱՐԴԱՆՈՅՇ:

Վարդենի, որ ձառընտիրներու մէջ Վարդանի, Վարդանուհի եւ Վարդուհի ձեւերով ալ գրուած կը գտնուի, գգուական անունով՝ կոչուած է նաեւ Շուշան կամ Շուշանիկ:

Շուշանիկ ամուսնացած է Վրաց Բդեշխ Վազգէնի հետ(1):

---

(1) Այս Վազգէնի հայրը, Աշուշա եւ Քաջն Վարդանին եղբայրը Հմայեակ՝ քենեկալ էին: Հմայեակին կնոջ անունն էր Զուիկ, իսկ Աշուշայինը՝ Անուշ-Վռամ: Ինչպէս կ'երեւի երկու իշխանական տուներ արդէն խնամեցած էին:

*Շուշանիկին ամուսնական կեանքը եղերերգութիւն մը եղաւ՝ իւր հօր նահատակութենէն ետքը: Վասն զի Վազգէն, յայտնի չէ թէ ի՛նչ պատճառաւ,— թէեւ պատմիչներ պատճառ ցոյց կուտան իր «չկտի և անառակ» վարքը — ուրացաւ իր հաւատքը, ընդունեցաւ Պարսից դենը, եւ ամուսնացաւ Շահի զոքանչին հետ, եւ այսպէս եղծեց եւ պղծեց իր քրիստոնէական ամուսնութեան պսակը, եւ աւելի մեծ յանդըգնութեամբ ստիպեց Շուշանն ալ, որ իրեն պէս ուրացող ըլլայ:*

*Շուշան Քաջն Վարդանի պէս դիւցազնի մը աղջիկ եւ Մեծն Սահակի պէս Կաթողիկոսի մը թոռնիկն էր, եւ հետեւաբար տեղի չտուաւ:*

*Վազգէն Ցուրտաւի Ուփրէթ բանտին մէջ եօթը տարի չարչարեց Շուշանիկը, որպէս զի տեղի տայ. բայց Շուշանիկ ամուր եւ անաղարտ պահեց իր նկարագիրը, եւ նահատակուեցաւ բանտին մէջ, իր քառասուն հինգ տարեկան հասակին, 458ին:*

*Շուշանիկ չորս զաւակ ունեցաւ Վազգէնէն, երեք մանչ եւ մէկ աղջիկ. մանչերէն մէկը զոհ գնաց Կուր գետին, երբ բանտի մէջ էր ինքն. իսկ անօրէնն Վազգէն սպաննուեցաւ (481–2) Վախթանգի ձեռքով:*

*Քաջն Վարդանին միւս աղջկան — Վարդանուշին — կեանքը անծանօթ է մեզ: Միայն գիտենք որ նա տիկին եղաւ Կամսարականաց տան: Իր ամուսինն է Քաջն Արշաւիր Կամսարական, որ Վարդանին թեւ թիկունքն էր պատերազմներու մէջ:*

*Արշաւիր՝ չինկաւ Աւարայրի դաշտին մէջ: Նա զօրաւոր դատախազ մը եղաւ Վասակին դէմ, Տիզբոնի արքունիքին մէջ, մեծ դատավարութեան ատեն, եւ կորովի կերպով պաշտպանեց Վարդանանց*

*դատը։ Արշաւիր յետոյ՝ զինակից եղաւ Վահան Մամիկոնեանին, եւ բախտ ունեցաւ տեսնելու Վարդանանց դատին յաջող լուծումը։ Արշաւիր եղաւ նաեւ կենդանի աղբիւրը Վարդանանց եւ Վահանեանց պատերազմներուն պատմութեան, եւ Ղ. Փարպեցի այս պատուական զօրականէն քաղեց իր այնքան հետաքրքրական տեղեկութիւնները։*

*Արշաւիր եւ Վարդանոյշ քանի՛ զաւակ ունեցան, չենք գիտեր։ Իրենց երեք մանչ զաւակներուն անունները եւ քաջագործութիւնները արձանագրուած են Վահանեանց պատերազմներուն մէջ։*

Ներսեհ՝ *Տէրն Շիրակայ*, Հրահատ *եւ* Սահակ — *ասոնք են Քաջն Վարդանի թոռները, որք չիտակ քալեցին իրենց մեծ հօր ճամբէն, եւ ժառանգեցին քաջութեան անունը այնքան փառաւոր կերպով, եւ փայլեցին իրենց քաջագործութեան ազդաչէն եւ պանծալի արդիւնքները, շնորհիւ Վահանի ձեռք բերած ազգային ինքնօրէնութեան։*

## ՎԱՐԴԱՆԻՆ ՆԱՀԱՏԱԿՈՒԹԻՒՆԸ

ՏԵՍԱՆՔ *թէ Մամիկոնեանց համար ապերջանկութիւն մըն էր մեռնիլ անկողնի մէջ։ Անոնք կը նախընտրէին մեռնիլ պատերազմի ճակատներուն վրայ։*

*Քաջն Վարդան՝ դիւցազնաբար ինկաւ Աւարայրի ճակատին վրայ, անգամ մըն ալ պանծացնելու համար Մամիկոնեան Տան հոյակապ աւանդութիւնը։*

*Մամիկոնեանք, ինչպէս որ դիտել տուի սկիզբէն, նուիրուած էին Ազգին եւ Եկեղեցւոյն։ Եւ իրենց նուիրումը հաւասար էր գերագոյն զոհողու-*

թեան: Որովհետեւ Մամիկոնեանց ցեղային սպառման մէջ շատ կարեւոր դեր մը ունի իրենց քաջաբար մեռնիլը պատերազմներու մէջ:

Մամիկոնեանք հաւատարիմ էին, իրենց կեանքին գնով, ո՛չ միայն իրենց Ազգին, այլ նաեւ դերիշխան պետութեանց:

Վարդան, իր նահատակութեան գիշերը, երբ կը խրախուսէր իր վաթսուն հազար զինակիցները, կ'ըսէր թէ ինքն շատ մը պատերազմներու մէջ մտեր եղեր է, որուն իբր վկայ մատնանիշ կ'ընէր իր ստացած վէրքերն ու սպիները: Այդ պատերազմներուն թիւը, Վարդան Պատմագրի տեղեկութեանց համաձայն քառասուն երկու է: Մամիկոնեան դիւցազնը այս պատերազմները մղեց մեծ մասամբ ի հաշիւ Պարսիկ Կառավարութեան, եւ Յազկերտ Բ. իր աչքերով տեսած էր այդ պատերազմներու ամէնէն փառաւորներէն մէկը, երբ Վարդան իր քաջասրտութեամբ եւ իր քաջարի գնդով ի պարտութիւն մատնեց թշնամին (Քուշանները) Մարվի Ռոտ գետին եզերքը, ըստ պաշտօնական յայտարարութեան Միհրներսեհի:

Ղ. Փարպեցի հրաշալի դրուագ մը արձանագրած է Քաջն Վարդանի կեանքէն: — Երբ երեք ազգաց (Հայոց, Վրաց եւ Աղուանից) զինուորական եւ եկեղեցական երեւելիները Տիզբոնի մէջ վար դրուեցան, եւ Յազկերտ Բ. առաջարկեց անոնց, որ պէտք է թողուն քրիստոնէութիւնը եւ ընդունին Պարսից դենը, Հայոց Սպարապետը «աներկիւղ եւ քաջասիրտ մըտօք», իբրեւ պատասխան սա՛ կերպով խօսեցաւ Յազկերտին:

— «Այս երեք երկիրներու ներկայացուցիչներուն մէջ շատեր կան, որ ինէ աւելի վե՛ր են, թէ՛ աստի-

ճանով եւ թէ՛ տարիքով․ շատեր ալ կան, որ վար են․ եւ մեր մատուցած ծառայութիւնները եւ հպատակութիւնը ո՛չ միայն դուք լաւ գիտէք, այլ նաեւ զայն գիտէ բոլոր Արեաց ազգը, եւ հետեւաբար աւելորդ է խօսիլ այդ մասին։ Բայց ես սաչափը կ'ուզեմ ըսել, թէ՛ այսօր եւ թէ՛ ասկէ յառաջ միտքս դրած եմ, որ եթէ հնար է բազմապատկեմ ինքզինքս, ինչպէս նաեւ ոյժերս եւ պատրաստակամութիւնս աւելի եւս շատցընեմ, եւ իմ բոլոր հարստութիւնս եւ ինչքս ծախսեմ ի նպաստ Արեաց աշխարհին։ Ասիկա միտքս դրած եմ եւ պիտի ընեմ․ բայց իմ կրօնքս, զոր մանկութենէս սորված եմ Աստուծմէ, չեմ կըրնար փոխել՝ ձեզմէ վախնալով։ Եթէ ես մարդոցմէ սորված ըլլայի ճշմարիտ հաւատքը, եւ այս հաւատքը ուրանայի, շատ ողորմելի պիտի ըլլայի․ Թո՛ղ որ ես Աստուծոյ բերնէն ընդունած եւ սորված եմ իմ հաւատքս, եւ հետեւաբար չեմ կրնար վաճառել զայն վախով կամ սնոտի փառքերու սիրուն․ Քա՛ւ լիցի․ ատանկ բան չեմ կրնար ընել։ Այս է իմ պատասխանս եւ կ'ուզեմ մեռնիլ ասոր համար քան թէ իբրեւ ուրացող ապրիլ, առանց Աստուծոյ։

Իսկ ասոնք, որ հոս կեցած են ձեր առջեւ եւ քրիստոնեայ մարդիկ են, կարող են պատասխանել իւրաքանչիւրը իր հաշւոյն»։

Յազկերտին երեսը գունատեցաւ, սաստիկ զայրոյթով, այնպէս որ երեք երկիրներու ներկայացուցիչներ խոհեմութիւն սեպեցին ներողութիւն խնդրել Շահէն, քանի մը օր խորհելու եւ իրենց պատասխանը տալու համար։

Այդ քանի մը օրուան մէջ երեք երկիրներու նախարարներ շատ խորհեցան, քննեցին, եւ վերջապէս

*որոշեցին* առ երեսս ուրանալ, *որպէս զի անգամ մը ազատին, եւ երբ վերադառնան իրենց երկիրներ կամ ապստամբութեան դրօշ կը պարզեն եւ իրենց արեան գնով կը պաշտպանեն իրենց հաւատքը, եւ կամ տունով տեղով կը գաղթեն Յունաց բաժինը, եւ հո՛ն ազատօրէն կը պահեն իրենց քրիստոնէական հաւատքը։*

*Այս որոշումը տուին իրենց մէջ քանի մը օր գիշեր ցորեկ մտածելէ եւ խորհրդակցելէ յետոյ, բայց չյանդգնեցան իրենց որոշումը յայտնել Վարդանին, որովհետեւ գիտէին թէ Վարդան պիտի չհաւանէր։ Բայց չէին կրնար ալ չյայտնել.*— «քանզի գիտէին եթէ առանց նորա ամենայն խորհեալքն ի նոցանէ եւ պատճառադրութիւնք եւ արարուածք՝ թերիք են եւ անկատարք» (Ղ. Փարպ. էջ 159)։

*Վերջապէս, շատ մը վարանումներէ ետքը, յայտնեցին իրենց խորհուրդը։ Վարդան յուզուեցաւ մեծապէս, եւ կտրուկ կերպով ըսաւ անոնց, թէ ինքն ամենեւին հոգ չըներ իր կնոջ եւ տան համար, եւ հաստատ կը մնայ իր որոշման վրայ։ Դուք, դիտել տուաւ անոնց, ամէն կերպով երեւելի էք, իբրեւ ազատ, իբրեւ քաջ զինուոր, իբրեւ հաւատացեալ մարդիկ, եւ կարող էք ըլլալ այնպէս ինչպէս որ օգտակար կը կարծէք. ամէն ոք պատասխանատու է իր անձին. գացէք ըրէք ինչպէս որ կ՚ուզէք, բայց այդպէս բան մի՛ ըսէք ինծի. վասն զի ինչ որ չեմ ուզեր լսել, չեմ ալ ուզեր գործադրել։*

*Նախարարք բոլորովին տրտմեցան, որովհետեւ ստուգիւ անկեղծ էին, եւ ուրիշ ճար չկար իրենց համար, եթէ ոչ կեղծուրացութեամբ անգամ մը իրենց օձիքը ազատել Յազկերտի ձեռքէն, եւ վերադառնալով իրենց տեղերը՝ պարզել ապստամբու-*

թեան դրօշը։ Ինչպէս կ՚երեւի պատմութեան ընթացքէն, Նախարարք վերջապէս համաձայնեցան միայն մէկ ծրագիր գործադրել, այսինքն՝ փոխանակ գաղթելու Յունաց կողմը, մնալ իրենց երկիրներուն մէջ, եւ պաշտպանել իրենց հաւատքը։

Մոկաց իշխան Արտակ, որ «համեստ, մտացի եւ քաջ» անձ մըն էր, իբրեւ մտերիմ Հայոց Սպարապետին, երեք երկիրներու նախարարաց թախանձանքին վրայ, սկսաւ մօտենալ Վարդանին եւ համոզել որ հաւանի կեդրոնացութեան ծրագրին։ Իշխան Արտակին մանաւորապէս ոյժ տուաւ Վրաց Բդեշխն Աշուշա, շատ խելացի անձ մը, որ ինչպէս յառաջագոյն ալ դիտել տուի, խնամի էր Վարդանի Տան, իբրեւ քենեկալ՝ իր եղբօր Հմայեակին։ Վերջապէս կոչում ընելով իր ասպետական ոգւոյն, իր Սուրբ Գրոց հմտութեան եւ պնդելով Հռոմ. Թ. 3–4 համարին վրայ, ուր Առաքեալը կը նախընտրէ նզովուիլ Քրիստոսէն, իր մարմնաւոր զաւկաց եւ ազգականաց համար, մեծ դժուարութեամբ պարտաւորեցին զՎարդան, որ հաւանի իրենց ծրագրին, եւ Աւետարանի վրայ ձեռք դնելով երդում ըրին հանդիսաւորապէս, եւ ուխտեցին միաբանութեամբ ի գլուխ հանել այդ ծրագիրը. որոշեցին նաեւ ուխտադրուժներէն լուծել երեք երկիրներուն կրելիք բոլոր վնասներուն վրէժը։

Աւետարանը այդպէս ահաւոր երդումներով կընքուեցաւ, եւ հաւատացեալն Վարդան ստիպուեցաւ համակերպիլ կեդրոնացութեան.— «յարտասուս հարեալ յանձն առ վայր մի զպատճառանօք վիրաւորիլն վասն երեցունց աշխարհացն եւ բազմութեանց 'ի նոսա արանց եւ կանանց» (Անդ, էջ 170)։

*Յազկերտ կարծեց, որ յաջողեցաւ. մեծ մեծ պարգեւներով արձակեց երեք երկիրներու նախարարները՝ իրենց տեղերը: Եւ այս առթիւ ուրացքանչիւր նախարար բան մը ըսաւ իր ցեղին հաւատարմութիւնը յայտնելու համար Պարսից Գահուն, փայլուն խօսքերով:*

*Իսկ Վարդան, իր կեդրոնացութեան դիմակին տակ, այնպիսի յայտարարութիւն մը ըրաւ Յազկերտի առջեւ, որ ամբողջ խորհուրդ է.*

*— «Իմ նախնեաց հպատակութիւնը եւ ծառայութիւնը թէ՛ այս գահուն եւ թէ՛ ձեր անձին, դուք շատ լաւ գիտէք, եւ աւելորդ է որ ես կրկնեմ զանոնք: Իսկ ես, թէեւ շատ «նուազ» էի քան իմ նախնիքը, բայց միտքս դրած էի «արդար վաստակօք» (հաւատարիմ ծառայութեամբ) հաճելի ըլլալ ձեզ, եւ ձեր հրամանով, ո՛ր գործի որ գացի, տեսան ձեր զօրավարները, ինչպէս նաեւ իմ ընկերներս, թէ իմ ուժերուս համեմատ բոլորովին անկեղծ հաւատարմութեամբ ըրի այդ գործերն ու ծառայութիւնները:*

Բայց այսուհետեւ իմ կամքս սա է. եթէ մինչեւ հիմայ բրածներս արժանի չեղան յիշատակութեան կամ գովեստի, բայց ասկից ետքը պիտի աշխատիմ իմ բոլոր ուժով եւ զօրութեամբ եւ Աստուծոյ օգնութեամբ այնպիսի գործ մը ընել, որուն համբաւը պիտի պատմուի ո՛չ միայն Արեաց աշխարհին (Պարսկաստան) մէջ, ձեր առջեւ, այլ նաեւ Բիւզանդիոնի (Կ. Պոլիս) կայսերական պալատին մէջ, եւ թէ՛ ուրիշ ազգերու մէջ, մինչեւ յաւիտեան»(1):

---

(1) Այս յայտարարութեան եւ ուխտին բնագիրը տե՛ս այս գիրքին սկիզբը:

Վարդան այս յայտարարութեամբ կը խորհրդաւորէր իրենց ապստամբութիւնն ու իր նահատակութիւնը. բայց Յազկերտ եւ իր աւագանին՝ իրենց նըպաստաւոր կերպով հասկըցան զայն, եւ մեծապէս շնորհակալ եղան Մամիկոնեան Քաջին եւ գովեստներ տուին իրեն։

Այս կեղծուրացութիւնը շատ դէշ տպաւորութիւն մը գործեց Հայաստանի մէջ. որովհետեւ իրական կարծուեցաւ այդ. մա՛նաւանդ տեսնելով եօթը հարիւրէ աւելի մոգերու կարաւանը, որոնք ընկերացեր էին նախարարաց՝ Հայաստանը կրօնափոխ ընելու համար։ Ինչպէս կ՚երեւի, Վարդանին դիրքը դժուարացաւ. նախարարք կարծես պահ մը թուլցան։

Վարդան այդ միջոցին աւելի գործնական կը համարի, իր առաջին ծրագրին համեմատ, հեռանալ Պարսկաբաժին Հայաստանէն եւ անցնիլ «ի կողմանս իշխանութեան Յունաց», եւ իրօք ճամբայ կ՚ելլէ իր եւ իր եղբարց ամբողջ գերդաստանով եւ իրենց գաղափարակիցներով, եւ կը հասնի Բագրեւանդ նահանգին Արաման գիւղը։

Այս յանկարծական եւ անշշուկ մեկնումը դէշ կերպով ցնցեց Մարզպանն (Վասակ) ու նախարարները։ Անգամ մըն ալ զգացին անոնք, թէ առանց Մամիկոնեան քաջերու պիտի չկրնային բան մը ընել։ Հետեւաբար, առանց ժամանակ կորսնցնելու, նամակ գրեցին, պատկառելի պատգամաւորութիւն մը ղրկեցին Վարդանի ետեւէն, Ղեւոնդ Երէցի գլխաւորութեամբ, Երդման Աւետարանին հետ։

Պատգամաւորութիւնը հասաւ Արաման գիւղը, հասաւ նաեւ իր նպատակին. վասն զի, Վարդան բա-

ցէ ի բաց մատնանիշ ընելով հանդերձ իր անվստահութիւնը նախարարաց վրայ եւ դիտել տալով հանդերձ, թէ Մամիկոնեան Տունը միշտ տուժած է նեղ օրերու մէջ, խոնարհեցաւ անգամ մըն ալ Ազգի ձայնին առջեւ, որ կը նուիրագործուէր դարձեալ Աւետարանին վրայ երդումով եւ ուխտով, եւ վերադարձաւ «ի բանակն Հայոց», իր եղբայրներուն եւ սիրելիներուն հետ:

Վարդանին վերադարձը հրահրեց ապստամբութեան կայծը Հայ խղճմտանքին մէջ:

Վարդան գործի սկսաւ· Հայոց բանակը կեդրոնացուց Ծաղկոտն գաւառի մէջ, Անգղ բերդին մօտ, տաք օդերը անցընելու համար:

Այդ Անգղի եկեղեցւոյն դրան առջեւն էր որ 450, Յունիս 25ին, Ղեւոնդ Երէց իր խումբով առաջին դիմադրութիւնը ըրաւ եւ քարկոծելով հալածեցին մոգերը, որոնք եկած էին գրաւելու այդ եկեղեցին եւ ատրուշան հաստատելու հոն փոխանակ սուրբ սեղանին:

Վարդան, տեսնելով որ ապստամբական շարժումներ կը ծաւալին ամէն կողմ, եւ կարելի չէ՝ այլեւս ծածկել իրողութիւնը, ժողովի հրաւիրեց բոլոր մեծ նախարարները, սեպուհները, եկեղեցականները, եւ այդ ժողովին մէջ որոշեցին պաշտօնապէս դիմել Մարզպան Վասակին, եւ ստիպել զայն, որ առանց այլեւայլի գործի սկսին:

Վասակ վարանեցաւ պահ մը· բայց ստիպուեցաւ տեղի տալ· այնպէս որ հո՛ն, Վասակի ապարանքին մէջ, պաշտօնապէս յայտարարեցին իրենց քրիստոնէութիւնը, եւ նոր երդումներով եւ ուխտերով հռչակեցին իրենց հաւատամքը եւ կռուելու ծրագի-

րը, որոշեցին Բիւզանդիոն դիմել՝ ապահովելու համար Յունաց օգնութիւնը, եւ կնքեցին Երդման Աւետարանը՝ իւրաքանչիւրն իր կնքով, եւ աղօթքով վերջացուցին այդ խորհրդաւոր ժողովը:

Վարդանին առաջին գործը եղաւ բանակը Անգղէն փոխադրել Այրարատ գաւառը· որովհետեւ դաշնակից Աղուաններէն լուր եկաւ որ Միհրներսեհ անձամբ եկած է Փայտակարան, եւ գունդեր կը կազմէ՝ Աղուանից վրայէն յարձակելու համար Հայաստանի վրայ:

Վասակ ուզեց օգտուիլ առիթէն եւ առաջարկեց Վարդանին, որ շուտով դիմէ Աղուանք եւ հո՛ն լմընցընէ Պարսից գործը, առանց թողլու որ Հայաստան անցնին անոնք:

Ասիկա սակայն պարզ պատճառանք մըն էր· Վասակին բուն նպատակն էր շարժումը կասեցնել, եւ Վարդանը հեռացնելով, կոտրել բանակին ոյժը:

Վարդան առարկեց, ըսելով թէ ինքն պատրաստ է երթալ Աղուանք, բայց անկէ յառաջ պէտք է Բիւզանդիոն ղրկել պատգամաւորութիւն մը, համաձայն տրուած որոշման:

Վասակ դարձեալ ստիպուեցաւ համակերպիլ, եւ այսպէս պաշտօնական նամակներ գրուեցան Բիւզանդիոն, Յունաց կայսեր, եւ Յունաբաժին Հայաստանի Հայ նախարարներուն, նոյն իսկ Անտիոքի Սպարապետին, եւ այդ բոլոր նամակներ կնքուեցան Վասակին պաշտօնական կնքով:

Բիւզանդիոն ղրկուած պատգամաւորութեան անդամ նշանակուեցան Վահան Ամատունի, նոյն ինքն Վասակին անձնական հակառակորդը, եւ Սեպուհն Հմայեակ, Վարդանին եղբայրը եւ Մերհուժան Արծ-

րունի, Սուրբ Աղանին եղբայրը։

Երբ պատգամաւորութիւնը ճամբայ ելաւ, Վարդան ալ, իր հաւատարիմ Նախարարներով եւ անոնց գունդերով բռնեց Աղուանից ճամբան։

Վասակ վարպետօրէն Վարդանին ընկերացուց այն բոլոր Նախարարներն ու Սեպուհները, որոնց ամուր նկարագիրը ծանօթ էր իրեն, որպէս զի դժուարութիւններ չունենայ իր երկդիմի եւ անվստահելի խաղերը յառաջացնելու համար՝ իբրեւ Մարզման Հայոց Աշխարհին։

Եւ երբ Վարդան ճամբայ ելաւ դէպի Աղուանք, Պարսից գունդերուն դէմ, Վասակ անմիջապէս նամակներ գրեց Միհրներսեհին, եւ Պարսիկ բանակին ուրիշ զօրավարներուն եւ աւագանիին, թէ Վարդան թէեւ ձեր վրայ կուգայ, բայց դուք հոգ մի՛ ընէք. վասն զի Հայ բանակին կարեւոր մասը ես պահած եմ քովս, շատերն ալ ցրուած եմ աստին անդին, այնպէս որ Վարդան շատ քիչ մարդ ունի։

Վարդան հասաւ Աղուանք. Պարսիկ զօրավարներ լսեցին Հայոց ժամանումը, եւ անմիջապէս անցուցին իրենց գունդերը Կուր գետէն, եկան Խաղխաղ գիւղին մօտ, կտրելու համար Վարդանանց առաջքը։

Վարդան տեսաւ, որ սոսկալի բազմութեան մը առջեւ կը գտնուի։ Կայծակի արագութեամբ գործի սկսաւ, եռանդուն կազմեց իր սակաւաթիւ գունդերը, եւ խոյացաւ Պարսից բազմութեան վրայ, որոնք սկսան ետ դառնալ եւ փախչիլ Կուր գետին վրայէն։ Վարդանանք հալածեցին թշնամին, եւ Արշաւիր Կամսարական, որ ընտիր նետաձիգ մըն էր, գետամոյն ըրաւ շատ մը զօրավարներ եւ Նաւավարներ, երբ անոնք ճեպով խոյս կուտային Նաւակներու մէջ։

Աղուանից յաղթութիւնը շահեցան Վարդանանք, եւ չուտով անցնելով Կուր գետը, հասան Աղուանից եւ Հոնաց սահմանագլխին, եւ հոն պարիսպին դուռը պահող Պարսիկները սուրէ անցուցին, եւ պահակը յանձնեցին Աղուանից Թագաւորական տունէն Վահան անուն իշխանի մը։ Եւ այս Վահանին դեսպանութեամբ՝ Հոները եւ ուրիշ լեռնցի ցեղերը դաշինքով միացուցին իրարու, կռուելու համար ընդդէմ Պարսից։

Այս միջոցին, երբ Վարդանանք Աղուանից երկրին մէջ փառաւոր յաջողութիւններ ձեռք կը բերէին, Վասակ Հայաստանի մէջ ազատ կ'զգար ինքզինք, եւ իրեն գաղափարակից նախարարներով, կը դրժէր իր երդումն եւ ուխտը, եւ նամակներ գրելով Պարսից՝ կը դաշնակցէր անոնց հետ, եւ Հայ բերդերն ու ամրոցները կը պարպէր եւ Պարսից կը յանձնէր զանոնք, եւ Մամիկոնեան, Կամսարական եւ ուրիշ Վարդանի զինակից նախարարութեանց մանչ զաւակները առնելով անոնց դայեակներու ձեռքէն, փոխադրել կուտար Սիւնեաց բերդերը եւ անկից ալ կը ղրկէր Պարսից Դուռը։

Այս դաւաճանութեան լուրը արագ հասաւ Վարդանին։

Վարդանանք սաստիկ տրտմեցան, բայց չյուսահատեցան ամենեւին։ Երեսուն օրուան մէջ վերադարձան Այրարատ, ձմրան սկիզբը (450, Նոյեմբ.), Վարդան իր գունդերուն մէկ մասը արձակեց, որպէս զի երթան իրենց տուներուն մէջ անցընեն տօնական օրերը։ Իսկ ինքն իր մօտ մնացողներով՝ պաշարեց Սիւնեաց երկիրը եւ գրեթէ սովամահ ըրաւ զայն։

Աղուանից յաղթութեան տօնը՝ 451 Յունվար 6ի

Ծննդեան տօնին հետ տօնեցին Հայաստանի եկեղեցիները, հոգեւոր վերին իշխանութեան կարգադրութեամբ:

Վասակ ալ կը գործէր առանց յուսահատելու, որպէս զի ժողովուրդը ուծացնէ Վարդանէն, եւ սուտ սուտ խոստումներով եւ յոյսերով կը խաբալէր պարզամիտները՝ կարգ մը եկեղեցական գործիչներու միջոցաւ:

Ցազկերտի վրայ ալ շատ գէշ կ'ազդէ Վարդանին յաջողութիւնները Աղուանից երկրին մէջ, եւ այսպէս երկու կողմէն ալ կ'սպասեն, որպէս զի ձմեռն անցնի եւ գարնան պարզուի կացութիւնը:

## ԱՒԱՐԱՅՐԻ ՊԱՏԵՐԱԶՄԸ

Ա՛Լ ԳԱՐՈՒՆ է, 451ին գարունը:

Վարդանանք, մաս մը բանակեղտին մէջ եւ մեծ մասամբ ցրուած իրենց տուները, Մեծպահոց օրերը կ'անցընեն հոգեւոր եւ ռազմական պատրաստութիւններով, եւ գերագոյն ուրախութեամբ մը կը տօնեն Զատիկը, որ հանդիպեցաւ 451 Ապրիլ 8ին (Ահեկան 6):

Վարդան երբ տեղեկացաւ, թէ Պարսիկներ զօրք կը կեդրոնացնեն Հեր եւ Զարեւանդ գաւառին մէջ, փութով ի զէն կոչեց իրեն զինակից նախարարութիւնները:

Անմահութեան տենչով վառ հոգիներ դղրդեցան, եւ հրեշտակային արագութեամբ մը վաթսուն հազար Հայ կտրիճներ բոլորուեցան Քաջ Սպարապետին շուրջ:

Միհրներսեհ երբ իմացաւ Հայոց Սպարապետին պատրաստութիւնները, բանակը յանձնեց Մուշկան Նիսալաւուրտ եւ Դողրվճ զօրավարներուն, եւ ինքն փութաց Տիզբոն, անձամբ պատմելու Յազկերտին, ըստ Եղիշէի, իր իմաստուն կարգադրութիւնները եւ Վասակին խաբեբայութիւնները:

Վարդան՝ Պարսից դիրքը եւ զինուորական ոյժը լրտեսելու համար ընտրեց Ամատունեաց նախարարութենէն Սեպուհն Առանձարը, որ երեք հարիւր հեծեալներով գնաց Հեր եւ Զարեւանդ, տեսաւ, քննեց ամէն բան, եւ օգտուելով առիթէն՝ յարձակեցաւ Պարսից բանակին մէկ հզօր վերջապահ գունդին վրայ եւ սրէ անցուց զայն:

Քաջն Վարդան, ուրախ եւ հպարտ Առանձարի յաջողութեամբ, ուզեց յանկարծ իյնալ Պարսից բանակին վրայ նոյն անդ՝ Հեր եւ Զարեւանդի մէջ, որպէս զի առիթ չտայ Պարսիկ զինուորներուն Հայաստան մտնելու, սպաննելու, գերելու եւ այլեւայլ վնասներ հասցնելու:

Սակայն Պարսից զօրավարներ աւելի արագ շարժեցան, եւ շուտով հասան Արտազ գաւառը, եւ Աւարայր գիւղին մօտ ընտրեցին Տղմուտի դաշտը, որ «շրջափակ տեղ» մըն էր, այսինքն՝ ամէն կողմէ ապահով տեղ մը բանակ դնելու համար:

Վարդան ա՛լ չյապաղեցաւ Այրարատի մէջ, իր բանակը շարժեց դէպի Աւարայր, 451 Մայիս 25, Ուրբաթ օր, որպէս զի յանկարծակիի բերէ Պարսից բանակը, եւ մօտեցաւ թշնամւոյն դիրքերուն:

Օրը երեկոյացաւ պատերազմական պատրաստութիւններով:

Հո՛ն էր Հայաստանեայց եկեղեցւոյն պաշտօ-

Ծննդեան տօնին հետ տօնեցին Հայաստանի եկեղեցիները, հոգեւոր վերին իշխանութեան կարգադրութեամբ:

Վասակ ալ կը գործէր առանց յուսահատելու, որպէս զի ժողովուրդը ուծացնէ Վարդանէն, եւ սուտ սուտ խոստումներով եւ յոյսերով կը խարբալէր պարզամիտները՝ կարգ մը եկեղեցական գործիչներու միջոցաւ:

Ցազկերտի վրայ ալ շատ դէշ կ'ազդէ Վարդանին յաջողութիւնները Աղուանից երկրին մէջ, եւ այսպէս երկու կողմէն ալ կ'սպասեն, որպէս զի ձմեռն անցնի եւ գարնան պարզուի կացութիւնը:

## ԱՒԱՐԱՅՐԻ ՊԱՏԵՐԱՄԶԸ

Ա՛Լ ԳԱՐՈՒՆ է, 451ին գարունը:

Վարդանանք, մաս մը բանակեղտին մէջ եւ մեծ մասամբ ցրուած իրենց տուները, Մեծպահոց օրերը կ'անցընեն հոգեւոր եւ ռազմական պատրաստութիւններով, եւ գերագոյն ուրախութեամբ մը կը տօնեն Զատիկը, որ հանդիպեցաւ 451 Ապրիլ 8ին (Ահեկան 6):

Վարդան երբ տեղեկացաւ, թէ Պարսիկներ զօրք կը կեդրոնացնեն Հեր եւ Զարեւանդ գաւառին մէջ, փութով ի զէն կոչեց իրեն զինակից նախարարութիւնները:

Անմահութեան տենչով վառ հոգիներ դղրդեցան, եւ հրեշտակային արագութեամբ մը վաթսուն հազար Հայ կտրիճներ բոլորուեցան Քաջ Սպարապետին շուրջ:

Միհրներսեհ երբ իմացաւ Հայոց Սպարապետին պատրաստութիւնները, բանակը յանձնեց Մուշկան Նիսալաւուրտ եւ Դողըվճ զօրավարներուն, եւ ինքն փութաց Տիզբոն, անձամբ պատմելու Յազկերտին, ըստ Եղիշէի, իր իմաստուն կարգադրութիւնները եւ Վասակին խաբեբայութիւնները:

Վարդան՝ Պարսից դիրքը եւ զինուորական ոյժը լրտեսելու համար ընտրեց Ամատունեաց նախարարութենէն Սեպուհն Առանձարը, որ երեք հարիւր հեծեալներով գնաց Հեր եւ Զարեւանդ, տեսաւ, քննեց ամէն բան, եւ օգտուելով առիթէն՝ յարձակեցաւ Պարսից բանակին մէկ հզօր վերջապահ գնդին վրայ եւ սրէ անցուց զայն:

Քաջն Վարդան, ուրախ եւ հպարտ Առանձարի յաջողութեամբ, ուզեց յանկարծ իյնալ Պարսից բանակին վրայ նոյն տեղ՝ Հեր եւ Զարեւանդի մէջ, որպէս զի առիթ չտայ Պարսիկ զինուորներուն Հայաստան մտնելու, սպաննելու, գերելու եւ այլեւայլ վնասներ հասցնելու:

Սակայն Պարսից զօրավարներ աւելի արագ շարժեցան, եւ շուտով հասան Արտազ գաւառը, եւ Աւարայր գիւղին մօտ ընտրեցին Տղմուտի դաշտը, որ «շրջափակ տեղ» մըն էր, այսինքն՝ ամէն կողմէ ապահով տեղ մը բանակ դնելու համար:

Վարդան ա՛լ չյապաղեցաւ Այրարատի մէջ, իր բանակը շարժեց դէպի Աւարայր, 451 Մայիս 25, Ուրբաթ օր, որպէս զի յանկարծակիի բերէ Պարսից բանակը, եւ մօտեցաւ Թշնամւոյն դիրքերուն:

Օրը երեկոյացաւ պատերազմական պատրաստութիւններով:

Հո՛ն էր Հայաստանեայց եկեղեցւոյն պաշտօ-

նէութիւնը, գլխաւարութեամբ Յովսէփ Կաթողիկոսին։

Գիշերն ալ անցաւ հոգեւոր պատրաստութիւններով։

Բովանդակ բանակն աղօթեց զուարթօրէն եւ հաղորդուեցաւ։

Անկնունքներ մկրտուեցան եւ կնքուեցան։

Ղեւոնդ Երէց, այդ զարմանալի եկեղեցականը, իր մաքուր ներշնչումներով զօտեպնդեց ազատութեան զինուորները։

Քաջն Վարդան նահատակի մը պայծառատեսութեամբ խանդավառեց իր զինակիցները եւ իր արիական ոգւով զրահաւորեց զանոնք, յիշեցնելով քաջերու կեանքը եւ իր քաջութիւնները։ Բացատրեց անոնց անգամ մըն ալ այս պատերազմին նշանակութիւնը, որ բոլորովին տարբեր է մինչեւ այդ վայրկեան իրենց մղած պատերազմներու նշանակութենէն։ Առաջին պատերազմը Հայաստանի խղճմտանքին ազատութեան համար։

Գիշեր կը լուսնայ յուշիկ յուշիկ։

Արեւծագի պահն է, որ կը կարմրի վարդագոյն, 451 Մայիս 26, Շաբաթ օրուան խորհրդով։

Վարդան արդէն կազմած կերտած է իր բանակին ճակատը։ Ուխտապահներու ամէնէն քաջ եւ կարող զօրականներ, պատրաստ իրենց գունդերու գլխին, կ՚սպասեն յարձակման նշանին։

Եւ կը յարձակի՜ն....։

Սաստի՛կ է բախումը։

Վարդան, որ ըստ Փարպեցւոյ, կը հրամայէր Հայ բանակին ձախ թեւին, ինկաւ Պարսից Մատեան գնդին վրայ. որովհետեւ այդ գունդին հետ էին

նաեւ Վասակ եւ իրեն կուսակից ուխտադրուժներ։

Պարսից սարսափելի եւ անհամեմատօրէն ըստուար բանակին առջեւ տկարացաւ Հայ բանակը։ Բայց Հայոց տուած հարուածը շատ սաստիկ եղաւ։

Տղմուտի ափերուն վրայ ինկաւ Քաջն Վարդան։

Վարդանանց ընդհանուր կորուստն եղաւ 1036 հոգի։

Իսկ Պարսից կողմէն ինկած էին 3544 հոգի, որոնց մէջ անշուշտ բազմութիւն մը Վասակեաններէն։

Եւ այս թիւերը ցոյց կուտան, թէ Վարդանանք կռուած են դիւցազնօրէն։ Եւ Քաջն Վարդան, Զօրագլուխը այդ առաքինեաց, նախճիրներու սարսափելին գործեց Մառեան գունդին մէջ։

## ՎԱՐԴԱՆԻՆ ԱՐԺԱՆԻՔԸ

ՎԱՐԴԱՆԻՆ արժանիքը շատ բարձր է ըստ ինքեան, ինչպէս նաեւ համեմատելով զայն Վասակի հետ։

Վասակ շատ կարող անձնաւորութիւն մըն էր։ Վասակ օժտուած էր մտքի մեծ մեծ կարողութիւններով։ Պատանութենէն ցոյց տուաւ անկախ, փառասէր, յանդուգն իշխանի մը բոլոր յատկութիւնները։

Երիտասարդութեան ատեն մեծապէս օժանդակեց Ս. Մեսրոպի դրական եւ առաքելական գործունէութեան։

Իր վարած բարձր պաշտօններն ալ ցոյց կուտան, թէ Վասակ թանկագին կարողութիւններով օժտուած Հայ մըն էր։ Վասակ ո՛չ միայն Սիւնեաց

*Նախարարութեան Տանուտէր եւ Իշխան եղաւ, այլ եւ Մարզպան եղաւ նախ Վրաստանի, եւ յետոյ Հայաստանի։*

*Բայց... Վասակ Տանուտէր եղաւ Սիւնեաց Նախարարութեան՝ սպաննել տալով իր հօրեղբայր Վաղենակ Իշխանը, որպէս զի օր առաջ յագուրդ տայ իր փառասիրական ձգտումներուն։*

*Իսկ Վարդանանց շարժման մէջ նենգեց եւ դաւեց Ազգային Դատին, որովհետեւ կ'ուզէր Պարսից հաճելի ըլլալ,* ամէն գնով, *Հայաստանի Թագին ի տենչ....։*

*Ինչպէս կ'երեւի, Վասակ քանի՛ յաջողեցաւ իր ասպարէզներուն եւ ձեռնարկներուն մէջ, այնքան չփացաւ, եւ ա՛լ վարպետ* փօլիթ-fnu *մը եղաւ, որուն համար այլ եւս նշանակութիւն չունէին բարոյական արժէքներ։*

*Իր նկարագիրը բացարձակապէս անվստահելի էր։ Եւ ասիկայ ցոյց տուաւ ամէն անգամ, որ երկդիմի ընթացքի մը հետեւեցաւ եւ վերջապէս, ա՛լ ճարահատ, անցաւ Պարսից կողմը, դաւաճանելով Ազգային կամքին դէմ, իր ուխտին դէմ, եւ մտնելով բազմաթիւ քաջերու եւ ամեղներու արեան։*

*Վասն զի, եթէ Վասակ հաւատարիմ մնար իր ուխտին, եւ իր բոլոր ոյժերը եւ կարողութիւնները Վարդանի պէս նուիրէր Ազգային Դատին, վըստահ եմ որ Աւարայրի պատերազմը կատարեալ յաղթանակ մը պիտի ըլլար։ Եւ ի՛նչ որ Վահան Մամիկոնեան տարիներ ետքը յաջողեցաւ ձեռք բերել, իբրեւ սպակ Վարդանանց դատին, Հայաստան պիտի վայելէր նոյն ազատութիւնը, եւ թերեւս աւելին ալ, Աւարայրի պատերազմէն անմիջապէս ետքը։*

Այս կէտը շատ կարեւոր է, եւ պէտք է մտահան չընել զայն՝ Վարդանի եւ Վասակի վրայ խօսելու ատեն:

Քաջն Վարդանի արժանիքը քանիցս չեշտուեցաւ Տիզբոնի դատավարութեան մէջ:

Յազկերտ եւ իր աւագանին խորապէս զգացին Քաջն Վարդանին ի զո՛ւր կորուստը:

Միհրներսեհ, իր բոլոր դառնութիւնը թափեց Հայ եկեղեցականութեան վրայ, յայտարարելով․

— Սպաննեցիք մոգերը, ձեր կախարդութեամբ կորուսիք Վարդանի պէս քաջ մարդ մը, որ օգտակար էր Շահին․ եւ շատ Պարսիկներ եւ զօրագլուխներ կը յիշեն անոր մեծ մեծ գործերը եւ ծառայութիւնները, զորս նա ըրաւ Պարսկաստանի․ անոր քաջասրտութիւնը նոյն ինքն Շահն անձամբ տեսաւ ի Մարվիռոտ: Շատ քիչ մարդիկ կան Պարսկաստանի մէջ, որ կրնան անոր անձին եւ գործին արժանիքը ի վեր հանել, եւ դուք պատճառ եղաք այնպիսի մարդու մը կորստեան:

Իսկ Յազկերտ գայրոյթով կշտամբեց Վասակը, ըսելով անոր երեսն ի վեր․

— Դուն երդումներով խաբեցիր մեր այնպիսի պիտանի, վաստակաւորը, զՔաջն Վարդան, Կայսեր եւ անոր Սպարապետին նամակներ գրեցիր, զայն նենգով ղրկեցիր Աղուանից երկիրը Պարսիկ զօրքերու վրայ, եւ պատճառ եղար իմ Պարսիկ եւ ոչ–Պարսիկ մարդոց կոտորածին: Որովհետեւ այդ մեր Վարդանը, եթէ Յունաց Կայսրը կամ Հոնաց թագաւորը բռնութեամբ ուզէին առնել իմ ձեռքէս, Պարսկաստանի բոլոր ուժով կը կռուէի եւ հանգիստ չէի թողուր, մինչեւ որ նորէն ձեռք չբերէի զայն:

*Եւ դո՛ւն այսպիսի ծառայ մը քու ձեռքովդ սպաննեցիր եւ Հայաստանի պէս պիտանի աշխարհի մը կորստեան պատճառ եղար, եւ հիմայ ալ լրբաբար յանդգնիր ես գալ մեզ տեսնելու, իբրեւ թէ չենք գիտեր նենգաւոր գործերդ։*

*Բայց պէտք է գիտնաս, որ այլ եւս Սիւնեաց Տէր չես դուն, եւ այն բոլոր չարիքները, զոր մըտածեցիր եւ գործադրեցիր, պիտի կուտուին քու չար գլխուդ վրայ*։ (Ղ. Փարպ. էջ 260–61. եւ 280–82)։

*Այս գնահատումները պաշտօնական են, եւ պաշտօնական ըլլալով հանդերձ բոլորովին կը համապատասխանեն այն իրական եւ արիական յայտարարութիւններուն,զորս Քաջն Վարդան անձամբ ըրած էր Յազկերտի առջեւ, երբ բռնադատուեցաւ կեղծուրացութեան.*

## ՋՈՒԳԱԿՇԻՌ ՔԱՋՆ ՎԱՐԴԱՆԻ ԵՒ ՎԱՏՆ ՎԱՍԱԿԻ

ՎԱՐԴԱՆ *բաց ճակատով գործեց։ Վասակ նենգամտութեամբ սողոսկեցաւ։ Վարդան հաւատարիմ էր առաջադրուած դատին, Վասակ իր փառքին իրականացումը կ'երազէր հոն։ Վարդան հասկցուած էր ուխտապահներէն, Վասակ իր դարձուածներուն մէջ կը լկուէր։ Վարդան Աւետարանի հանդէպ կը պատկառէր, Վասակ ատրուշան կը բոցավառէր։ Վարդան կ'անսար հանրութեան ձայնին, Վասակ իր տենչին միայն կը ձգտէր։ Վարդան Հայոց աշխարհին փառքը կը տենչար, Վասակ անոր թագին սեւեռուած էր։ Վարդան կը յարգէր Մարզպանին առաջարկները, իբրեւ երկրի մեծին,*

*իսկ սա կը դաւէր Սպարապետին։ Վարդան ողջախորհուրդ մըն է, Վասակ չարախորհուրդ։ Վարդան կը քաջալերէ, Վասակ վարանքով կը մխայ։ Վարդան Արտազի մէջ կը շահատակէ, Վասակ Արտաշիրի փիղերուն ետեւ կը խորասուզի։ Վարդան բանակ կը շարժէ, Վասակ հրամանի տակ կը խըլըրտի։ Վարդան կը նահատակուի հանրութեան համա՛ր, Վասակ իր փառատենչիկ պատրանքը կը լուծէ։ Վարդան կարմրած է պատերազմի դաշտին մէջ, ժողովրդեան սրտին մէջ. Վասակ Տիզբոնի զընդանին մէջ դառն արցունք կը թափէ. Վարդան արիացած է իր* տկարացումէն. *Վասակ ուրացած կը մեռնի։ Վարդան յարացոյց եղած է զգացումի, քաջութեան, Վասակի բարձր կարողութիւնները մթագնած են արհամարհանքի տարափին տակ։ Վարդան ամէն սրտի մէջ դրոշմուած է, Վասակի գերեզմանին տեղն իսկ չերեւցաւ։ Վարդան «նորահրաշ պըսակաւոր» մըն է, սուրբ մըն է, Վասակի յիշատակըն իսկ չեղաւ «առաջի սուրբ սեղանոյն»։ Վարդան անմա՛հ է, Վասակը կը կշտամբուի։*

*Վարդանէն յետոյ Վահան մը, Վասակէն յետոյ Գդիհոն մը։ Եկեղեցի՛ն է յաղթապանծը, իսկ քանդումը՝ մոխրանոցներուն։ Ազգն տեսակ մը ինքնութիւն կը չնչէ. սիլիքոր մոգացածներ սմքած են ինքնին։*

*ՔԱՋը գծեց յաղթանակի այս հիմը իր «Վարդագոյն արեամբ»։*

*Արշակունեաց ծիրանիին տեղ իր կեանքի ծիրանին ծաւալեց։*

*Գարունը նախանձեցաւ իր երանգներով՝ այդ* Կարմիրին։

*Դարեր կը պանծան* 'ի Կարմիրն Վարդան» (ԵՂԻՇԷ, ՔՆՆԿՆ. ՈւսմՆ. Էջ 392–94)։

# ՎԱՐԴԱՆԱՆՑ ՊԱՏԵՐԱԶՄԸ ԸՍՏ ԵՂԻՇԷԻ

(«Ազգ», 1917 Փետր. 22–Մարտ 29)

## *ՆԱԽԵՐԳԱՆՔ*

ՎԱՐԴԱՆԱՆՑ *պատերազմին պատմական աղբիւրներն են* ԵՂԻՇԷ *եւ* ՂԱԶԱՐ ՓԱՐՊԵՑԻ:

*Եղիշէ, գրած է միայն Վարդանանց Պատերազմին պատմութիւնը, վերածելով զայն դիւցազներգութեան մը, որպէս զի ընթերցումն ըլլայ հաճելի, ազդու եւ հետեւաբար խանդավառող: Եղիշէ այնքան յաջողած է դրելու այս ոճին մէջ, որ* մեղրածորան *կոչուած է: Եւ ստուգիւ Եղիշէի պատմութիւնը՝ Հայ ազգին մէջ կարդացուած է անյագաբար, եւ այս պատճառաւ արժանացած է բազմաթիւ տպագրութիւններու: Սուրբ Գիրքէն ետքը ամէնէն շատ եւ զանազան ձեւով հրատարակեալ գիրքերէն է Եղիշէ, որ օտար լեզուներու ալ թարգմանուած է:*

*Իսկ Ղ. Փարպեցի՝ զուտ պատմական ոճով գըրած է իր պատմութիւնը, որ կը բովանդակէ Արշակունեաց Թագաւորութեան անկումը, Հայերէն գիրերու գիւտը, Վարդանանց եւ Վահանեանց պատերազմներուն նկարագրութիւնները: Ղ. Փարպեցին ոճով դիւրահասկնալի, խիտ եւ այնքան գեղեցիկ է, որ հեղինակը այս պատճառաւ կոչուած է* ճարտասան: *Ճաշակի տէր հայ մը՝ պիտի չուզէր ձեռքէ ձգել նախնեաց մատենագրութեան այս գոհարը:*

Հայ պատմութեանց շարքին մէջ՝ Ղ. Փարպեցի իրմէ յառաջ երկու պատմագիր միայն կը ճանչնայ, Ագաթանգեղոս եւ Փ. Բիւզանդ, ինչպէս նաեւ Ս. Մեսրոպին կենսագրութիւնը՝ Սքանչելի Կորիւնի գրչէն:

Քննադատութեան առջեւ խնդիր է, թէ Եղիշէ եւ թէ Ղ. Փարպեցի ի՞նչ յարաբերութիւն ունին իրարու հետ. այսինքն՝ Վարդանանց Պատերազմին վրայ գրող այս երկու հեղինակներ տեսա՞ծ են իրարու գործերը, օգտուա՞ծ են իրարմէ, թէ անկախաբար գրած են: Դարձեալ, աւելի վերջին ժամանակներու պատմագիրները (Թովմաս Արծրունի եւ Յովհան Կթղս.) այնպիսի տեղեկութիւններ կուտան Վարդանանց Պատերազմին վերաբերութեամբ, որ չեն գտնուիր ո՛չ Եղիշէի եւ ո՛չ ալ Փարպեցիի գիրքերուն մէջ: Ո՞վ է ասոնց աղբիւրը: Մեղրածորանէն եւ Ճարտասանէն յառաջ կորսուած ուրիշ պատմութի՞ւն մըն է, եթէ ոչ ժողովրդեան մէջ պահուած աւանդութիւն մը:

Եթէ Արծրունեանց պատմիչ Թովմային հաւատանք, պէտք է ընդունիլ՝ որ Եղիշէի Պատմութիւնը պակասաւոր է. որովհետեւ Բարծումա անուն սորի մը՝ նենգով ձեռք բերած է Եղիշէի գիրքը, եւ ատոր մէջէն կտրեր հաներ է Արծրունեանց վերաբերեալ մասերը: Այս տեղեկութիւնը վստահելի չէ. բայց ստոյգ է, որ Եղիշէին գրած պատմութիւնը, որ եօթը գլուխներէ (յեղանակ) պիտի բաղկանար, եւ ասոնցմէ դուրս (արտաքոյ) Ութերորդ մըն ալ ունի, այլ նաեւ պատմագիրը այդ Ութերորդ գլխին վերջերը եւ Հայոց աշխարհի փափկասուն տիկնանց մասին գրուած հիանալի դրուագէն յա-

*ռաջ՝ կ'ըսէ*, «Բայց ի տեղի այսր ինձ դարձեալ գալ պիտի»: *Այս խոստումը կամ առաջադրութիւնը սակայն չէր գործադրուած*:

*Ձենք գիտեր թէ ապագայ հետազօտութիւններ ի՞նչ լոյսեր պիտի կրնան սփռել Վարդանանց Պատերազմին պատմական աղբիւրներուն վրայ, բայց գիտենք թէ Վարդանանց Պատերազմին չափ հետաքրքրակա՛ն են նաեւ Եղիշէի պատմութեան շուրջ յուզուած բանասիրական եւ քննադատական կրթիչ խնդիրներ*:

*Այսչափ արագ ակնարկով մը հետաքրքրելէ ետքը ընթերցողներս, Վարդանանց պատմութեան մասին, կը խնդրեմ, որ մաքուր հայու սրտով ու սիրով հետեւին ինձ, որպէսզի շուտ անցնինք միասին Եղիշէի եւ Փարպեցիի պատկերացուցած տեսարաններու առջեւէն, դիտելով միայն խոշոր եւ ընդհանուր գիծերը Շաւարշանի Մեծ Պատերազմին, զոր Վարդանանք սկսան եւ Վահանեանք վերջացուցին*, 451*էն մինչեւ* 485*ի ակիզբները*:

## ԱՌԱՋԻՆ ՑԵՂԱՆԱԿ

*Արշակունեաց փառաւոր թագաւորութիւնը վերջացած, սուգ է պահեր հայ արքունիքը: Հայ Նախարարներ, ժամանակին այդ «գործիչները», յաջողեր էին իրենց ներքին կռիւներով դիւրացընել Հայաստանի բաժանման ծրագիրը Պարսից եւ Յունաց միջեւ: Բայց Հայ Ազգը ներքին ոյժ մը ստեղծած էր Ս. Սահակի եւ Ս. Մեսրոպի անհամեմատելի ազգասիրութեան շնորհիւ: Հայաստանեայց Եկեղեցին իրօք հայացած, զօրացած, ամրոց մը եղած էր թագակորոյս եւ բաժանեալ Հայութեան հա–*

մար։ Շահնշահերու կառավարութիւնը քաջալերած էր այդ հոյակապ երեւոյթը. այս է պատճառը «աստուածպաշտութիւնն բարձրագլուխ կամակարութեամբ երեւելի լինէր յաշխարհին Հայոց»։

Յազկերտ Բ.ի ատեն քաղաքականութիւնը կը փոխուի։ Բուն Պարսկաստանի մէջ եւ դուրսը՝ քրիստոնէութեան ծաւալումն ու պայծառացումը անհանգիստ կ՚ընէին մոգերը։ Հեռաւոր մարզերու մէջ քաղաքական խլրտումներ վտանգ կ՚սպառնան։ Յազկերտ կը շարժի։ «Արջք օրհասականք ընդ վախճանել շնչոյն հզօրագոյնս կռուին»։ Բոլոր հպատակ ազգեր ու ցեղեր, ամէնքն ալ «հաւատացեալք ի մի կաթողիկէ առաքելական եկեղեցի», կը կոչուին զէնքի տակ։ Ամէնքն ալ անմեղութեամբ կը վազեն կատարել իրենց հաւատարիմ քաղաքացիի պարտականութիւնները։ Յազկերտին առաջին յարձակումը Քուշանանց վրայ, յաջողութեամբ պսակուեցաւ երկարամեայ կռիւէ մը ետքը։ Այս յաջողութիւնը հպարտացուց զՅազկերտ։ Ուզեց նախատել Քրիստոսը՝ ծաղրելով Աւետարանի պատմութիւնը Փրկչին հրաշալի կեանքի մասին։

Եռանդուն, երիտասարդ նախարար մը, Գարեգին, համարձակեցաւ դիտել տալ Յազկերտին իր տգիտութիւնը։ Շահնշահը բռնկեցաւ Բաբելոնի հնոցին պէս եւ իր բոլոր թոյնը թափեց յանդուգն հաւատացեալին վրայ։ Երկու տարի բանտի մատնուեցաւ, շնորհազուրկ եւ տանջանքներու մէջ նահատակուեցաւ արի նախարարը։

Արիւնոտ նշանը տրուած էր։

## ԵՐԿՐՈՐԴ ՑԵՂԱՆԱԿ

*Եւ տրուած նշանին նշաւակ եղած էր հայ բանակը մանաւորապէս․ որովհետեւ բոլոր ազգերէն աւելի Հայեր եւ այն ալ նախարարազունք կը զայրացնէին Բռնակալը իրենց ջերմագոյն աստուածպաշտութեամբ։ Պատիւ, գահ, կահ՝ չկրցան հրապուրել հայ-քրիստոնեայն։ Զթուլցան երկնաւոր առաքինութեան մէջ։ Գիտէին եւ կը նախատեսէին ապագան։ Մահէն չէին վախնար․ որովհետեւ գիտէին մեռնիլ։ Կոյրեր չէին, որոնք զուրկ են արեւի ճառագայթներէն․ ունեւր էին կատարեալ կեանքի գիտութիւնը։ Հոգեկան, գաղափարային արժէքներ ամէն ինչ էր այս պատուական Հայոց համար։ Աշխարհի հարստութեններէն չէին հրապուրուեր, Բռնապետի սպառնալիքներէն չէին սասաներ։*

*Ցազկերտ մերթ կը շանթէր, կը գալարէր թունաւոր օձի պէս, մերթ կատղած առիւծի պէս կը գոռար, հոգիի եւ մտքի տագնապներու մէջ, վերջապէս երբեմն անուշութեամբ եւ երբեմն խստութեամբ՝ պաշտօնական կոչն ուղղուեցաւ Քրիստոնեաներուն։ Բանակի ծառայութեան մէջ անտանելի եղաւ սաոնց ինկած բաժինը․ ռոճիկներ ու թոշակներ կրճատուեցան․ երկար չտեւեց, հայ զինուորութեան գեղեցկութիւնը անչքացաւ․* «Այնպիսի պատուական զինուորութիւն հասեալ էր ի չարաչուք անարգութիւն, եւ հայրենի ազատութիւնն չարաչար կայր ի ծառայութեան մարդախոշոշ բռնաւորին»։ *Վաստակ, ծառայութիւն, կաթնեղբայրութիւն, եւ ո՛չ մէկ նիւթական եւ բարոյական կապ եւ յարգ ա՛լ չէր յիշուեր։ Երբ բանակի մէջ հայ զօրութիւնը*

*այսպէս կը ճզմուէր, անդին Դենշապուհ Հայաստան կը հանէր եւ հարկի ու պարտքի տակ կը ճմլէր երկիրը, նոյն իսկ կը բռնաբարէր եկեղեցւոյ ազատութիւնը՝ հարկատու ընելով զայն, որպէս զի Հայեր՝ ստիպուին իրենց հաւատքի գնով ստանալ իրենց ազատութիւնը:* — «Ոչ ըստ արքունի արժանաւորութեանն առնուին, այլ հինաբար յափշտակելով, մինչեւ ինքեանք իսկ մեծապէս զարմանային, թէ ուստի այս ամենայն գանձ ելանէ, զիա՞րդ շէն կայցէ աշխարհին»:

*Այսպիսի բռնի միջոցներ ապարդիւն կը մնան: Պաշտօնական հրովարտակ կը գրուի Յազկերտի անունով, Միհրներսեհի կողմէն, որ շատ խելացի Եպարքոս մըն էր եւ հրամանատար Յազկերտի բանակին:*

*Հրովարտակը կը պարզէ Դենիմազդէզի դաւանանքը, որ հին Զրադաշտութեան խաթարուած մէկ նոր դրութիւնն էր, կը վերջանար մեղադրանքով մը ընդդէմ Քրիստոնէութեան:*

*Հայաստանի երկու մեծ ջահերը հազիւ տաս տարիներէ ի վեր շիջած էին յանձին Մեծացն Սահակայ եւ Մեսրոպայ: Հայաստանի քաջ զաւակները օտարութեան մէջ, բանակի դժուարին գործերու մէջ քամուած էին: Բայց կենդանի՛ էր մեծ Թարգմանիչներուն հիմնած ու հաստատած գործը: Անոնց հաւատարիմ եւ ուշիմ աշակերտները՝ Յովսէփ Կաթողիկոսի գլխաւորութեամբ, կազմեցին Արտաշատու պատմական ժողովը: Գիտութեամբ, քրիստոնէական խորին հաւատքով, պաշտօնական հիանալի պաղարինով եւ վճռականութեամբ պատասխանեցին Միհրներսեհի:.*

*Ուշադրութի՛ւն: Երկրպագելի է այս պատկերը: Բնաշխարհի մնացած ոյժը համախմբուած է հազիւ յիսուն տարիէ ի վեր հայացած, ազգայնացած Մայրենի Եկեղեցւոյ հովանոյն տակ: Հայը իր ամբողջին մէջ ապահով, կարգապահ, լուրջ, կը խորհի, կը գործէ, կը վճռէ, կը պատասխանէ, եւ պատրաստ է վաղուան համար...:*

*Կազմ ու պատրաստ են ամէն պատահականութեան առջեւ.* — «Ի քէն տանջանք, եւ ի մէնջ յանձնառութիւնք. սուր քո եւ պարանոցք մեր: Ջեմք ինչ լաւ մեք քան զառաջինսն, որ յայսր վկայութեան վերայ եդին զինչս եւ զստացուածս եւ զմարմինս իւրեանց»

*Այս քաջ եւ կտրուկ խօսքեր զայրոյթ կը գրգռեն Տիզբոնի մէջ: Հայաստանի մէջ մնացած նախարարներուն նշանաւորներն ալ կը կանչուին դուռը, անարգ ընդունելութիւն կ'ըլլայ անոնց, վաղեմի սովորութիւններ եւ պաշտօնական արարողութիւններ չեն կատարուիր: Արդար բողոքը կը բարձրացնեն Հայեր, ցոյց տալով իրենց հաւատարմութիւնը, ծառայութիւնը Շապհոյ ժամանակներէն ի վեր: Աւելի եւս կը բորբոքի Յազկերտ, չուզեր լսել հաւատարմութեան ձայնը, վնաս կը համարի Հայոց վաստակներն ու ծառայութիւնները. կը բռնադատէ կրօնափոխ ըլլալու:*

*Շահնշահի ներքին խորհրդակիցներէն մէկին թելադրութեամբ Հայեր կը հաւանին առ երեւս: Փառքեր պատիւներ կը շռայլուին, Դուռը ցնծութեան մէջ է. եօթը հարիւր մոգեր հրահանգ կ'ստանան ճամբորդելու դէպի Հայաստան՝ առ երեւս ուրացեալնե-*

րուն հետ։ Դենեմազդեղի ուսուցիչները ուրախ են այս նոր դաշտի ճամբուն վրայ, իրենց մէջ բայ բաժին կ'ընեն Հայոց աշխարհը։

## ԵՐՐՈՐԴ ՑԵՂԱՆԱԿ

Հայաստանի Հայերը չեն կրնար ըմբռնել թէ ի՛նչ պատահեր է, որ իրենց մեծերն ու առաջնորդները բռնադատուեր են համակերպիլ ուրացման։ Ուրի՛ն է յուզումը, սաստի՛կ՝ մեղադրանքը։ Կարծես յուսահատեր են բոլորովին։ Գաղտնիքը չէին ուզեր յայտնել, բայց անհնար էր լռելն ալ։ Հեղձամղձուկ եղած արցունք կը թափեն։

Այս վիճակը անտանելի էր, չէր կրնար տեւել. զօրքին մէջ գտնուող քահանաներ անմիջապէս կը վազեն կը ցրուին Հայ ժողովուրդին մէջ, խելամուտ կ'ընեն իրողութեան։ Բոլոր հաւատարիմներ ոտքի կ'ելնեն։ Ուրացութեան նախատինքը պէտք էր սրբուիլ. որո՛նք ալ ըլլային ուրացողները, պէտք էին մեռնիլ։ Աստուածային օրէնքը հռչակուեցաւ տիրող։ Ամէն յանցաւոր անով պիտի գտնէր իր պատիժը։

Այս միջոցին Հայոց գունդը եւ մոգեր եկած հասած են Անգղ գիւղաքաղաքը։ Մոգեր ամէն կերպով պատրաստուած են գործի։ Սուրբն Ղեւոնդ, այդ հիւանդոտ, բայց սրտոտ երէցը, հմտութեան եւ մաքուր հայրենասիրութեան այդ մարմնացումը, անգործ չէր կեցած։ Կիրակի օր մըն էր։ Հայոց եկեղեցւոյն դռները պիտի խորտակէին մոգեր։ Ղեւոնդ երէց իր խորհրդակիցներով ու ժողովուրդով դիմագրաւեց այդ խոշոր եւ բիրտ ոյժը. քարերով մի-

*այն կը վռնտեն Թշնամին եւ կը բանան եկեղեցին աստուածային պաշտամունքը կատարելու համար։*

*Այս հարուածը այնքան սաստիկ եղաւ եւ այնքան անակնկալ, որ մոգպետն յայտարարեց.* եթէ նոյն իսկ աստուածներ օգնութեան հասնին, կարելի չէ որ մոգութիւնը Հայոց մէջ հաստատուի։ Այս Հայերը ո՛չ շղթայէն կը վախնան, ո՛չ ալ տանջանքէն։ Ո՞վ կրնայ դէմ դնել ասոնց։

*Մարզպանն Վասակ կը ջանայ հանդարտեցնել մոգպետին յուզումը եւ կազդուրել անոր յուսահատութիւնը։ Այնքան ճարպիկ էր Վասակ, որ «յիմարեցոյց եւ ափշեցոյց զմիտս մոգպետին»։*

*Ճար մը պէտք էր գտնել։ Բոլոր Եպիսկոպոսներ կը դիմեն Սպարապետին, Վարդան Մամիկոնեանի ապարանքը, եւ կը ստիպեն գործի գլուխ անցնիլ։ Վարդան կը հաւանի, եւ առաջին գործը կ՚ըլլայ Վասակին կալանաւորումը, որ ազատելու համար մահուանէ, գրաւոր եւ բերանացի երդումներ կ՚ընէ։ Գիտնալով հանդերձ անոր կեղծաւորութիւնը՝ Թող կուտան զայն։*

*Նոր ուխտով եւ սիրով կը միանան իրարու.—* «Քանզի Հայր մեր՝ զՍուրբ Աւետարանն գիտեմք եւ Մայր՝ զԱռաքելական Եկեղեցի Կաթողիկէ. *մի՛ ոք չար անջրպետ ի մէջ անկեալ՝ զմեզ քակեսցէ ի սըմանէ»։*

*Այս ուխտն ու սէրը կը հաւասարեցնէ հաւատարիմները. ծառայ եւ տէր, փափկացեալ ազատն ու վշտացեալ գեղջուկը, այր ու կին, ծեր եւ տղայ, ամէնքն ալ մէկ սիրտ էին, մէկ զինուորութիւն գիտէին։ Անոնց միակ նպատակն էր* «Քաջութեամբ միայն մեռանիլ»։ *Ամէն Հայ՝ զինուոր կտրած էր։*

Ամէն կողմ յաջողութիւն կը գտնէին թէ՛ կանոնաւոր Հայ գունդեր եւ թէ՛ անկանոն Հայ զօրքեր կը կըռուէին։ Կարծես հրաշքով կ'իյնային բերդեր։ Բընութիւնն իսկ կարծես սքանչելի ժպիտ մը կ'արտայայտէր այս յաջողութիւններուն հանդէպ։— «Սոյնպէս եւ աստեղք ի յերկինս երեւէին յոյժ լուսալիր պայծառացեալ, զոր ոչ ունէին յառաջին բնութեանն»։

Այս միջոցին Աղուանք օգնութիւն կը խնդրէին Հայոցմէ. Բայց Վարդան հոն կը վազէ։ Վասակ կ'օգտուի սպարապետին բացակայութենէն, իր կողմը կ'առնէ Թուլահաւատ նախարարները. շուտով լուր կը ղրկէ Պարսից բանակին, որպէս զի դիմաւորեն Վարդանը։ Սեբուխտ իր մեծ բանակով կը հանդիպի Վարդանին՝ Կրաց սահմաններուն վրայ։ Մամիկոնեան զօրավարը եւ Արշաւիր Արշարունի յանկարծակիի կը բերեն Սեբուխտը եւ մեծ մեծ յաջողութիւններ կ'ունենան։

Վարդանի բացակայութեան միջոցին Վասակ հանդարտ չէր նստած։ Շարք մը նշանաւոր բերդեր գրաւած էր, եկեղեցիները կողոպտած եւ տուներ քանդած։ Վարդան շուտով վերադարձաւ Հայաստան՝ այս գոյժն առնելէ ետքը։ Վասակ գիշերանց խոյս կուտայ, երբ կը լսէ Վարդանին վերադարձը եւ կ'երթայ Սիւնեաց բերդերուն մէջ ապաստան գտնելու։ Վարդան կը յարձակի Սիւնեաց գաւառին վըրայ, սաստիկ կը նեղէ զայն եւ կ'աւերէ ու կ'աւարէ։ Սարսափելի՛ հարուած։

Յազկերտ լսելով Հայաստանի ներքին քայքայումը, մեղմացաւ, եւ պահ մը Թուլցուց հալածանքը եւ ազատ Թողուց քրիստոնէութիւնը։ Յազկեր-

*այն կը վռնտեն Թշնամին եւ կը բանան եկեղեցին աստուածային պաշտամունքը կատարելու համար:*

*Այս հարուածը այնքան սաստիկ եղաւ եւ այնքան անակնկալ, որ մոգպետն յայտարարեց.* Եթէ նոյն ինքն աստուածներ օգնութեան հասնին, կարելի չէ որ մոգութիւնը Հայոց մէջ հաստատուի: Այս Հայերը ո՛չ շղթայէն կը վախնան, ո՛չ ալ տանջանքէն: Ո՞վ կրնայ դէմ դնել ասոնց:

*Մարզպանն Վասակ կը ջանայ հանդարտեցնել մոգպետին յուզումը եւ կազդուրել անոր յուսահատութիւնը: Այնքան ճարպիկ էր Վասակ, որ «յիմարեցոյց եւ ափշեցոյց զմիտս մոգպետին»:*

*Ճար մը պէտք էր գտնել: Բոլոր Եպիսկոպոսներ կը դիմեն Սպարապետին, Վարդան Մամիկոնեանի ապարանքը, եւ կը ստիպեն գործի գլուխ անցնիլ: Վարդան կը հաւանի, եւ առաջին գործը կ'ըլլայ Վասակին կալանաւորումը, որ ազատելու համար մահուանէ, գրաւոր եւ բերանացի երդումներ կ'ընէ: Գիտնալով հանդերձ անոր կեղծաւորութիւնը՝ Թող կուտան զայն:*

*Նոր ուխտով եւ սիրով կը միանան իրարու.—* «Քանզի Հայր մեր՝ զՍուրբ Աւետարանն գիտեմք եւ Մայր՝ զԱռաքելական Եկեղեցի Կաթողիկէ. *մի՛ ոք չար անջրպետ ի մէջ անկեալ՝ զմեզ քակեսցէ ի սըմանէ»:*

*Այս ուխտն ու սէրը կը հաւասարեցնէ հաւատարիմները. ծառայ եւ տէր, փափկացեալ ազատն ու վշտացեալ գեղջուկը, այր ու կին, ծեր եւ տղայ, ամէնքն ալ մէկ սիրտ էին, մէկ զինուորութիւն գիտէին: Անոնց միակ նպատակն էր* «Քաջութեամբ միայն մեռանիլ»: *Ամէն Հայ՝ զինուոր կտրած էր:*

Ամէն կողմ յաջողութիւն կը գտնէին թէ՛ կանոնաւոր Հայ գունդեր եւ թէ՛ անկանոն Հայ զօրքեր կը կըռուէին: Կարծես հրաշքով կ'իյնային բերդեր: Բընութիւնն իսկ կարծես սքանչելի ժպիտ մը կ'արտայայտէր այս յաջողութիւններուն հանդէպ:— «Սոյնպէս եւ աստեղք ի յերկինս երեւէին յոյժ լուսալիր պայծառացեալ, զոր ոչ ունէին յառաջին բնութեանն»:

Այս միջոցին Աղուանք օգնութիւն կը խնդրէին Հայոցմէ. Քաջն Վարդան հոն կը վազէ: Վասակ կ'օգտուի սպարապետին բացակայութենէն, իր կողմը կ'առնէ թուլահաւատ նախարարները. շուտով լուր կը ղրկէ Պարսից բանակին, որպէս զի դիմաւորեն Վարդանը: Սեբուխտ իր մեծ բանակով կը հանդիպի Վարդանին՝ Վրաց սահմաններուն վրայ: Մամիկոնեան զօրավարը եւ Արշաւիր Արշարունի յանկարծակիի կը բերեն Սեբուխտը եւ մեծ մեծ յաջողութիւններ կ'ունենան:

Վարդանի բացակայութեան միջոցին Վասակ հանդարտ չէր նստած: Շարք մը նշանաւոր բերդեր գրաւած էր, եկեղեցիները կողոպտած եւ տուներ քանդած: Վարդան շուտով վերադարձաւ Հայաստան՝ այս գոյժն առնելէ ետքը: Վասակ գիշերանց խոյս կուտայ, երբ կը լսէ Վարդանին վերադարձը եւ կ'երթայ Սիւնեաց բերդերուն մէջ ապաստան գտնելու: Վարդան կը յարձակի Սիւնեաց գաւառին վըրայ, սաստիկ կը նեղէ զայն եւ կ'աւերէ ու կ'աւարէ: Սարսափելի՛ հարուած:

Ցազկերտ լսելով Հայաստանի ներքին քայքայումը, մեղմացաւ, եւ պահ մը թուլցուց հալածանքը եւ ազատ թողուց քրիստոնէութիւնը: Ցազկեր-

*տին ընթացքը վստահութիւն չներշնչեց Վարդանանց, եւ հետեւաբար ասոնք չփոխեցին իրենց դիրքը։*

*Եւ Միհրներսեհ ստիպուեցաւ զօրաւոր բանակով մը գալ Փայտակարան՝ Հայոց սահմանները։*

## ՉՈՐՐՈՐԴ ՑԵՂԱՆԱԿ

*Ա՛լ Վարդանանք եւ Վասակեանք դէմ դիմաց են։ Քօղը պատռած է։ Ուխտադրուժ Վասակ իր դերին մէջ է, վստահելով իր ոյժերուն, իր պաշտօնական բարձր դիրքերուն եւ ազդեցութեան։* — «Արդ յայսմ հետէ եւ անդր, ուր սպրդեալ անկանի երկպառակութիւն ի ներքս, ընդ քակել միաբանութեանն՝ եւ երկնաւոր առաքինութիւնն հեռանայ, եւ անձնընտիրք լինելով՝ յոյժ բազմանայ լալումն ողբոյ»։

*Վասակ կը փութայ Փայտակարան երթալ, ամբաստանել Միհրներսեհի առջեւ Վարդանանց կողմը՝ իբրեւ պատճառ երկրի աւերման։ Միհրներսեհ խորագէտ էր· ներքնապէս կը զզուէր Վասակը, բայց կ'ուզէ օգտուիլ անկէ, նոյն իսկ Հայոց Թագը խոստանալով, հերիք էր որ ապստամբութիւնը զըսպուէր, ձեռնտուութեամբ ներքին Թշնամիին (—Վասակին)։ Եւ ստուգիւ Վասակ յաջողեցաւ եւ ամբողջ Սիւնիքը «ապստամբեցոյց յուրացութիւն»· Վիրք, Աղուանք, եւ Աղձնիք, որ Վարդանի դաշնակիցներն էին, զատուեցան Վասակի ազդեցութեամբ։ Վասակ իր այս բոլոր յաջողութիւնները ո՛չ միայն տեղեկագրեց Միհրներսեհին, այլ նաեւ Բիւզանդիոն, յունաբաժին Հայաստանի սպարապետ Մամիկոնեան ոմն Վասակի միջոցաւ։* — «Եգիտ այս Վասակ զայն Վա-

սակն իւր գործակից ի մեծամեծ չարիսն, զոր միաբանեցին երկոքեանն»:

*Վասակ իր գործունէութեան եւ յաջողութեան գագաթնակէտն է հասեր: Վարդանանց կողմը նուաճելու, ճզմելու համար ամէն միջոցի կը դիմէ, ամէն միջոց կ'արդարացնէ: Շարժեց, շփոթեց Հայոց աշխարհը ներսէն ու դուրսէն: Հարազատ եղբայրները զատեց իրարմէ. հայրն ու որդին իրարու դէմ հանեց, «եւ ի մէջ խաղաղութեան, արար խռովութիւն»: Նոյն իսկ իր հարազատ երկու եղբօրորդիները, որոնք հաւատարիմ էին առաքինութեան սուրբ ուխտին, ամբաստանեց, եւ արքունի հրամանաւ դուրս հանեց Սիւնեաց աշխարհէն, անգամ մըն ալ չվերադառնալու պայմանաւ: Բոլոր վանականներն ալ հալածեց եւ փախցուց անկէց, եւ Պարսիկներուն սորվեցուց ի՛նչ որ չէին գիտեր Հայոց կրօնական ներքին կեանքի մասին: Այդ բոլորին նպատակն էր Քրիստոնէութիւնը վերցնել Հայաստանէն:*

*Բայց Միհրներսեհ շատ աւելի հետաքրքրուած է Վարդանի շարժումներով քան թէ Վասակի դաւաճանութիւններով: Երբ ճիշդ գաղափար մը կազմեց Վարդանանց պատրաստութեան եւ դիտաւորութեան մասին, Փայտակարանի բանակը յանձնեց Մուշկան Նիւսալաւուրտին, եւ ինքն վերադարձաւ Տիզբոն, իրաց վիճակը պարզելու համար Յազկերտին:*

*Յազկերտ դառնացաւ՝ երբ տեղեկացաւ Վասակի երկդիմի, կործանարար քաղաքականութեան, եւ սպառնաց,*

— «Եթէ ապրեսցի անօրէնն այն ի մեծ պատերազմէն, մեծաւ անարգանօք տամ ըմպել նմա զբաժակն դառնութեան մահու»:

## ՀԻՆԳԵՐՈՐԴ ՑԵՂԱՆԱԿ

*Վարդանանք, թէեւ սակաւաթիւ, բայց աստուածային սիրով զրահաւորուած են: Գաղափարի կռիւն է որ պիտի մղեն. ասիկա գերբնական է իրենց համար, աստուածայի՛ն է: Ամէն դժբախտութիւն եւ գէշ հետեւանք նախատեսած են: Վախկոտ ու անարի չեն: Ամէնէն աւելի տկար կարծուածներն ալ այդ սիրով զինուած, զօրացած են: Մարդիկ որ չեն վախնար մահէ, կարեւորութիւն չեն տար ընչից յափշտակութեան, չեն ուզեր զգածուիլ իրենց սիրելիներուն խողխողումէն եւ իրենց ընտանեաց գերեվարութենէն, չեն տկարանար հայրենազրկութեան եւ օտարութեան մէջ ստրկութեան սարսափէն.* «առ ոչինչ համարեցան զայս ամենայն անցս չարչարանացն. այլ միայն միաբան կալ ընդ Աստուծոյ, զի 'ի նմանէ միայն մի՛ գերի ելցեն», *որովհետեւ* «Մեծ է սէրն Աստուծոյ քան զամենայն մեծութիւն երկրաւոր»:

*Քաջն Վարդան, որ շարժումին գլուխը անցած էր, անվհատութեան եւ արագութեան հիանալի օրինակը կուտայ: Կ'զգայ Վասակին տուած հարուածին ամբողջ ծանրութիւնը իր բացակայութեան միջոցին, գիտէ թէ իրեն յարողներուն եւ հետեւողներուն մէջ ալ կային երկմիտներ ու երկերեսներ: Իր եղբայրները, զաւակները, եղբօրորդիները կը դնէ պակսողներուն տեղ, Արտաշատի մէջ կը ժողվէ իր զինուորները եւ կը պատրաստուի անցնիլ Երասխը երթալու համար դէպի պատերազմի դաշտն Արտազ:*

*Արտա՛զ: Վաթսուն հազար Հայ քաջերով, հեծ-*

*եալ թէ հետեւակ, կ'եռայ ու կը զեռայ դաշտը · հո՛ն եկեր հաւաքուեր են իրենց ռազմական բոլոր պատրաստութեամբ,*

Ներշապուհ Արծրունի,
Խորէն Խորխոռունի,
Արտակ Պալունի,
Վահան Ամատունի եւ զունդն Վահեւունեաց,
Թաթուլ Դիմաքսեան,
Արշաւիր Արշարունի,
Շմաւոն Անձաւացի,
Տաճատ Գնթունի,
Ատոմ Գնունի,
Խորսով Գաբեղեան,
Կարէն Սահառունի,
Հմայեակ Դիմաքսեան,
Ներսէհ Քաջբերունի,
Փարսման Մանդակունի,
Արսէն Ընծայեցի,
Այրուկ Սլկունի,
Վրէն Տաշրացի,
Ապրսամ Արծրունեացն,
Շահ Խոռայեան Արքունի,
Խուրս Սրուանձտեաց,
Քօղեանքն,
Անկէացիքն,
Տպրատունիք,
Ջօրքն Ռշտունեաց,

*եւ բոլոր արքունի զործակալներ, իրենց զօրքերով, եւ ամէնուն գլուխը ինքն Սպարապետն Հայոց, Վարդան Մամիկոնեան:* Հոն եւ «Սուրբքն Յովսէփ եւ Ղեւոնդ Երէց, բազում եւ այլ քահանայք, եւ եւս

բազմագոյն պաշտօնեայք»։ Հայ եկեղեցականը Հայ զինուորին քով։ Գաղափարի կռիւ է, հոգեւոր պատերազմ մըն է, անոնք չէին կրնար չնետուիլ պատերազմի դաշտը, անոնք ալ «կը ցանկային մահակից լինել քաջ նահատակացն»։

Սպարապետն կը խօսի իր մարտական ճառը։ Ո՛րչափ համեստ, այնքան արի՛ է Վարդան իր խօսքերուն մէջ։ Դատը քաջ ըմբռնած է. գիտէ հայ զինուորին հոգեբանութիւնը։ Իր ճառին գլխաւոր գիծերն են.

— Շատ մը կռիւներու մասնակցեր ենք, երբեմն յաղթուած ենք, բայց ընդհանրապէս յաղթող ելած ենք։ Այդ կռիւներու մէջ քաղաքացիական պարտք մը կը կատարէինք եւ մեր նպատակն էր գոհ թողուլ մեր վրայ իշխողը, եւ վարձատրուիլ։ Այս կռիւը բոլորովին տարբեր է նախկիններէն։ Ասիկա գաղափարի, պատուի կռիւ է։ «Մահկանացու հրամանատարու»ին չէ որ հաճելի պիտի ըլլանք, այլ «անմահ Թագաւորին»։ Ձենէ չատեր քան զիս լաւագոյն էք քաջութեամբ եւ հայրենի պատուով։ Բայց զիս դուք հրաւիրեցիք առաջնորդել ձեզի։ Մեր նպատակն է մեռնելու չափ կռուիլ, եւ ուշադրութիւն ընել, որ «յարութիւնս քաջութեան՝ վատութիւն մի՛ խառնեսցուք»։ Արդէն մէկ երկու կռուի մէջ յաջողեցանք։ Թո՛ղ գիտնայ թշնամին, որ քրիստոնէութիւնը հագուստ մը չէ մեր վրայ, որ փոխենք. մեր մարմնի գոյնին պէս է այդ, որ չփոխուիր։ Մեր առ երեւս «ամպարշտութիւն»ը ցաւալի էր. բայց Աստուած գիտէ, եւ դուք ալ գիտէք որ ասիկա մեր սիրելեաց համար էր. հիմա կրկին

պարտք կը ծանրանայ մեր վրայ, այս կեղտն ալ պէտք է սրբել մեր վրայէն։ «Երկիւղ՝ թերահաւատութեան է նշանակ»։ Արդէն թերահաւատութիւնը շատոնց մերժեցինք, թող վախն ալ փարատի մեր մտքէն ու խորհուրդէն»։

Վարդան իր հաւուն, Մեծն Սահակայ թարգմանած Սուրբ Գիրքը ձեռք առած, Մակաբայեցւոց քաջագործութիւնները կը կարդայ, մեծ նմանութիւն կը գտնէ անոնց եւ իրենց վիճակին մէջ։ Եւ կը սրտապնդէ հաւատարիմները քաջերու օրինակներով։

Աւանձար Ամատունի, քաջ եւ իմաստուն Սեպուհ մը, երկու հազար հայորդիներով անգամ մը յանկարծակիի կը բերէ Պարսից բանակը՝ Հէր եւ Զարեւանդ գաւառին մէջ։ Վասակ նոր հնարքներու կը դիմէ Վարդանանց կողմը տկարացնելու համար, բայց չյաջողիր։ Սուրբն Ղեւոնդ քրիստոնէական եւ հայրենասիրական հարուստ եւ տաք շնչով մը կը խրախուսէ հայոց բանակը. — «Մեր յոյսն մեզ կըրկին երեւի. եթէ մեռանիմք՝ կեամք, եւ եթէ մեռուցանեմք՝ մեզ նոյն կեանք առաջի կան»։ Հայրենասէր եւ քաջ քրիստոնեայ Երէցն իրենց ներկայութիւնը բանակին մէջ մասնաւոր խնամքով դիտել կուտայ, աւելի եւս արծարծելու համար հայ զինուորին կռուելու եռանդը. — Դուք ամէնքդ ալ, կ'ըսէ, գիտէք, որ պատերազմի ատեն սովորութիւն ունէինք բանակի մէջ քահանաներ ունենալ, բայց ճակատի ատեն անոնց աղօթքին յանձնուելով՝ զանոնք կը թողէինք ամուր տեղեր. բայց այսօր եպիսկոպոսներ ու երէցներ, սարկաւագներ, սաղմոսեր-

դուներ, դրակարդացներ, ամէնքն ալ զինուորներու նման պատրաստ են կռուի, եւ կ'ուզեն ձեր հետ յարձակիլ զարնել ճշմարտութեան թշնամին: Ասոնք մեռնելէ ալ չեն զանգիտեր. որովհետեւ աւելի կ'ուզեն մեռնիլ քան թէ մեռցնել:

Մեծ պատերազմին գիշերը՝ այս ոգիով կը խօսի Սուրբն Ղեւոնդ: Այդ հիւանդոտ, բայց գիտուն, հայրենասէր, քրիստոնեայ եկեղեցականը, մոռցեր էր իր հիւանդութիւնը, կրակուբոց կտրած է Վարդանի բանակին մէջ, կը հրահրէ, կը խանդավառէ, ամէն զինուոր իր հոգեւոր պարտքն ալ կը կատարէ. գիշերն ի բուն անկնունքներ կը մկրտուին, կը կնքուին, առաւուն Ս. Պատարագ կը մատուցուի, հաւանաբար ամէն գունդի մէջ զատ զատ, եւ անշուշտ առաջին Պատարագիչն է նոյն ինքն Սուրբն Յովսէփ. բոլոր բանակը կը հաղորդուի, կարծես Զատկի տօն մըն էր: Ամենքն ալ լուսազգեստ են հիմայ, եւ ցնծութեան աղաղակներով կը հրճուին.— «Հաւասարեսցէ մահ մեր ընդ մահ արդարոցն, եւ հեղումն արեանն մերոյ ընդ արիւն սուրբ մարտիրոսացն. եւ հաճեսցի Աստուած կամաւոր պատարագաւս, եւ մի՛ տացէ զեկեղեցի իւր ի ձեռս հեթանոսաց»:

## ՎԵՑԵՐՈՐԴ ՅԵՂԱՆԱԿ

Պարսից բանակին հրամանատարը, Մուշկան Նիւսալաւուրտ, յուսահատ՝ Հայերը սուտով ու խոստումներով նուաճելէ, կը շարժի իւր կողմէն: Վասակեաններէն ստուգած է արդէն Վարդանանց վի-

ճակը, անոր նշանաւոր սպետներուն քաջութիւնը, եւ ըստ այնմ կը կազմէ ու կը պատրաստէ Մատեան գունդը: Այս գունդը կը կազմուէր փիղերէ, իւրաքանչիւր փիղին աջէն ու ձախէն երեք հազար սպառազէններ. ասոնք բռնեցին իրենց դիրքը մեծ դաշտի երկայնքին, այսինքն Տղմուտ գետի մէկ կողմը. «իբրեւ զաշտարակ մի հզօր եւ կամ իբրեւ զբերդ մի անմատոյց»: Ապարհայից գունդը, Կաշտաց, Հոնաց, Գեղայ եւ ուրիշ ազգերու ընտիր զօրքերն ալ Մ. Նիւսալաւուրտ կ'առնէր իր աջ կողմը՝ Վարդանի դէմ ելնելու համար:

Իսկ Վարդան Տղմուտ գետին աջ կողմը՝ այսպէս կը շտկէր իր բանակին ճակատը: Առաջին գունդը Արծրունեաց Իշխանին (Ներշապուհի) ձեռքին տակ, նիզակակից ունենալով Մոկաց մեծ իշխանը: Երկրորդ գունդը Խորէն Խորխոռունիի ձեռքին տակ, նիզակակից ունենալով Արսէն Ընձայեցին ու Ներսեհ Քաջբերունին: Երրորդ գունդը Թաթուլ Վանանդեցիի ձեռքին տակ՝ նիզակակից ունենալով Տաճատ Գնթունին: Իսկ չորրորդ գունդը՝ Վարդան Մամիկոնեան կ'առնէ իր ձեռքին տակ՝ նիզակակից ունենալով Արշաւիր Արշարունին եւ իր հարազատ եղբայրն Համազասպեանը, եւ չորս գունդերուն ալ թեւերը կը կազմէ ու կը զօրացնէ նախարարեան եւ ժողովրդեան քաջերէ:

Երկու կողմերն ալ պատրաստ էին: Հնչեց յարձակման փողը: Սոսկալի՛ եղաւ ընդհարումը: Նիզակի, նետի, սուրի բազմախուռն կռիւ մըն էր, որ կը մղուէր: Պահ մը Վարդանանք Տղմուտի մէջ ձգեցին Պարսից գունդը. պարսիկը ծանօթ չէր գե-

տի հուներուն եւ նեղը ինկան, «զտեղեաւն զեռալ սկսան»: Հայ ձիաւորներ յարձակեցան անոնց վըրայ: Հայոց ձախակողմը տկարացաւ. Վարդան մեծ ոյժով մը ատոր օգնութեան դիմեց, զարկաւ Պարսից աջ թեւը, կրցաւ ցրուել Մատեան մեծամուր գունդը, եւ բաժնուածներ սկսան «քաջ քաջ ի փախուստ դառնալ»: Մուշկան Նիւսալաւուրտ չվհատեցաւ այս հարուածէն. ուզեց հայ գունդին վերջապահներուն վրայ յարձակիլ «ի հովիտս լերանցն»: Ժողվեց իր զօրքերը եւ դիրք բռնեց Վարդանի գունդին դէմ: Երկու բանակներ կը զարնուէին իրարու. դիակները դերբուկներու պէս կը դիզուէին, եւ պամիչին խօսքով՝ երկու կողմերն ալ «զպարտութիւն խոստովանէին»:

Մուշկան Նիւսալաւուրտ սակայն շուտով կը լեցնէ իր փիղերէն եւ զինուորներէն ինկածներուն տեղերը եւ կը յաջողի պաշարել զկորովին Վարդան: Այս կռուին մէջ է, որ կ'իյնայ Վարդան, նախճիրի հաւասար կոտորած մը ընելով թշնամի գունդին մէջ, իր քաջ նիզակակիցներուն հետ:

Գարնան օրեր էին. կռիւներով օրը երեկոյացաւ. ծաղկալից դաշտը կարմրեցաւ արիւններով. խոցեալներու դիակներուն կոյտերուն մնչիւնը, բեկեալներու մռնչիւնը, վիրաւորեալներուն թաւագլոր սողալը, վատերուն փախուստը, լքեալներուն թագուստը, անարի մարդոց սրտաթափումը, կանացիներուն ճչիւնը, սիրելիներուն ողբերը, մերձաւորներուն աշխարումը, բարեկամներուն վայերն ու աւաղները՝ մարդուն սիրտը կտոր կտոր կ'ընէին եւ աղիքները կը գալարէին: Յայտնի չէր թէ ո՞ր

*կողմ յաղթեց կամ ո՞ր կողմ պարտուեցաւ. վասնզի* «քաջք ընդ քաջս ելեալ՝ երկոքին կողմանքն ի պարտութիւն մատնեցան»:

*Եթէ «զօրավարն Հայոց» ինկած չըլլար, Արտաշի պատերազմը կարուկ ելք մը ունենար թերեւս: Բայց Անոր մահը եւ մահը նշանաւոր քաջերուն՝ պատճառ եղաւ, որ հայ բանակը ցիրուցան ըլլայ՝ Պարսից հզօր գունդին առջեւ: Բայց ցրուողներ կ'երթան անառիկ ամրոցներու մէջ կ'սպասեն իրաց ելքին:*

*Տղմուտի եզերքն ինկած էին,*

ՔԱՋՆ Վարդան Մամիկոնեան՝ 133 ընկերներով.
ԿՈՐՈՎԻՆ Խորէն Խորխոռունի՝ 19 ընկերներով.
ԱՐԻՆ Արտակ Պալունի՝ 57 ընկերներով.
ՔԱՐՄԱՆԱԼԻՆ Տաճատ Գնթունի՝ 19 ընկերներով.
ԻՄԱՍՏՈՒՆՆ Հմայեակ Դիմաքսեան՝ 22 ընկերներով.
ՀՐԱՇԱԿԵՐՏՆ Ներսեհ Քաջբերունի՝ 7 ընկերներով.
ՄԱՆՈՒԿՆ Վահան Գնունի՝ 3 ընկերներով.
ԱՐԴԱՐՆ Արսէն Ընծայեցի՝ 7 ընկերներով.
ՅԱՌԱՋԱԴԷՄՆ Գարեգին Սրուանձտեան՝ իր երկու հարազատներով եւ 18 ընկերներով:

*Այս մեծամեծ* իննը *նախարարներուն հետ նահատակուողներուն թիւն է* 296 *հոգի*: 740 *հոգի ալ կը նահատակուին Արծրունեաց եւ այլ նախարարութեանց կարիճներէն*, «որք զանուանս իւրաքանչիւր ի դպրութիւն կենաց գրեցին ի նմին աւուր ի մեծի պատերազմին: *Եւ միահամուռ լինի ամենայն*՝ հազար եւ երեսուն եւ վեց այր»:

*Իսկ Մ․ Նիւսալաւուրտ՝ կը կորսնցնէ իր քաջամարտիկներէն 3544 հոգի, որոնց ինը «ի մեծ պատուաւորացն էր»։ Պարսից կրած հարուածը եռապատիկէն աւելի է, բայց անոր ազդեցութիւնը «եօթընպատիկ» եղաւ Եղիշէի բացատրութեամբ։*

*Անհնարին է Պարսիկ Զօրավարին վիշտը, իր անդարմանելի կորուստներուն համար։ Բայց Վասակ, որ այս պատերազմի մէջ փիղերուն ետեւ ապաստանած էր, դարձեալ երեւան կուգայ եւ կը ջանայ մխիթարել Մ․ Նիւսալաւուրտը եւ հնար մը գտնել՝ նուաճելու համար Հայոց ամրոցները, ուր քաշուած էին պատերազմէն ազատող նախարարներ եւ զինուորներ։*

*Մ․ Նիւսալաւուրտ տեղեկագրած է Դրան պատերազմին ելքը։ Երկու կողմին կորուստներն ալ սաստիկ ցաւ պատճառած են Յազկերտի կառավարութեան։ Եւ ներում չնորհուած էր Հայոց։ Վասակ այս ներման պարագան կ՚ուզէ չահագործել դարձեալ։ Վարդանանք թէեւ կը հաւատան, որ* «հրամանն թագաւորին հաստատութեամբ էր տրուեալ», *բայց չէին կրնար վստահիլ Վասակին «վասն նենգութեանն»։*

## ԵՕԹՆԵՐՈՐԴ ՅԵՂԱՆԱԿ

*Վասակ չուզեր յուսահատիլ։ Իր խորհրդովն է, որ Մուշկան Նիւսալաւուրտ կը յարձակի այն ամրոցին վրայ, ուր ինկած էր հայ զօրագունդ մը, եկեղեցական դասուն հետ։ Պարսիկներ չատ կռուեցան, բայց չկրցան ազդել։ Աւետարանի վրայ երդումներ*

ըրին, որ անձնատուր ըլլան։ Եկեղեցականութիւնը, որոնց գլուխը Յովսէփ եւ Ղեւոնդ կը գտնուէին, կը հաւանէր, բայց զօրականներուն մեծ մասը չէին ուզեր վստահիլ Վասակին։

Այդ քաջ զօրականներէն մէկը, ԲԱԿ, բերդի պարսպին վրայ կանգնած խօսք կը թշնամանէ Վասակը, եւ Մուշկան Նիւսալաւուրտի կը պատմէ Հայոց աշխարհին կրած վնասները անոր երեսէն։ Թէ՛ Հայեր եւ թէ՛ մանաւանդ Պարսիկներ իրաւունք կուտան քաջին Բակին, որ գիշերանց վար կ'իջնէ բերդէն, իր եօթը հարիւր կտրիճներով, կը ճեղքէ Պարսից բանակը եւ կ'անցնի կ'երթայ անվնաս։

Պաշարումը կը սաստկանայ ներսը մնացողներուն վրայ. ուտելիք չմնար. թէեւ չեն ուզեր անձնատուր ըլլալ, բայց կ'ստիպուին ակամայ իջնել վար, որոնցմէ 213 հոգի անմիջապէս սրախողխող կ'ըլլան։ Յովսէփ եւ Ղեւոնդ կը բողոքեն Դուռը՝ ամբաստանելով Վասակը։ Հայ եկեղեցականութեան այս երկու գլխաւորները վար կը դրուին, միւսները ազատ կ'արձակուին, հրաման ստանալով «վասն շինութեան եւ խաղաղութեան աշխարհին»։

Եւ սակայն մարդիկն հայոց քաջ գիտեն, թէ Դուռը յեղյեղուկ է, եւ Վասակ՝ անվստահելի։ Չեն ուզեր այդ պայմաններու մէջ ապրիլ. ի՞նչ կ'արժէ կեանքը՝ երբ մեռած են իրենց սիրելիները. ի՞նչու հաւատ ընծայեն սուտ թողութեան՝ քաջ նահատակներու մահէն ետքը, պատուական նախարարութեան անարգ թշուառութենէն ետքը, Հայաստանի փափկութեան վտանգուելէն ետքը։ Ուրեմն կ'որոշեն քաշուիլ լեռնոտ ամրոցները, եւ դիմադրութիւնը

*չարունակել*։ «Լաւ համարէին զգազանաբար բընակութիւնն աստուածպաշտութեամբ ի քարանձաւս կելոյ, քան ուրացութեամբ փափկանալ յիւրաքանչիւր շինուածս»։

*Հոգեկան արիութիւնը կը խանդավառէ զիրենք. այլեւս կորսնցնելիք մը չունէին. ազատութեան հաւատքը կը զօրացնէ զիրենք. յուսահատութեան տեղ պաղարիւնը կը տիրէ. սպանուողներուն համար այլ եւս չկայ ողբ կամ հեծեծանք*։ «Խնդութեամբ ընկալան զյափշտակութիւն ընչից բազմաց, եւ ոչ յիշէին ամենեւին՝ եթէ եղեալ իցեն նոցա ստացուածք»։

*Անոնք հասարակ մահկանացուներ չէին. մեծ նախարարական ցեղէ մարդիկ էին.* «Եղբարք եւ որդիք եւ դստերք, հանդերձ ամենայն սիրելեօք իւրեանց». *ոմանք Խաղտեաց անլոյս երկրին ամրոցներուն մէջ, շատեր Հարաւային կողմը, Տմորեաց անմատչելի ամուրներուն մէջ, ուրիշներ Արձախի Թանձրախիտ անտառներուն մէջ, ոմանք ալ նոյն իսկ*«ի միջոց աշխարհին բռնացան ի վերայ բազում ամրոցացն»։ *Ամէնքը միայն մէկ փափաք ունէին. չըտեսնել «զաւեր սուրբ եկեղեցեաց»*։

*Վասակ կը կատղէր, երբ կը տեսնէր թէ իր բոլոր հնարքներն ի դերեւ կ՚ելնէին։ Բայց յուսահատիլ չգիտեր Սիւնեաց Իշխանը. իր խորհրդով օգնական գունդեր եկան եւ Պարսից բանակէն ինկածներուն տեղը լեցուցին, եւ բանակը վերակազմըւեցաւ եւ զօրացաւ առաջուանին պէս*։

*Առաջին յարձակումը կրեց Կապոյտ լեռան մեծ ամրոցը։ Բերդայինները լաւ դիմադրեցին, սպան-*

նելով յարձակողներէն շատերը։ Դարձեալ ողոքանք, դարձեալ խաբէութիւն՝ Պարսից կողմէն՝ Վասակի թելադրութեամբ։ Ոչ ոք չէր վստահեր. բայց այնքան սրտառուչ երդումներ եղան, որ Արշէն Երէց ստիպուեցաւ վար իջնել բերդէն քանի մը ընկերներով եւ խօսիլ Վասակին հետ, որ չուզեց լսել Արշէն Երեցը եւ կապել տուաւ ամէնքն ալ։ Միւս կողմէն ասպատակաւորներ ղրկեց ամրոցներէն դուրս գտնուած տեղերու վրայ եւ գերի վարել տուաւ անպաշտպան Հայերը եւ հրդեհել տուաւ անոնց տուներն ու տեղերը։

Տմորիքի ամրոցին մէջ ամրացողներ զայրացան Վասակի այս նոր նոր չահատակութիւններուն դէմ եւ փոխադարձաբար ասպատակեցին Պարսից մօտիկ սահմանագլուխներէն ներս, սպաննեցին, գերեցին, գերփեցին, հրդեհեցին եւ վերադարձան իրենց տեղերը։

Խաղտեաց լեռներուն մէջ ամրացողներ ալ դուրս եկան, յարձակեցան Տայոց ձորագաւառը, ուր բազում Պարսիկ գունդեր հաւաքուած էին եւ սաստիկ կը նեղէին երկիրը, կարծելով որ նախարարներու գանձը հոն պահուած է, եւ երկու գիւղերու ալ եկեղեցիները այրած էին։

Այս յարձակման գլուխ եւ առաջնորդ էր Ներսեհին Հմայեակ, Քաջն Վարդանին եղբայրը։ Սոսկալի կոտորած մը տուին Պարսից գունդերուն, մնացածը փախցուցին, բայց ինքն Հմայեակն ալ ինկաւ այս կռուին մէջ «յաննման քաջութեամբ մարտուցեալ»։ Այս հարուածը այնքան սուղի նստաւ Պարսից վրայ, որ այլեւս չյանդգնեցան ամէն տեղ ասպատակել,

մանաւանդ զգուշացան Եկեղեցիներու վնասելէ: Իսկ Արձախի անտառներուն մէջ ամրացողներ չեն մնար անտարբեր: Անոնք ալ մարդ կը ղրկեն Հոնաց աշխարհ, կը յիշեցնեն իրենց դաշինքը, նոյն իսկ կը մեղադրեն, որ չեն եկած կռուի: Վերջապէս բանագընացութիւնք յաջող ելք մը կ'ունենան. Հոնք կը յարձակին Պարսից սահմաններուն վրայ, կը զարնեն, կը գերեն, կը գերփեն, մանաւանդ կը խրամատեն Ճորայ նշանաւոր Պահակը, և կը վերադառնան իրենց երկիրը, եւ այսպէս ցոյց կուտան Յազկերտի Կառավարութեան, թէ իրենք դաշնակից են Հայոց:

Մուշկան Նիւսալաւուրտ կը չուարի Հայոց այս յաջողութիւններէն, եւ բոլոր վնասները կը վերագրէ Վասակին, եւ անձամբ Տիզբոն երթալով՝ կ'ամբաստանէ զայն՝ իբրեւ պատճառ գործուած բոլոր չարիքներուն:

Յազկերտ կը խռովի. կ'ուզէ ստուգել իրողութիւնը. իմաստունն Միհրներսեհ խորհուրդ կուտայ Յազկերտին. «Եթէ կամիս ստուգութեամբ լսել զարդարն, որք գլխաւորք Քրիստոնէիցն են ի Հայս, տուր կոչել, եւ զան յօժարութեամբ եւ ասեն քեզ զամենայն արդարութեամբ»:

Այս նպատակաւ Ատրորմիզդ, աւագ նախարարներէն մին, Հայաստան կը ղրկուի Մարզպանութեան պաշտօնով, որ արդէն ծանօթ էր Հայոց եւ պատերազմի մէջ ալ գործակիցն էր Մ. Նիւսալաւուրտին:

Իսկ Մ. Նիւսալաւուրտ իր մնացած զօրքերով ղրկուեցաւ Աղուանից Լփնաց, Ճղբաց, Հեճմատակաց, Թաւասպարաց երկիրները եւ ի Խիբիովան եւ այն բերդերը, զորս Հոնք քակեր եւ քանդեր էին ի հաշիւ Հայոց: Որովհետեւ Յազկերտ սաստիկ

ցաւ կ՚զգար ոչ միայն աւրուած բերդերուն եւ երկիրներուն համար, այլ մանաւանդ Ճորայ Պահակին քանդուելուն համար, որ տարիներու ընթացքին մեծ աշխատութեամբ հազիւ շինուած եւ ի գլուխ ելած էր եւ դժուարաւ կրնար վերաշինուիլ:

Ատրորմիզդ Մարզպան Հայաստան մտաւ «սիրով խաղաղութեամբ»: Մէկ կողմէն Վասակ եւ քրիստոնէից գլխաւորները Դուռը կը կոչուին, իսկ միւս կողմէն Ատրորմիզդ ներքին քննութեան կը ձեռնարկէ: Ռշտունեաց Եպիսկոպոս Սահակ, Արծրունեաց Առաջնորդ Մուշէ երէց, որոնք ատրուշաններ քանդած եւ մոգերը հալածած էին, հրաւիրուեցան Ատրորմիզդին քով. նոյնպէս Սամուէլ Քահանայ եւ Աբրահամ Սարկաւագ, որոնք կապուած էին Վասակի հրամանաւ, Արտաշատի ատրուշանները քանդելու յանցանքով. ինչպէս նաեւ Մեծն Յովսէփ, Ղեւոնդ, Քաջաջ, Արշէն, ասոնք Ատրորմիզդին պատմեցին բոլոր անցուդարձերը, որ ամէն բան ստուգելէ ետք «գրեաց եւ եցոյց յարքունիս զամենայն ճշմարտութեամբ, որպէս զիարդ լուաւ ի բերանոյ նոցա»:

Ատրորմիզդ իր տեղեկագրին հետ այս սուրբ քահանաներն ալ «կապանօք» ճամբայ հանեց դէպի Տիզբոն:

Երկու ամիս եւ քսան օրուան ճամբորդութենէ մը ետքը կը հասնին «ի ձմեռոցն արքունի»:

Վասակ թէեւ շատ աւելի կանուխ հասած է Դուռը, եւ կ՚աշխատի համոզել Յազկերտը եւ անոր կառավարութիւնը, թէ ինքն յանցաւոր չէ, բայց Յազկերտի մտքին մէջ չկրնար արդարացնել ինքզինքը: Յազկերտ կ՚ուզէ հակառակ կողմն ալ լսել հրապա-

*րակաւ, եւ ըստ այնմ դատել.* «Յորժամ քրիստոնեայքն եւս եկեսցեն, հաասարակ լուայց յատենի»:

*Ատրորմիզդ հրաման կ՚ստանայ «սիրով նուաճել» Հայոց աշխարհը: Այս էր պատճառը, որ եպիսկոպոսներ արտօնուեցան «ըստ առաջին սովորութեան» վարել իշխանութիւնը, յայտնի եւ համարձակ. հարկերը կը չնորհուէին. առ ժամանակ մի այրուձին ալ կը թեթեւնայ. նոյն իսկ միայնակեացներ, որոնք ցիրուցան էին եղած, կ՚արտօնուէին գալ բռնել իրենց առաջուան տեղերը: Աստուածպաշտութեան կարգը, ինչպէս որ էր նախնեաց ատեն, նոյն կերպով կը թոյլատրուի. վերջապէս՝ ազատ թէ չինական, եկեղեցական թէ աշխարհական, ազատ էին գալ եւ տիրանալ իրենց ստացուածքներուն եւ կալուածներուն: Ակամայ եւ բռնի կրօնափոխ եղողներ, ազատ էին պաշտել իրենց քրիստոնէութիւնը: Ատրորմիզդ, յանուն Յազկերտի, այս բոլոր դիւրութիւնները պաշտօնապէս յայտարարեց, մշակեց: Բոլոր Հայեր, որ ցրուած էին ասդին անդին, կամ ամրացած էին անմատչելի բերդերու մէջ, կուգան ու կ՚սկսին վերաշինութեան գործին: Ամրացեալ նախարարներ անձնատուր կ՚ըլլան եւ իրենց ընտանիքն ու ստացուածքները Ատրորմիզդին վստահելով, անոնց կապանքի կ՚երթան Տիզբոն, ներկայանալու կառավարութեան:*

*Այսպէս երբ Հայոց բոլոր երեւելիներն ու գըլխաւորները կը հաւաքուին Դուռը՝ հարցափորձը կ՚սկսի Միհրներսեհի նախագահութեան ներքեւ:*

*Օրեր կը տեւէ ամբաստանութիւնը. Վասակին հնարքներն ու նենգութիւնները մի առ մի, փաստերով, պաշտօնագիրներով յերեւան կը բերուին. մէջ-*

տեղ կը դրուին Վրաց, Աղուանից, Աղձնեաց, Ցունաց, եւ Ցոյն սպարապետ Անտիոքոսին գրուած պաշտօնագիրները, ամէնքն ալ Հայոց մարզպան Վասակին կնիքովը կնքուած։ Ատոմ Գնունի, որ Վասակի կողմէն, Բիւզանդիոն ղրկուած էր, կ'ամբաստանէր Վասակը․ նոյն ինքն Մ․ Նիւսալաւուրտ, կը հաստատէր, թէ Վասակ պատերազմէն ետքն ալ շատ արիւն թափել տուաւ, իր սուտ երդումներով։ Այս բոլորին վրայ՝ կը հաստատուի Վասակին անհաւատարմութիւնն ալ արքունի գանձին․— «Եւ ի վերայ այսր ամենայնի վնասու, եւ գող եւս գտանէր հարկի աշխարհին, որ յարքունիսն երթայր»։

Վասակին ուրացեալ ընկերներն իսկ կ'ամբաստանեն զինքն․ նոյն իսկ հալածեալ մոգերուն եւ փըշտիպաններուն մնացորդները՝ Վասակը կ'ամբաստանեն իբրեւ վնասակար։ Իր ազգականներն ալ, որ արդէն յառաջագոյն ամբաստանած էին զինքն, հրապարակ կուգան, թէ Վասակ, իբրեւ Մարզպան Հայոց, ի՛նչպէս բարեկամացած էր Պարսից թշնամիներուն հետ (Հոն Հեռանի եւ Բաղասական արքայի հետ), որոնք մեծ վնասներ պատճառած էին ասպատակելով եւ աւարելով Հայքը, Վիրքը, Աղուանքը եւայլն։ Ամբաստանութիւներու ոգին կը շեշտուի սա կերպով, թէ Վասակ «ոչ երբեք արդարութեամբ վաստակեալ էր ի մանկութենէ»։

Սահակ Եպիսկոպոս Ռշտունեաց, կը ծանրանայ Վասակի նկարագրին վրայ, իբրեւ ուրացողի, եւ այդ անվստահելի նկարագրին կը վերագրէ անոր բոլոր գէշութիւնները։ Դուք, կ'ըսէ, իր արժանիքէն աւելի մեծարեցիք զինքն։ Վրաց Մարզպան ըրիք, կ'ըսէ, հարցուցէք թէ զո՞հ են անկէ։ Սիւնեաց Տէ-

*րութիւնը (Տանուտէրութիւն) տուիք իրեն, Հարցուցէք իր ազգականներուն, թէ ինչեր կը պատմեն իր մասին: Հայոց մարզպան ըրիք զինքն*, «զոր նախնեացն ձերոց մեծաւ աշխատութեամբ գտեալ էր, դա ի միում ամի կորոյս զերկիրն ամենայն»:

*Սուրբ Յովսէփ եւ Ղեւոնդ Երէց, որ Սահակ Եպիսկոպոսի հետ ներկայ էին ամբաստանութեան, համամիտ էին: Սահակ Եպիսկոպոս իբրեւ քաջ պարսկագէտ կը խօսէր ամէնուն կողմէն:*

*Միհրներսեհ, որ արդէն չէր սիրեր Վասակը, անոր դատապարտութեան կողմը բռնեց եւ դատավարութեան եզրակացութիւնը ըստ այնմ հաղորդեց Յազկերտին, որ «բարկացաւ յոյժ եւ ի խորս խոցեցաւ»· բայց, կ'ըսէ Եղիշէ, չուզեց շուտով պատժել, այլ՝ համբերեց տասներկու օր, մինչեւ որ գլխեցաւ փուրսիշը:*

*Նշանաւոր օր մը՝ արքունական սեղան մը սարքուած էր Շահնշահներու պալատին մէջ: Բոլոր* պատուականներ *եւ* երեւելիներ *հրաւիրուած էին սեղանի: Վասակն ալ անոնց մէջ կը ճոխանար՝ իր շքեղ համազգեստով, որ շատ ուշադրութիւն կը դրաւէր:*

*Մեծամեծներու յատուկ դահլիճին մէջ բազմած էր Վասակ, երբ սենեկապան մը եկաւ Յազկերտի կողմէն եւ ըսաւ·* «Արքայ յղեաց առ քեզ· յորմէ՞ գտեալ է քո զայդ ամենայն պատուական պատիւդ, ասա՛ ինձ վաղվաղակի, վասն որո՞յ արդար վաստակոց»:

*Սենեկապանը կը յիշեցնէ Վասակին վատութիւնն ու իր դատապարտութիւնը· նոյն իսկ հոն չըսուած դէպք մըն ալ կը յիշեցնէ· այսինքն՝ իր հօրեղբօր Վաղենակ Սիւնիին սպանութիւնը·* «Զի ոչ ըստ կար-

զի ունէր նա զտէրութիւնն Սիւնեաց աշխարհին, այլ նենգութեամբ եւ խաբէութեամբ ետ սպանանել զհօրեղբայր իւր զՎաղենակ, եւ յինքն տարաւ զտէրութիւնն իբրեւ քրտիկար յարքունիս :»

*Դատապարտութիւնը ամէն կողմէն կը ծանրանայ. բոլոր աւագանին կը վկայէ անոր յանցապարտութեան եւ վերջապէս կը տրուի մահուան վճիռը :*

*Դահճապետը կուգայ դատապարտեալ Վասակին մօտ, կ'առնէ անոր վրայէն բոլոր արքունական պատիւները, անոնց տեղ կ'զգեցնէ իրեն մահապարտի հանդերձը եւ կը նետէ մահապարտից զնտանը :*

*Նախարարներ, Եպիսկոպոսներ եւ Երէցներ, թէեւ կապանքի եւ նեղութեան մէջ են, բայց կը մխիթարուին տեսնելով, որ Ուրացեալը դտաւ իր պատիժը :*

*Վասակ, իր անարգութեան մէջ, կը տեսնէր հաւատացեալներուն եւ հաւատարիմներուն միաբանութիւնը : Անոնց զուարթ եւ պայծառ դէմքէն կարծես խղճատանջ կ'ըլլար :*

*Վասակ օր ըստ օրէ հրապարակ կը հանուի, հաչիւ եւ համար կը պահանջուի իրմէ. կը հասնի յետին խեղճութեան. որովհետեւ ինչ որ ունէր առին, յափըշտակեցին.* «Եւ այնպէս սաստիկ արկին զպարտերս հարկաց աշխարհին ի վերայ տան նորա, որ մինչեւ զհարց եւ զհաւուց զիւր արարս եւ զզարդս կանանց եւս եդ ի վերայ եւ ետ եւ տուժեցաւ, և ոչ կարաց հատուցանել զպարտսն արքունի : Եւ յայն տեղի հասուցին, մինչեւ հարցանել նմա եթէ կայցէ՞ ինչ գանձ ի գերեզմանս նախնեացն մերոց. եւ եթէ գտեալ էր նորա, հանէր և տայր ընդ իւր և ընդ ընտանեացն տուգանս. որպէս զի բազում մարդիկ իսկ չոգան ի տուժի» :

*Երկար ատեն կը մնայ Վասակ բանտի մէջ, հիւծած մաշած, անարգուած։ Եղիշէ՝ շատ սոսկալի կը նկարագրէ Վասակին վախճանը։ Փարպեցին աւելի մեղմ է եւ աւելի պատմական է այս նկարագրութեան մէջ ալ։*

*Վասակ կը մեռնի վերջապէս բանտի մէջ, առանց զղջումի. իր սիրելիներն ու ծառաներն իսկ խոյս կուտան իրմէ իր վերջին օրերուն։ Անոր, որ կ'ուզէր Հայոց Թագաւոր ըլլալ, գերեզմանին տեղն անգամ յայտնի չըլլար.* «Ոչ յիշեցաւ անուն նորա ի մէջ սըրբոց, եւ ոչ մատեաւ յիշատակ նորա առաջի սուրբ սեղանոյն յեկեղեցւոջն»։

## ՈՒԹԵՐՈՐԴ ՅԵՂԱՆԱԿ

*Վասակին չնորհազրկութեամբ եւ բանտարկութեամբ խնդիրը չվերջացաւ. ոչ ալ Հայաստանի մէջ տիրեց կատարեալ խաղաղութիւն։ Դուռը կոչուած նախարարներ եւ մա'նաւանդ եկեղեցականք կապանքի մէջ էին։*

*Քուշանք նորէն ոտքի ելած էին։ Յազկերտ խաղաց դէպի հոն. հայ բանտարկեալները տարուեցան ու պահուեցան Նիւշապուհ քաղաքի դղեկին մէջ։ Իսկ Յազկերտ իր անցած բոլոր տեղերուն մէջ կ'ահաբեկէր քրիստոնեայ ժողովուրդները։*

*Բել անուն Հոն մը, Թագաւորական ցեղէ, գաղտնապէս քրիստոնէացած, սաստիկ կը ցաւէր կապանքի մէջ գտնուած Հայոց վրայ. այս մարդը կ'երթայ Քուշանաց Թագաւորին եւ շատ կարեւոր տեղեկութիւններ կը հաղորդէ Հայաստանի հալածանքին, Ծորայ Պահակին խրամատութեան, Յազկերտի բանակին*

մէջ տիրող երկպառակութեան եւ ուրիշ կարեւոր խնդիրներու մասին։ Քուշանաց թագաւորը, թէեւ չուզեր պատերազմիլ, բայց կ'օգտուի առիթէն, կ'իյնայ Յազկերտի բանակին վերջին թեւին վրայ, կ'աւրէ զայն, կ'ասպատակէ արքունի գաւառներ եւ կը վերադառնայ իր տեղը։

Այս ձախողութիւնը քիչ մը կը թուլցնէ Յազկերտին հպարտութիւնը։ Մոգեր դարձեալ առիթ կը գտնեն ամբաստանելու կապուած քրիստոնեաները։ Այս ձախողութիւնը, կ'ըսեն, արդիւնք է մեր աստուածներու բարկութեան, որ ողջ պահեցիր Քրիստոնեաները։ Նոյն իսկ կը ստեն եւ կ'ըսեն թէ Քրիստոնեայք բանտի մէջ կ'անիծեն քեզ։

Դենշապուհին կը յանձնուի հայ բանտարկեալներուն հարցափորձի խնդիրը։ Դենշապուհ արդէն ծանօթ է Հայաստանի, Վարդանանց Պատերազմէն յառաջ, ուր ղրկուած էր խիստ հրահանգներով, հիմայ բաւական դիւրութիւն եւ պատրաստութիւն ունի Հայոց հետ խօսելու, վիճելու, մա'նաւանդ որ ծանօթներ ալ ունի անոնց մէջ, ինչպէս Սուրբն Յովսէփ, Ղեւոնդ Երէց, Սահակ Եպս. Ռշտունեաց։

Առաջին հրամանը կը տրուի Սամուէլ Քհյ.ի եւ Աբրահամ Սարկաւագի համար, որ կարաւանի մէջ էին, որպէս զի գաղտնապէս սպաննուին. իսկ Նիւշապուհի բերդին մէջ կապուածները տասնը հինգ օթ (գօնագ) հեռի էին արդէն կարաւանէն։ Ասոնց չարչարանքին գործը յանձնուած էր Ապար աշխարհի Դենպետին, որ «քան զբազում գիտունսն եւս տեղեակ էր զրադաշտական օրինացն»։ Քառասուն օր տանջանքներուն եւ զրկանքներուն ամէնէն ծանրին կ'ենթարկէ եկեղեցականները՝ զատելով նախարարներէն,

կարծելով թէ այդ կերպով կամ պիտի մեռնէին կամ պիտի ընդունէին մոգութիւնը։ Հակառակ իր ջանքերուն, բանտարկեալները աւելի զուարթութեամբ եւ գիտակցութեամբ կը համբերեն։ Գիտուն Դենպետը անձամբ կը հսկէ անոնց վրայ եւ վերջապէս հիացումով ու համոզումով ինքն ալ քրիստոնեայ կ՚ըլլայ բանտի մէջ եւ Վարդանանց յիշատակներով այնքան կը տոգորուի, որ հաւատքի ազատութեան համար նահատակուող քաջերուն երանելի խումբերը կը տեսնէ տեսիլքով. նոյն իսկ կը ճանչնայ Վարդանը, Արտակը, Խորէնը։

Դենշապուհ կ՚ապշահարի, երբ կ՚ստուգէ Դենպետին քրիստոնէանալը, եւ կը տեղեկագրէ Յազկերտին։ Այդպիսի գիտուն եւ երեւելի անձնաւորութեան մը քրիստոնէացումը ինքնին մեծ հարուած մը կը նկատուի մոգութեան, եւ կ՚աքսորուի երկրին հեռաւոր մարզերը։ Այս դէպքէն ետքը՝ Դենշապուհ բոլորովին լիազօրութիւն կ՚ստանայ Յազկերտէն՝ կապեալներու կեանքին եւ մահուան վրայ։

Դենշապուհ իրեն օգնականներ կ՚առնէ երկու մեծ պաշտօնակալներ եւս, Ջնիկանն Մարզպետը եւ Մովան Հանդերձապետը, եւ գիշերանց աւելի հեռի, եւ գէշ տեղ մը փոխադրել կուտայ կապեալները։ Բացի դահիճներէն ոչ ոք չարտօնուիր անոնց մօտենալու։ Բարեբախտաբար Խուժիկ անուն ասորի մը, արքունի զօրքերէն, «որ ի ծածուկ ունէր զքրիստոնէութիւնն», դահիճի պաշտօնով կը գտնուէր դահիճներու խումբին մէջ, որուն վիճակեցաւ հսկողութեան գործը նախարարաց վրայ։

Այս դժնդակ, ապառաժուտ, անբոյս տեղին վրայ երկայն պարաններով երկու երկու իրարու կա-

պուեցան եկեղեցականներ եւ քարշ տրուեցան: Այս չարչարանքը չահաբեկեց եւ չկակղեցուց զանոնք:

Նոր խոստումներ, նոր սարսափներ, նոյն իսկ կրօնական երկար վիճաբանութիւններ անօգուտ կը մնան: Դենշապուհ թէ՛ կը կատղի եւ թէ՛ կը հիանայ: Այնքան պաղարիւն եւ զուարթուն կը մնան անոնք:

Առաջին նահատակը կ'ըլլայ Արշէն Երէց, որ պրկոցներու մէջ չարչարուելէ ետքը կը գլխատուի:

Դենշապուհ ողոքիչ խօսքերով կ'ուզէ սիրաշահիլ Ռշտունեաց Սահակ Եպս.ը եւ Յովսէփ Կաթողիկոսը, եւ կ'ըսէ. «Մէկ ու կէս տարի մնացի Հայոց աշխարհին մէջ, եւ չեմ յիշեր որ քու մասին գանգատ մը լսած ըլլամ. մա՛նաւանդ Յովսէփի մասին. «զի դա իսկ էր իշխան ամենայն քրիստոնէից, եւ հաւատարիմ յամենայն իրս արքունի»: Ինէ յառաջ եղող Մարզպանն ալ գոհ էր այս մարդէն, եւ ես աչքովս տեսայ, «զի որպէս հայր հաստատուն համարեալ էր ամենայն աշխարհին, եւ անաչառութեամբ սիրէր զմեծամեծսն եւ զփոքունս»:

Դենշապուհ, Ղեւոնդ Երէցին շատ կը նեղուի, եւ կ'ուզէ այդպիսի շատ հրապուրիչ խօսքերով զատել անկէ Սահակն ու Յովսէփը: Արդէն, կ'ըսէ, ան հիւանդոտ է, բժիշկներէն օգուտ մը չէ տեսեր. «հիւանդոտ կենօք ձանձրացեալ է, եւ փափաքի ի մահ քան ի կեանս»: Վերջապէս կը յիշեցնէ՝ թէ ես ձեր հետ երկար խօսիլ, վիճիլ չեմ ուզեր. բայց որովհետեւ ձեզ կը սիրեմ, ձեր աշխարհին աղն ու հացը կերած եմ, «գութ եւ սէր ունիմ ընդ աշխարհին ձեր», այս պատճառաւ կ'ուզեմ որ ապրիք:

Դիպուկ եւ արիական պատասխաններով՝ անյա-

*ջողութեան կը մատնուի Դենշապուհ: Անյողդողդ են ամէնքն ալ: Փորձ մըն ալ կ՚ուզէ ընել, եւ զատելով իրարմէ զանոնք, առանձինն կը խօսի Ռշտունեաց Սահակ Եպիսկոպոսին հետ, կ՚ուզէ անոր ձեռքով քանդուած ատրուշաններուն խնդիրը ստուգել իրմէ: Դենշապուհին եւ Սահակ Եպս.ին վիճաբանութիւնը շատ հետաքրքրական է: Դենշապուհ այնքան կը զայրանայ եւ կը կատղի, որ յանկարծ կը քաշէ իր սուսերը եւ հարուած մը կ՚իջեցնէ Եպիսկոպոսին աջ ուսին վրայ եւ Թիկունքին հետ աջ ձեռքը վար կը ձգէ:*

*Այլ եւս վերջ գտած է հարցուփորձը: Ղեւոնդ առաջին տեղը կուտայ Յովսէփին, իր աստիճանին կարգով, եւ այդպէս քով քովի կը շարուին եւ կը գլխատուին միեւնոյն տեղը: Կարգով նահատակուողներն են*

Սահակ Եպիսկոպոս Ռշտունեաց·
Սուրբն Յովսէփ, Վայոց Ձորի Հողոցմանց գիւղէն·
Ղեւոնդ Երէց, Վանանդի Իչեւանից գիւղէն·
Մուշէ Երէց՝ Աղբակէն·
Արշէն Երէց՝ Բագրեւանդի Եղեգիկ գիւղէն·
Քաջաջ Սարկաւագ՝ Ռշտունիքէն:

*Ասոնց հետ պէտք է յիշել Նիւշապուհ քաղաքի գիտուն Մոգպետը կամ Դենպետը, որ աքսորուած էր: Նոյնպէս,*

Թաթիկ Եպս., որ Ասորեստանի մէջ նահատակուեցաւ·
Սամուէլ Երէց, Այրարատի Արածոյ գիւղէն·
Աբրահամ Սարկաւագ, նոյն գիւղէն·

Ինչպէս նաեւ երկու հոգի, որ Վատգետքի մէջ նահատակուած են:

Առաջին վեցերուն նահատակութեան վայրն է Նիւշապուհ քաղաքի սահմաններուն մէջ Ապար աշխարհին անապատը, Հրոտից ամսու 25–ին:

Հայ եկեղեցականներուն արիութիւնը տանջանքներու մէջ եւ մահուան առջեւ, բոլորովին կը խռովէ Դենշապուհը եւ իր երկու գործակիցները: — «Զի՞նչ գործեսցուք, զի՞նչ արասցուք վասն անքնին աղանդոյն քրիստոնէից· քանզի մինչդեռ կենդանի էին, զարմանալի էր կեանք նոցա· ընչատեացք էին իբրեւ զանկարօտս, սրբասէրք էին իբրեւ զանմարմինս, անաչառք էին իբրեւ զարդարադատս, աներկիւղք էին իբրեւ զանմահս»:

Դահիճներու գլխաւոր ջանքն եղաւ նահատակներուն ոսկերքը չհասցնել քրիստոնէից ձեռքը, որոնց քով այնքան յարգի պիտի ըլլային: Այս էր պատճառը, որ անապատ տեղ կատարեցին նահատակութիւնը: Եւ սակայն Խուժիկը, որ դահիճներու մէջ էր, նահատակութենէն վերջը, երբ ապահով եղաւ, որ այլ եւս ոսկերաց մասին հոգ ընող չկայ, իրեն նման տասը դաղտնի հաւատացեալներ կ'առնէ· վեց սուրբերուն մարմինները երկու փարսախ աւելի հեռի տեղ մը կը փոխադրէ նահատակութեան վայրէն, եւ հոն կը մաքրեն, կը կազմեն «զոսկերս երանելեացն», եւ գաղտուկ մասունքներ կը բերեն կարաւանը· եւ ետքը կամաց կամաց կը յայտնեն նախ Հայ զօրականին եւ ետքը շատ մը քրիստոնեաներուն, որ բանակի մէջ էին: Եւ առաջին ընծան կը նուիրեն կապեալ նախարարներուն, որոնց ազատութեան հրովարտակը տրուած էր արդէն:

*Եղիշէ դիտել կուտայ, թէ այս նահատակութեան բոլոր մանրամասնութիւնները ինքն լսած է Ասորի Խուժիկէն։*

*Այս Խուժիկը, վեց սուրբերուն ոսկերքը կը հանգչեցնէ զատ զատ տապաններու մէջ եւ տապանագիր ալ կը գրէ անոնց վրայ։*

## ԴԱՐՁԵԱԼ ՎԱՍՆ ԽՈՍՏՈՎԱՆՈՂ ԱՇԱԿԵՐՏԱՑ ՆՈՑՈՒՆՑ

*Կարգը եկած էր նահատակեալ Ղեւոնդեանց աշակերտներուն։ Ասոնք ալ միասին կապանքի մէջ էին իրենց վարդապետներուն հետ։ Ասոնց հետ էին նաեւ ուրիշ հինգ ասորի քրիստոնեաներ։ Ամէնքն ալ չհաւանեցան ուրանալ իրենց հաւատքը. դահիճներ ծեծով չարչարեցին զանոնք եւ կտրելով անոնց քիթերն ու ականջները աքսորեցին Ասորեստանի խորերը։*

*Ասոնց մէջ, Խորէն եւ Աբրահամ, ամէնէն համեստները, դահճապետին ուշադրութիւնը կը գրաւեն, կ'ենթարկուին հարցուփորձի մը։ Խորէն հիանալի համարձակութեամբ կը պաշտպանէ նահատակեալ վարդապետները, յայտնելով, թէ* «զի ոչ դուզնաքեայք ոք էին նոքա, այլ ունէին ստացուածս հայրենիս ըստ արժան բաւականին, ըստ նմին եւ սպասաւորս, էր որ իբրեւ զմեզ, եւ էր որ յաւագոյն քան զմեզ, որոց սնուցեալ եւ ուսուցեալն էր»։

*Դահճապետն սաստիկ կը զայրանայ այս համեստ եւ հաւատարիմ սպասաւորներու աներկիւղ պատասխաններէն եւ քարշել կուտայ զանոնք այնքան անագորոյն կերպով, որ շատեր կը կարծէին, թէ մեռան։*

Երեք ժամ ետքը՝ կ՚արթննան, դարձեալ կը խօսին, եւ առ ոչինչ կը համարին գործադրուած չարչարանքը։ Իւրաքանչիւրը վեց դահիճներու անդուլ ծեծին տակ կիսամեռ կը մնան, եւ այսչափն ալ չըաւեր, երկուքին ալ ականջները կը կտրեն, եւ այնպէս մը կը բրեն, «որպէս թէ չիցէ լեալ ի տեղւոջն»։ Ասոնք զուարթ են, եւ կ՚ուզեն մեռնիլ իրենց Վարդապետներուն պէս։ Դահճապետը, փոխանակ զայրանալու, այս անգամ կը մեղմանայ եւ կը յայտարարէ, որ եթէ չատ մնայ անոնց մօտ, զինքն ալ հաւատքի պիտի բերեն։ Ձեր պատիժը, կ՚ըսէ, այսչափ է, պիտի աքսորուիք Ասորեստան եւ այս վիճակին մէջ եւ պիտի ըլլաք «մշակ յարքունիս», որպէս զի քրիստոնեաներ ձեր վրայ նայելով չյամառին իրենց հաւատքին մէջ։

Խորէն եւ Աբրահամ կը պատասխանեն, թէ «Դու զմեր երկիրս կիսագործ թողեր, մեք յարքունի երկիրն կէս մարմնովք մերովք ոչ վաստակեմք»։

Դահճապետը, կարծես խղճահար, կ՚ըսէ․ հերիք է որ այս տեղէն երթաք Ասորեստան, ուր ազատ էք շրջիլ ձեր ուզած կերպով։

Ասոնք են ՀԱՅՈՑ ԽՈՍՏՈՎԱՆՈՂՔ, որոնք խինդով չարչարուեցան եւ խեղանդամ եղան։ Եւ որովհետեւ զրկուեցան սուրբ մահէն (նահատակութենէն), սգով եւ տրտմութեամբ կ՚երթան իրենց երկա՜ր ճամբան։ Ձեռքի եւ ոտքի կապանքը ծանր չէ իրենց համար․ իրենց ցաւը սա է, որ արժանի չեղան «հաւասարել ընդ քաջ նահատակսն»։

Խոստովանողներն կը հասնին Ասորեստանի Շահուղ գաւառը, եւ «թէպէտ եւ էին յարքունի պատուհասին», սակայն յայտ եւ գաղտ մեծ ընդունելութիւն կը գտնեն տեղւոյն քրիստոնէից կողմէն, եւ

*օգտուելով առիթէն՝ Ապար աշխարհի կապեալ նախարարներուն նպաստներ կը հաւաքեն ու կը ղրկեն, հաւանութեամբ քրիստոնեայ հարուստներուն :*

*Տասը տարի կը մնան աքսորի մէջ, միշտ հեռուէն ծառայելով Հայ կապեալներուն : Կը շրջին ամբողջ Ասորեստանն ու Խուժաստանը, յաճախ ճամբորդելով Շահուղէն, Մեչուն եւ Քաշկար քաղաքները : Սուրբն Խորէն չկրնար դիմանալ խիստ եւ ջերմ կլիմային եւ տաժանելի ճամբորդութեան, կը վախճանի ու պատուով կը թաղուի «ընդ սուրբ վկայսն» :*

*Աբրահամ Խոստովանող* «կայր ի նմին առաքինութեան անդադար» *երբ լրացան աքսորի տասներկու տարիները :*

*Երկրին քրիստոնեաներուն թախանձանքով Աբրահամ կը հաւանի վերադառնալ* «յաշխարհն Հայոց» *որպէս զի Հայեր անոր վրայ մարմնացած տեսնեն սրամահ եղած քաջ նահատակներն ու չարչարանքի սուրբ կապանքը :*

*Աբրահամ խոստովանողին մուտքն ի Հայաստան օրհնութիւն մըն է ամէն կերպով : Հրաշալի է Եղիշէին այն էջը, որ Աբրահամի վերադարձին նուիրուած է : Եւ ստուգիւ Հայոց հրաշալի* խոստովանողը *այնքան առաքինի եւ շինարար կեանք մը անցուց իր բնաշխարհին մէջ, որ* «Յոյնք երանի ետուն վասն նորա աշխարհիս Հայոց, եւ բազում բարբարոսք փութացան տեսանել զնա մարմնով» : *Եւ խաղաղ ու սուրբ մարմնով մը ծառայութեան մէջ վախճանեցաւ, կամ Եղիշէի բացատրութեամբ՝* «փոխադրեալ եղեւ յերկրէ յերկինս» :

*Աբրահամ Խոստովանողին պատմութիւնը վկայաբանական յօրինուածք մը ունի՝ Եղիշէի գրչին*

տակ։ Իսկ Ղ. Փարպեցի, աւելի ամփոփ և պատմական է այս մասին։ Փարպեցին կ'աւանդէ, թէ Աբրահամ Խոստովանող, Սուրբն Խորէնի վախճանումէն ետքը, Ասորեստանի քրիստոնէից երաշխաւորութեամբ ազատ արձակուեցաւ, եկաւ Հայաստան։ Հրեշտականման անձ մըն է Խոստովանողն, որ եպիսկոպոս կը ձեռնադրուի Բզնունեաց աշխարհին վրայ եւ կ'ըլլայ արդիւնաւոր առաջնորդ եւ ուսուցիչ մը(*)։

---

(*) Պէտք է դիտել տալ ընթերցողներուս նաեւ, թէ *Աբրահամ Խոստովանող* եղած է թանկագին մատենագիր մը, Ոսկեդարեան Դպրոցէն։ Ինքն է թարգմանիչը, Մարութաս Եպիսկոպոսի ԱՐԵՒԵԼԵԱՑ կամ ԱՐԵՒԵԼԵԱՑ ՎԿԱՅԻՑ Պատմութեան, ասորերէնէ, որ հրատարակուած է մեծ մասամբ ՍՈՓԵՐՔ ՀԱՅԿԱԿԱՆՔի շարքին, եւ որու առանձին եւ լման մէկ հրատարակութիւնը պատրաստ է շնորհիւ Ս. Էջմիածնի *Միհրան*՝ Հայր Գալուստի (որ վախճանեցաւ՝ 1918 Յունիս 13)։

Ուշադրութիւն կը հրաւիրեմ այս ոսկեղենիկ թարգմանութեան վրայ, այն պատճառաւ, որ Եղիշէի *Վարդանանց Պատմութեան* գրական յօրինուածքին եւ այս թարգմանութեան մէջ հետաքրքրական նոյնութիւն կայ։ Իրողութիւն մը, որ շատ կ'օգնէ Եղիշէի Վարդանանց Պատմութեան գրութեան ժամանակը ճշտելու։

Շատ հաւանական է, որ Աբրահամ Խոստովանող իր աքսորի երկոտասանամեայ ընթացքին՝ միայն Ապար աշխարհի մէջ բանտարկուած Հայ նախարարներուն եւ կապեալներուն նպաստ հասցնելով չբաւականացաւ. այլ նաեւ *ասորերէն սորվեցաւ* եւ Նփրկերտի Մարութաս Եպս.ին այդ շատ գեղեցիկ գործն ալ թարգմանեց ոսկի հայերէնի, անշուշտ շատ մեծ նմանութիւն գտնելով Ասորիստանի քրիստոնեաներուն եւ Հայաստանի քրիստոնեաներուն նահատակութեանց մէջ։

Եղիշէին՝ Աբրահամ Խոստովանողի նուիրեալ հոյակապ դրուագը ուղղակի հետեւողութիւն է նոյն ինքն *Արեւելեայց* Պատմութեան։

## ԱՆՈՒԱՆՔ ՆԱԽԱՐԱՐԱՑՆ, ՈՐՔ ԿԱՄՕՔ ԵՒ ՅՕԺԱՐՈՒԹԵԱՄԲ, ՎԱՍՆ ՍԻՐՈՅՆ ՔՐԻՍՏՈՍԻ, ԵՏՈՒՆ ԶԱՆՁԻՆՍ Ի ԿԱՊԱՆՍ ԱՐՔՈՒՆԻ

*Եղիշէ իր Պատմութեան* Ութերորդ Յեղանակին *մէջ կարգ մը մանրամասնութիւններ կուտայ, որոնք հետաքրքրական են։ Այդ մանրամասնութեանց գըլխաւորներն են կապանքի եւ աքսորի մատնուած հայ նախարարներու անունները ու անոնց ազատագրութեան պատմութիւնը եւ Հայոց Տիկիններուն համակերպութեան եւ կորովին նկարագրութիւնը, որով կը վերջանայ* Վարդանանց Պատմութիւնը։

*Նախարարաց անունները․*

Բարգէն եւ Բակուր, *երկու եղբայրներ յազգէն Սիւնեաց*։

Ներշապուհ, Շաւասպ, Շնգին, Մեհրուժան, Պարգեւ, Տանատ, *յազգէն Արծրունեաց*։

Համազասպեան, Համազասպ, Արտաւազդ, Մուշեղ, *յազգէն Մամիկոնէից*։

Արշաւիր, Թաթուլ, Վարձ, Ներսեհ, Աշոտ, *յազգէն Կամսարականաց*։

Վահան, Առանձար, Առնակ, *յազգէն Ամատունեաց*։

Ատոմ, *յազգէն Գնունեաց*։

Թաթուլ, Սատոյ եւ երկու ուրիշ ընկերներ, *յազգէն Դիմաքսենից*։

Շմաւոն, Զուարէն, Առաւան, *յազգէն Անձաւացեաց*։

Փապակ, Վարազդէն, Դադ (Դատ), *յազգէն Առաւեղենից*։

Ապրսամ, *յԱրծրունեաց տոհմէն*։

Սահակ, Փարսմաճ, *ի տոհմէն Մանդակունեաց*։

Վրէճ, *յազգէն Տաչրացեաց*։

Բաբիկ, Ցուխճաճ, *յՌափոննեան տանէն*։

«Այս երեսուճ եւ հիճգ արք, եճ որ յաւազ ճախարարացճ, եւ եճ որ ի կրտսերազուճիցճ»։ *Բայց ամէնքն ալ մարմնով նախարարազն են, իսկ հոգեկան առաքինութեամբ՝ երկնաւոր քաղաքացի։ Ուրիշ շատ մը մարդիկ ալ կային ասոնց հետ, արքունական տունէ կամ նախարարական տունէ, որք քաջ նահատակներուն մարտակից եւ նիզակից եղան*։

*Բայց մենք, կ՚ըսէ պատմիչը, միայն զարմացած չենք որ այս մարդիկ իրենց կամքով մտան փորձութեան մէջ, այլ մա՛նաւանդ սքանչացած ենք սա՛ իրողութեան, որ այսպիսի փափուկ մարդիկ, որ ձիունիզէն լեռներու ընդարձակասուն բնակիչներն էին, բնակիչը եղան խորչակաբեր դաշտերուն։ Անոնք որ աղատ երէներու պէս կը շրջէին ծաղկաբեր լեռներու մէջ, արեւելքի բոցակէզ աշխարհը նետուեցան կապեալ ոտքերով։ Նեղութեան հացը կերան եւ կարօտի ջուրը խմեցին. ցորեկին մութի մէջ արգիլուեցան, իսկ գիշերը մնացին անլոյս, առանց ծածկոցի, առանց անկողնի, կենդանիներու պէս գետնախշտի եղան* իճը տարի եւ վեց ամիս։ *Եւ այնպիսի մեծ ուրախութեամբ կրեցին այդ նեղութիւնները, որ ամենեւին տրտունջի խօսք մը չլսուեցաւ անոնց բերնէն, այլ* բարեկեցիկ *մարդոց նման, որ աստուածպաշտութեամբ կ՚ապրին, յորդառատ գոհութիւններ կու տային*։

*Եւ երբ այսպիսի նեղութիւններու մէջ էին, Յազկերտ կարծեց, որ այս սաստիկ վիշտերուն պատճառաւ ձանձրացած պիտի ըլլան իրենց դառն կեանքէն,*

մեծ Հաղարապետը (Միհրներսեհ) ղրկեց անոնց քով եւ յորդորեց, որ արեւին երկրպագեն եւ ազատ արձակուին, եւ տիրանան իրենց Հայրենի Հարստութեան։

Բուռն եղաւ տրուած պատասխանը․ «Մենք, ըսին, չգիտնալով չյամառեցանք, որ այս նեղութիւնները մեզ իմաստացնէին։ Մենք կը ցաւինք, որ առաջին նահատակներուն հետ չինկանք։ Այս մասին այլ եւս բան չհարցնէք, ինչ որ որոշած էք ընել մեզ համար, ըրէք լմնցուցէք։»

Միհրներսեհ, մտովի շատ գովեց անոնց հաստատամտութիւնն ու տոկունութիւնը, եւ սկսաւ շատ մեղմութեամբ վարուիլ անոնց հետ։ Եւ վերջապէս հանեցուց Յազկերտը որպէս զի զանոնք ազատ արձակէ կապանքներէն։ Որովհետեւ Միհրներսեհ, թէեւ պաշտօնանկ եղաւ, եւ շատ մը բաներու մէջ վնասակար գտնուեցաւ, նոյն իսկ Հայոց Աշխարհին աւերման պատճառ կը նկատէր ինքզինքը, եւ ասոր համար ալ «անարգանօք յուղարկեցաւ ի տուն իւր,» բայց մինչեւ իր կեանքին վերջը գէշ չխօսեցաւ Հայ կաղեալներու նկատմամբ։

Աւելի զարմանալի բաներ պատահեցան։ Կապեալներուն երիտասարդները իրենց կապանքին մէջ Հայերէն գրել կարդալ սորվեցան, ասիկա հոգեւոր սնունդ եղաւ անոնց, որով քաջալերեցին իրենք զիրենք եւ մխիթարեցին իրենց ընկերները։ Եւ այնքան «զմայլեցան ի միտս եւ յոգիս իւրեանց», որ ծերերն իսկ փափկացան, մատղաշ մանուկի պէս եղան։ Որովհետեւ թէեւ գրել կարդալու ատենը անցուցեր էին, բայց շատ մը սաղմոսներ բերնուց գիտէին եւ

*երգակից կ'ըլլային* «մատաղերամ բազմութեան մանկրտւոյն» :

*Այս արի եւ հոգեւոր կեանքը նոյն իսկ պահապան դահիճներուն վրայ կ'ազդէր. անոնք հաճոյքով կը լսէին քրիստոնէից երգերը, եւ հակառակ իրենց տըրուած խիստ հրամաններուն, շատ մը դիւրութիւններ կ'ընծայէին անոնց, սէր եւ խնամք ցոյց կուտային, եւ շատ անգամ անոնց կ'օգնէին նիւթապէս :*

*Նոյն իսկ այդ աշխարհին իշխանը, Հարեւշղոմ Շապուհ, որուն յանձնուած էին պատժաւորներ, մեծապէս գթով եւ սիրով վարուեցաւ անոնց հետ : Այնպէս որ անոնց մեծերը կը յարգէր իբրեւ հայր, իսկ երիտասարդները իբրեւ զաւակ կը գգուէր : Շատ անգամ գրեց Արքունիքին կալեալներուն համար, վերջապէս իր բոլոր միջոցներն ու հնարքները գործածեց եւ հաւանեցուց Յազկերտը, որ հրամայեց քակել անոնց կապանքը, հանել անոնց վրայէն պատժաւորի զգեստը եւ հագցնել նախարարական հանդերձը, եւ ռոճիկ կապեց անոնց եւ հրամայեց որ Արքունիքէն տրուի անոնց սպառազինութեան պէտքերը, որպէս զի արքունի զօրքերու հետ պատերազմի երթան (ընդդէմ Քուշանաց) :*

*Այս պատերազմին մէջ շատ քաջագործութիւններ ըրին Հայեր, ուր որ գացին, եւ ցոյց տուին որ իրենք կապանքի արժանի զինուորներ չէին : Իրենց զօրավարները գովութեան վկայականներ գրեցին Դուռը այս քաջերուն մասին, որոնք երբ պատերազմէն ետքը Տիզբոն վերադարձան, ներկայացան Յազկերտին, որ անուշութեամբ եւ խաղաղութեամբ խօսեցաւ անոնց հետ, խոստացաւ անոնց վերահաստատել զիրենք իրենց հայրենի իշխանութեան (Նախա-*

*մեծ Հազարապետը (Միհրներսեհ) ղրկեց անոնց քով եւ յորդորեց, որ արեւին երկրպագեն եւ ազատ արձակուին, եւ տիրանան իրենց հայրենի հարստութեան:*

*Բուռն եղաւ տրուած պատասխանը. «Մենք, ըսին, չգիտնալով չյամառեցանք, որ այս նեղութիւնները մեզ իմաստացնէին: Մենք կը ցաւինք, որ առաջին նահատակներուն հետ չինկանք: Այս մասին այլ եւս բան չհարցնէք, ինչ որ որոշած էք ընել մեզ համար, ըրէք լմնցուցէք:»*

*Միհրներսեհ, մտովի շատ գովեց անոնց հաստատամտութիւնն ու տոկունութիւնը, եւ սկսաւ շատ մեղմութեամբ վարուիլ անոնց հետ: Եւ վերջապէս հաճեցուց Ցազկերտը որպէս զի զանոնք ազատ արձակէ կապանքներէն: Որովհետեւ Միհրներսեհ, թէեւ պաշտօնանկ եղաւ, եւ շատ մը բաներու մէջ վնասակար գտնուեցաւ, նոյն իսկ Հայոց Աշխարհին աւերման պատճառ կը նկատէր ինքզինքը, եւ ասոր համար ալ «անարգանօք յուղարկեցաւ ի տուն իւր,» բայց մինչեւ իր կեանքին վերջը դէշ չխօսեցաւ Հայ կալեալներու նկատմամբ:*

*Աւելի զարմանալի բաներ պատահեցան: Կապեալներուն երիտասարդները իրենց կապանքին մէջ Հայերէն գրել կարդալ սորվեցան, ասիկա հոգեւոր սնունդ եղաւ անոնց, որով քաջալերեցին իրենք զիրենք եւ մխիթարեցին իրենց ընկերները: Եւ այնքան* «զմայլեցան ի միտս եւ յոգիս իւրեանց», *որ ծերերն իսկ փափկացան, մատղաշ մանուկի պէս եղան: Որովհետեւ թէեւ գրել կարդալու ատենը անցուցեր էին, բայց շատ մը սաղմոսներ բերնուց գիտէին եւ*

երդակից կ'ըլլային «մատաղերամ բազմութեան մանկըտւոյն» :

Այս արի եւ հոգեւոր կեանքը նոյն իսկ պահապան դահիճներուն վրայ կ'ազդէր. անոնք հաճոյքով կը լսէին քրիստոնէից երգերը, եւ հակառակ իրենց տըրուած խիստ հրամաններուն, շատ մը դիւրութիւններ կ'ընծայէին անոնց, սէր եւ խնամք ցոյց կուտային, եւ շատ անգամ անոնց կ'օգնէին նիւթապէս :

Նոյն իսկ այդ աշխարհին իշխանը, Հարեւշղոմ Շապուհ, որուն յանձնուած էին պատժաւորներ, մեծապէս գթով եւ սիրով վարուեցաւ անոնց հետ : Այնպէս որ անոնց մեծերը կը յարգէր իբրեւ հայր, իսկ երիտասարդները իբրեւ զաւակ կը գգուէր : Շատ անգամ գրեց Արքունիքին կապեալներուն համար, վերջապէս իր բոլոր միջոցներն ու հնարքները գործածեց եւ հաւանեցուց Յազկերտը, որ հրամայեց քակել անոնց կապանքը, հանել անոնց վրայէն պատժաւորի զգեստը եւ հագցնել նախարարական հանդերձը, եւ ռոճիկ կապեց անոնց եւ հրամայեց որ Արքունիքէն տրուի անոնց սպառազինութեան պէտքերը, որպէս զի արքունի զօրքերու հետ պատերազմի երթան (ընդդէմ Քուշանաց) :

Այս պատերազմին մէջ շատ քաջագործութիւններ ըրին Հայեր, ուր որ գացին, եւ ցոյց տուին որ իրենք կապանքի արժանի զինուորներ չէին : Իրենց զօրավարները գովութեան վկայականներ գրեցին Դուռը այս քաջերուն մասին, որոնք երբ պատերազմէն ետքը Տիզբոն վերադարձան, ներկայացան Յազկերտին, որ անուշութեամբ եւ խաղաղութեամբ խօսեցաւ անոնց հետ, խոստացաւ անոնց վերահաստատել զիրենք իրենց հայրենի իշխանութեան (Նախա-

բարութեան) մէջ եւ վերադարձնել զանոնք իրենց բնաշխարհը «օրինօք քրիստոնէութեան, յորոյ վերայ եւ մեծապէս չարչարեալ էին»։

Ուրախ զուարթ, բարձր ճակատով կը շրջէին անոնք «ի կարաւանին, առաջի թագաւորին» երբ որ Յազկերտ մեռաւ իր թագաւորութեան տասնեւիններորդ տարին։ Եւ իր երկու զաւակները գահը խլելու համար իրարու ձեռքէն՝ պատերազմի ելան, որ տեւեց երկու տարի։

Առիթէն կ'օգտուի Աղուանից թագաւորը եւ կ'ապստամբի Պարսից դէմ, որ թէեւ քեռորդի էր Յազկերտի կռուող զաւակներուն, բայց քրիստոնեայ էր Հայրենի հաւատքով, եւ Յազկերտի հրամանով բռնի ուրացած էր, եւ հիմայ կ'ուզէր ուրացութեան կեղտը մաքրել իր վրայէն։

Յազկերտի պզտիկ որդւոյն Դայեակը, Մեհրանեան Ռահամ, տեսնելով երկպառակութիւնը Պարսից բանակին մէջ, կը յարձակի Յազկերտի երէց զաւկին վրայ, կ'սպաննէ զայն եւ իր սանիկը, Պերոզը, կը թագաւորեցնէ։

Պերոզի իշխանութիւնը խաղաղ եղաւ. բայց չըհանդարտեցաւ Աղուանից աշխարհը, որուն ապստամբ թագաւորը խրամատեց Ճորայ Պահակը, Մասքութ զօրքերը ներս առաւ, իրեն միաբանեցուց «զմետասան թագաւորս զլեռնորդեայս», եւ երկար ատեն դիմադրեց Պարսից գնդին եւ շատ վնասներ հասցուց անոր։ Երկու երեք անգամ հաշտութեան գիր գրուեցաւ Պերոզի կողմէն, բայց անսասան մնաց Աղուանից թագաւորը եւ մեղադրեց Դուռը՝ Հայ նախարարներու կրած նեղութեան եւ տարապարտ մահերու համար։

*Դուքը ստիպուեցաւ Հոնները ոտքի հանել «սատանիկ գանձեր» տալով անոնց։ Աղուանք մեծապէս վնասուեցան այս անգամ․ պաշարումը սաստկացաւ, զօրքերը դասալիք եղան, որովհետեւ վարակիչ ախտ մը ինկաւ բանակին մէջ եւ գրեթէ երկրին կէսը կործանեցաւ։*

*Պերող նեղելու համար Աղուանից Թագաւորը կը պահանջէ իր քոյրը եւ քեռորդին, որովհետեւ քրիստոնեայ եղեր էին։ Իսկ «սքանչելի այրն», որ իշխանութենէն աւելի իր հաւատքին եւ գաղափարին համար կը կռուէր, կը համակերպի, եւ Թագն ալ կ'ուզէ Թողուլ։*

*Պերող կը զղջայ, եւ կ'ուզէ որ Աղուանից Թագաւորը մնայ իր գահուն վրայ, բայց նա կը հրաժարի, եւ միայն իր մանկութեան ատեն իր հօրմէն իր շնորհած* հազար երդ *սեփականութիւնը կ'առնէ եւ քաշուելով ապարէզէն՝ կը բնակի հոն միայնակեցներու հետ։*

*Այս բոլոր երկար խռովութիւններ պատճառ կ'ըլլան, որ Հայոց նախարարներ մինչեւ Պերոզի հինգերորդ տարին չկարենան արձակուիլ, բայց պատուով կը մնան արքունեաց մէջ․ եւ իր հինգերորդ ու վեցերորդ տարիներուն՝ բոլորն ալ ազատ կ'արձակուին։*



# ՏԻԿՆԱՅՔ ՓԱՓԿԱՍՈՒՆՔ ՀԱՅՈՑ ԱՇԽԱՐՀԻՆ

ԵՂԻՇԷ *կը փութայ յայտնել, թէ ինքն չկրնար համրել թիւը բոլոր Հայոց աշխարհի այն կիներուն, որոնց այրերը կապանքի ենթարկուեցան կամ մեռան պատերազմի մէջ: Չգիտցածս աւելի շատ է, կ'ըսէ, քան թէ գիտցածներս. որովհետեւ, կ'ըսէ,* հինգ հարիւրի *չափ յականէ յանուանէ կը ճանչնամ, ոչ միայն աւագագոյններէն, այլ նաեւ կրտսերագոյններէն:*

*Այս կանայք կարծես թէ տարբերութիւն չունէին անոնցմէ,* «որ ոչ ճաշակեցին զաշխարհ»: *Աւագ թէ կրտսեր՝ հաւատքի միեւնոյն առաքինութիւնը հագուեցան: Ամենեւին չյիշեցին իրենց մայրենի ազատութեան փափուկ կեանքը. գեղջուկի պէս վըշտամբեր կեանքի համբերեցին: Թէեւ ունէին իրենց ձեռնասուն սպասաւորները, բայց յայտնի չէր, թէ իրենցմէ ո՞րը Տիկին էր եւ ո՞րը նաժիշտ. ամէնուն հագուստը միաձեւ էր, երկուքն ալ գետնախշտի էին:*

*Չեմ ուզեր այս հոյակապ հատուածը ամփոփել աշխարհաբար. այնքան խիտ եւ գեղեցիկ, այնքան նկարագեղ եւ դրական բարձր ճաշակով պատկերացած է հայ տիկիններու սուգն ու տոկունութիւնը, որ կ'արժէ զայն կարդալ բնագրին մէջ.*

— «Ոչ գոյր նոցա համեմ խահամոքք անուշարարյ առանձինն, եւ ոչ հացարարք որոշեալ ի պէտս սպասու ըստ ազատաց կարգի, այլ հասարակաց էր: Ծաքաթամուտն ըստ կարգի միայնակեցաց, որ յանապատս բնակեալ են: Ոչ ոք ումեք ջուր ի ձեռս արկանէր, եւ ոչ կրտսերք աւագաց դաստառակս մա-

տուցանէին. չանկաւ օշնան ի ձեռս փափկասուն կանանց, եւ ոչ մատուցաւ իւղ ի զուարթութիւն խրախութեան: Ձեղան առաջի սուրբ սկտեղք, եւ ոչ անկան բաժակակալք յուրախութիւն. չեկաց ուրուք նոցա նուիրակ առ դուրս, եւ ոչ կոչեցան պատուականք յարանց ի տանարս նոցա. չյիշեցան նոցա, թէ զուցէ ոք ամենեւին ի բնակսնունդ դայեկաց եւ կամ բնաւ ի սիրելի հարազատաց:

Փոշոտեցան եւ ծխոտեցան սրահակք եւ սրսկապանք նորեկ հարսանց, եւ սարդի ոստայնք ձգեցան ի սենեակս առագաստաց նոցա. կործանեցան բարձրագահք տանարաց նոցա, եւ խանգարեցան սպասք երախանաց նոցա. անկան կործանեցան ապարանք նոցա, եւ տապալեալ աւերեցան ամուրք ապաստանի նոցա: Զորացան ազազեցան բուրաստանք ծաղկոցաց նոցա, եւ տաշտախիլ եղեն որթք զինեբերք այգեաց նոցա: Աչօք իւրեանց տեսին զյափշտակութիւն արարոց իւրեանց, եւ ականջօք իւրեանց լուան զվիշտս չարչարանաց սիրելեաց իւրեանց. առան զանձք իւրեանց յարքունիս, եւ ոչ մնացին ամենեւին զարդք երեսաց իւրեանց:

Տիկնայք փափկասունք Հայոց աշխարհին, որ զրգեալք եւ զգուեալք էին յիւրաքանչիւր պատեռունս եւ ի գահաւորակս, հանապազ բոկ եւ հետի երթային ի տունս աղօթից, անձանձրոյթ խնդրեալ ուխտիւք՝ զի համբերել կարասցեն մեծի նեղութեանն: Որ ի մանկութենէ իւրեանց սնեալ էին ուղղովք զուարակաց եւ ամնովք էրէոց, խոտաբուտ կենօք իբրեւ զվայրենիս ընդունէին զկերակուրն մեծաւ խնդութեամբ, եւ ոչ յիշէին ամենեւին զսովորական փափկութիւնն: Սեւացեալ նեկան մորթք մարմնոց

նոցա. վասն զի ցերեկ արեւակէզք էին եւ զամենայն գիշերսն զետնաբեկք: Սաղմոսք էին մշտնջենաւորք՝ մրմունջք ի բերանս նոցա, եւ մխիթարութիւնք կատարեալք՝ ընթերցուածք մարգարէիցն: Միաբանեցին երկու երկու՝ իբրեւ ամոլք հաւանք եւ հաւասարք՝ ուղիղ տանելով զակօսն արքայութեանն, զի առանց վրիպելոյ հասցեն ի նաւահանգիստն խաղաղութեան:

Մոռացան զկանացի տկարութիւն, եւ եղեն արուք առաքինիք ի հոգեւոր պատերազմի. մարտ եղեալ կռուեցան ընդ մեղսն կարեւորս, հատին կտրեցին եւ ընկեցին զմահաբեր արմատս նորա: Միամտութեամբ յաղթեցին խորամանկութեանն, եւ սուրբ սիրով լուացին զկապուտակ ներկուածս նախանձուն. հատին զարմատս ագահութեան, եւ չորացան մահաբեր պտուղք ոստոց նոցա: Խոնարհութեամբ կոփեցին զամբարտաւանութիւն, եւ նովին խոնարհութեամբ հասին երկնաւոր բարձրութեանն: Աղօթիւք բացին զփակեալ դրունս երկնից, եւ սուրբ խնդրուածովք իջուցին զհրեշտակս ի փրկութիւն. լուան աւետիս ի հեռաստանէ, եւ փառաւորեցին զԱստուած ի բարձունս:

Այրիք որ ի նոսա էին՝ եղեն վերստին հարսունք առաքինութեան, եւ բարձին յանձանց զնախատինս այրութեանն: Իսկ կանայք կապելոցն կամօք կապեցին զմարմնաւոր ցանկութիւնս, եւ եղեն կցորդ չարչարանաց սուրբ կապելոցն. ի կեանս իւրեանց նմանեցին քաջ նահատակացն մահուամբ, եւ ի հեռաստանէ եղեն վարդապետք մխիթարիչք բանդարգելեացն: Մատամբք իւրեանց վաստակեցին եւ կերակրեցան, եւ զկարգեալ ռոճիկ նոցա յարքունուստ՝ ամ յամէ

թոշակ առնէին եւ տային տանել նոցա ի մխիթարութիւն: Անարիւն ճիպոտաց նմանեցին, որ երգոյն քաղցրութեամբ առանց կերակրանաց կեան, եւ կենդանի են միայն զօդն ծծելով, զանմարմնոցն բերեն զնմանութիւն:

Բազում ժմերաց հայեցան սառնամանիք, եհաս գարուն եւ եկին նորեկ ծիծեռունք, տեսին եւ խընդացին կենցաղասէր մարդիկ, եւ նոքա ոչ երբեք կարացին տեսանել զանձկալիսն իւրեանց: Ծաղիկք գարնանայինք յիշատակեցին զպսակասէր ամուսինս նոցա, եւ աչք իւրեանց կարօտացան տեսանել զգանկալի գեղ երեսաց նոցա: Սպառեցան բարակք որսականք, եւ խցեալ կուրացան արշաւանք որսորդաց:

Բնագրօք(*) յիշատակեցան նոքա, եւ ոչ մի տօնք տարեկանաց ոչ ածին զնոսա ի հեռաստանէ· ի նաշա-

---

(*) ԲՆԱԳԻՐ բուածը (յունարէն՝ *Տիփտիկոն*, որ նոյնպէս գործածուած է նախնեաց մատենագրութեան մէջ) ցանկ մըն է անուններու կամ յիշատակարան մը երկու թերթով, որոնց մէկ կողմին վրայ կ՚արձանագրուէր վախճանած, իսկ միւս կողմին վրայ կենդանի հաւատացեալներու անունները: Այս անունները կը յիշատակուէին Եկեղեցւոյ մէջ, Սուրբ Պատարագի միջոցին:

Եղիշէ երբ կը գրէ Վասակի մասին, թէ *«Ո՛չ յիշեցաւ անուն նորա ի մէջ սրբոց, եւ ոչ մատեաւ յիշատակ նորա առաջի սուրբ սեղանոյն յեկեղեցւոջն»* (*տե՛ս վերագոյն*, *էջ* 88), կ՚ակնարկէ այդ Բնագրին:

Մինչեւ հիմայ, Հայաստանեայց Եկեղեցւոյ մէջ պահուած է քրիստոնէական եկեղեցւոյ այդ վաղնջենի սովորութիւնը այլեւայլ ձեւով· եւ Սուրբ Պատարագի միջոցին թէ՛ ննջեցելոց եւ թէ՛ կենդանեաց յիշատակութիւնները՝ Պատարագչի եւ Սարկաւագաց կողմէն, *Բնագրին* կիրարկութեան, բարեփոխեալ կերպերն են:

տեղս նոցա հայեցան եւ արտասուեցին, եւ յամենայն յատեանս յիշեցին զանուանս նոցա: Բազում արձանք կանգնեալ էին յանուն նոցա, եւ անուանք իւրաքանչիւր նշանակեալ ի նոսա:

Եւ իբրեւ այնպէս յամենայն կողմանց ալէկոծ լինէին միտք նոցա, ոչ ինչ կասեալ թուլացան յերկնաւոր առաքինութենէն: Արտաքնոցն երեւէին իբրեւ այրիք սգաւորք եւ չարչարեալք, եւ յոգիս իւրեանց զարդարեալք եւ մխիթարեալք երկնաւոր սիրովն: Ոչ եւս սովորեցին հարցանել զեկեալ ոք ի հեռաստանէ, եթէ ե՞րբ լինիցի մեզ տեսանել զսիրելիսն մեր. այլ այն էին իղձք աղօթից նոցա առ Աստուած, եթէ որպէս սկսանն՝ քաջութեամբ ի նմին կատարեսցին լի՛ երկնաւոր սիրովն»:

*Այս պատկերը հրաշալի է, եւ ցոյց կուտայ, թէ* Վարդանանց Պատերազմին *ատեն եւ ետքը՝ Հայոց Տիկինները ի՛նչպէս ըմբռնած էին Ազգին դատը եւ ի՞նչ զգացումներով եւ գիտակցութեամբ կրեցին իրենց ինկած բաժինը:*

*Եղիշէ շատ նկարագեղ է փափկասուն Տիկնանց պատմութեան մէջ. սակայն Ղ. Փարպեցին ալ կուտայ մեզ աւելի ամփոփ, բայց նոյնքան ճշգրիտ գիծերը Հայոց փափկասուն Տիկիններուն:*

*Եղիշէի ճոխ նկարագրութեան մէջ շատ ուշագրաւ են իր տուած ազգագրական տեղեկութիւններն ու սովորութիւնները հայ նախարարական տուներու ներքին կեանքին նկատմամբ:*



# ԴԱՍԵՐ
# ՎԱՐԴԱՆԱՆՑ ԵՒ ՎԱՀԱՆԵԱՆՑ ՊԱՏԵՐԱԶՄՆԵՐԷՆ

(ԱԶԳ, 1916, Մարտ 13 եւ շար.)

## Ա.

ՎԱՐԴԱՆԱՆՑ պատերազմը մեր ազգային–կրօնական կեանքին թերեւս միակ դրուագն է, որ քիչ թէ շատ ծանօթ է բոլոր Հայերուն: Կրնայ ըսուիլ, որ Հայեր շատ աւելի բան կ'զգան Աւարայրի պատերազմէն, քան այն անցքերէն, որոնք երէկ անցան Հայութեան գլխէն եւ կ'անցնին այսօր, այս պահուն:

Հայոց համար Վարդանանց պատերազմը այնքան դիւցազնական է, որչափ Տրովադայինը Յունաց համար: Արդէն, տեղ տեղ, Հոմերոս եւ Եղիշէ, կարծես նման պատկերներ կուտան ընթերցողին:

Վարդանանց դատին ու գործին համար եթէ ազգային գնահատումն այնքան անկաշկանդ կերպով բարձր մնաց եւ խանդավառումն՝ անզուսպ, բայց մեր մտաւորական դասակարգին մէջ բարձրագոյն քննադատութեան ենթարկուեցաւ Վարդանանց Պատերազմին պատմութիւնը, եւ դէթ իմ ծանօթութեան սահմանին մէջ, Մ. Գարագաշեանէն սկսեալ երբ Վասակի մասին նպաստաւոր կարծիքներ յայտնուեցան, զուտ քննադատական այս շարժումը ասպարէզ տուաւ թեթեւսոլիկ միտքերու, որպէս զի դատապարտեն Վարդանի քաջագործութիւնը, իբրեւ «կղերամիտ»

մարդու մը գործերը, եւ Վասակը գովաբանեն, իբրեւ միակ անձնաւորութիւնը այդ շրջանին, որ իբրեւ թէ զուտ ազգայնական ոգիով աշխատած ըլլայ: Գարագաշ, երբ Վասակի մասին կը խօսի, այնքան յառաջ չերթար, որ Վարդանի արժանիքին սոուեր ածուի:

Օտարաձայնութեան եւ նորաբանութեան ախտը վտանգաւոր է, մա՛նաւանդ այն ատեն, երբ վարկպարագի՛ են ատոնք եւ արդիւնք խակամիտներու գրական շռշռկանքին: Վարդանանց Պատերազմին նշանակութիւնը պէտք է պահել իր իրական եւ աւանդական վիճակին մէջ. որովհետեւ Հայ ժողովուրդի ազգայնութեան առաջին հրաշակերտ ապացոյցն է այդ, եւ Հայութիւնը, նոյն իսկ իւր զգացողական խանդավառութեամբ տեսած է Աւարայրի քաջագործութեան մէջ իւր ապրելու իրաւունքին, իր ազգային գոյութեան պաշտպանութեան գինը: Այս իսկ պատճառաւ կ'ուզեմ քանի մը պատմական իրողութիւններու վրայ ուշադրութիւն հրաւիրել, որոնք պիտի դիւրացնէին Վարդանանց Պատերազմին շիտակ ըմբռնումը:

Առաջին իրողութիւնը սա է, որ Յազկերտ Բ. ինքն չստեղծեց Վարդանանց պատերազմին պատճառները: Յազկերտ Բ. հակառակ մեր ազգային պատմիչներու տուած նկարագրին, Սասանեան հարստութեան խելացի Շահերէն մէկն էր, որ Միհր Ներսեհի պէս յոյժ իմաստուն Վզրուկի մը հետ արժանապէս վարեց իւր իշխանութիւնը: Թէ՛ Յազկերտ Բ.ի եւ թէ՛ Միհրներսեհի իմաստութիւնն ու բարեացակամութիւնը դէպի Հայեր, կը յայտնուի եւ կը չեշտուի Վարդանանց պատերազմէն ետքն իսկ,

երբ փուրսիշը (հարցուփորձը կամ դատավարութիւնը) կ՚աւարտի, Նահատակեալ Վարդանի եւ իրեններուն արժանիքը կը գնահատուի պաշտօնապէս եւ Վասակ կը դատապարտուի շնորհազրկութեան եւ բանտի։

Պէտք է գիտնալ, որ Քրիստոնէութիւնը անքանչելապէս զարգացած էր բազմակրօն Պարսկաստանի ընդարձակածաւալ պետութեան մէջ, եւ այս զարգացումը երկիւղ կ՚ազդէր պետական կրօնքին—մազդէականութեան—, այնպէս որ Սասանեան Շահեր որոշեցին կասեցնել Քրիստոնէութեան աճումը Պարսկաստանի մէջ, որպէսզի պետական կրօնքը միայն ծաւալի եւ տիրէ եւ միւս բոլոր կրօններ, որոնց նորագոյնը եւ հզօրագոյնը, Քրիստոնէութիւն, վերջանան եւ այլակրօն ազգութիւններ եւ ցեղեր միանան կրօնքով ալ միապետական մականի մը ներքեւ։ Ասիկա պատմական այն սխալներէն էր, զոր Սուլթան Համիտ Բ. եւ արդի Ժէօն-Թիւրք կառավարութիւնը ուզեցին գործադրել Թուրքիոյ մէջ, և աւելի հեռաւոր ինքնախաբէութեամբ, բովանդակ իսլամական աշխարհի մէջ։ Իբրեւ թէ՝ երբ այլազան ազգեր եւ լեզուներ՝ կրօնական միակ եւ պաշտօնական կապով միանան, այդպիսի միաձեւութիւն մը, պիտի կրնար դիւրացնել ազգային կամ արիւնային համաձուլումը, որ պիտի ըլլար՝ Թուրքերու խելքով համիսլամութիւն եւ Սասանեանց խելքով՝ համամազդէականութիւն։ Բան մը որ չյաջողեցաւ եւ պիտի չյաջողի։

Արդ՝ Պարսկաստանի մէջ, Որմզդեանն Շապուհ Ա., Երկայնակեաց, որ 40 տարի իշխեց (232—272), ամէնէն յայտնի հալածիչը եղաւ Պարսիկ Քրիստո-

նէութեան, որու բազմաթիւ եկեղեցիները կը պայծառանային, նախանձելի բարեկարգութեամբ եւ ճոխութեամբ: Անգութ եղաւ Շապուհի հալածանքը, Քրիստոնէութիւնը տկարացաւ, բայց չընկճեցաւ:

Սասանեան այդ քաղաքականութեան շարունակութիւնն էր, որ հաշտ աչքով չէր դիտեր Հայոց, Վրաց, Աղուանից, եւ Կովկասեան ուրիշ ժողովուրդներու քրիստոնէական աճումն ու բարգաւաճումը այն մարզերու մէջ Պարսկաստանին, ուր քրիստոնէութիւնը պաշտօնական խստութեամբ հալածուած էր անգթօրէն:

Կովկաս սահմանակից ըլլալով քրիստոնեայ Բիւզանդիոնի կայսերական երկիրներուն, Հռոմներու ազդեցութիւնը, շնորհիւ կրօնակցութեան, հետըզհետէ զգալի կը դառնար հոն: Սասանեան տիրապետներու քաղաքականութեան տեսակէտէն ամենեւին հաճելի չէր այդ ազդեցութեան աճեցումը, եւ Յազկերտ Բ.ի առաջին գործը եղաւ ծառանալ Բիւզանդիոնի ազդեցութեան դէմ. հպարտ Հռոմները զիջան դիւրութեամբ, յոգնած ըլլալով Ատտիղասի յարձակումներէն: Յազկերտ Բ.՝ ետքը դարձուց իր ոյժերը Հոնաց եւ Քուշանաց դէմ, եւ եօթը տարի վատնեց այս վերջինները զսպելու համար. այս յաջողութիւններու շարքին՝ Յազկերտ ուզեց պետական լուծին տակ նուաճել Հայերը, Վիրքը եւ Աղուանքը: Եւ ասոնց ամէնէն դժուարինը Հայերն էին: Միհր Ներսեհ համոզուած էր, երբ կ'ըսէր Յազկերտին, թէ «յորժամ Հայք սերտիւ մեր լինին, Վիրք եւ Աղուանք այնուհետեւ մեր իսկ են»: Այս նպատակին յաջողութեան վստահ էին, քանի որ Վասակեանք, շնորհիւ Վասակի հնարագիտու-

թեան, խոստացեր էին իրենց հաւատարիմ գործակցութիւնը։

Ահա՛ այս է պատմական իրողութիւնը, որու մէջ պայթեցաւ Վարդանանց պատերազմը։ Թշնամին ներսէն էր, քան դուրսէն։ Եթէ Վասակ, իւր հզօր ազդեցութիւնը եւ սատանայի խելքը գործածէր հայ-ազգային կեանքը պահելու այն ձեւի տակ, որով հայկական միահեծան թագաւորութեան բարձումէն, այսինքն՝ 384էն ի վեր կը կառավարուէր, հաւանաբար տեղի պիտի չունենար Վարդանանց պատերազմը։ Վասնզի, ինչպէս, որ դիտել կուտայ Միքայէլ Փորթուգալ, Եղիշէի ձեռնհաս ուսումնասիրողներէն մէկը, Պարսից իշխանութեան ներքեւ գտնուող հայերը, թէեւ անկախ չէին, բայց երկար ատեն պահեցին Արշակունի թագաւորները. «Պարսիկք ոչ միայն կրօնից կատարեալ ազատութիւն տըուած էին, այլ մասնաւոր փոյթ ունէին Հայոց ազգութիւնը ամբողջ եւ յունականութենէ անխառն պահելու, քաջալերելով եւ պահանջելով հայերէն լեզուին գործածութիւնը։ Արդարեւ՝ Սասանեանց վարչութեան կերպը աւելի կեդրոնացեալ էր քան զՊարթեւացն, որք տէրութեան իւրաքանչիւր նահանգը յորդւոց յորդիս յաջորդող մէկ մէկ թագակապ-կուսակալի յանձներ էին։ Այդպիսի ինքնուրոյնութիւնք ուրիշ ամէն կողմերէ վերցուեր էին. բայց Հայք, Վիրք, Աղուանք եւ Լփնիք տարբեր բարուց եւ քաղաքականութեան տէր՝ եւ զօրաւոր եւ թշնամի ազգի մը (—Յունաց— Հոռոմոց) մերձակից գտնուելնուն համար, դեռ կը վայելէին իրենց բնիկ իշխանները. եւ Արտաշէս Գ.՝ Արշակունեաց վերջինը չէր ըլլար, եթէ անխաղաղասէր եւ

*անիմաստ նախարարաց թախանձանքը չհրաւիրէր զմարզպանութիւնը։ Զմոռնանք սակայն՝ թէ ինչ պակասութիւն որ ըրած ըլլան մեր նախնիք յառընչութիւնսն զոր ունէին դրացի ազգաց հետ, ասոնք բաւական չէին արդարացընելու Յազկերտի յարուցած հալածանքը. որովհետեւ Արտաշէս Երրորդի թագաւորելէն ի վեր, այս է գրեթէ երեսուն տարի, առանց ապստամբութեան եւ խլրտման հըպատակեր էին Պարսից (*)։ Զմոռնանք որ Սասանեան կառավարութեան հիմունքը հաստատեալ էին կրակապաշտ մոլեռանդութեան վրայ, որ հետզհետէ կը սաստկանայր քանի որ Քրիստոնէութիւնը կը ծաւալէր տէրութեան ամէն կողմը։ Դսրովենք այն կուրութիւնը, որ զկրօնական զգացմունս բըռնաբարելով՝ աւելի կը զօրացնէ զայն։* (Միf. Փորթ. էջ 34–35)։

*Քանի որ Արեւելեան Հայաստանը, Պարսից իշխանութեան տակ, այնքան ուշագրաւ առաւելութիւններ կը վայելէր, քան Արեւմտեան Հայաստանը Յունաց իշխանութեան տակ, եւ քանի որ Հայք Արեւելեան Հայաստանի վայելած այս առանձնաշնորհումները կը վայելէին՝ Յունաց սահմանակից գտնըւելնուն համար, որպէս զի Պարսիկ կառավարութիւնը նոր դժուարութիւններ չունենար Արեւելեան Հայոց համակրութենէն ու հաւատակցութենէն, զոր ունէին Յունաց հետ, ուրեմն կը հետեւի որ իրաց վիճա-*

---

(*) Այս հաւաստումը կարօ՛տ է ստուգութեան։ — Որովհետեւ Քաջն Վարդանի ատեն Մամիկոնեանց քաշուիլը Մոկաց լեռներուն մէջ, ապացոյց է Հայոց ապստամբութեան եւ խլրտման։

կը (statu quo) կարելի էր երկար ատեն պահել, հակառակ Հայոց եւ դրկից ազգերու քրիստոնէացման, եթէ երբեք Վասակեանք չքաջալերէին չապուհեան ծրագրին գործադրութիւնը Հայաստանի եւ հետեւաբար Վրաստանի եւ Աղուանիստանի, եւայլն, երկիրներու մէջ, այնպէս կարծել տալով Տիզբոնի կառավարութեան, թէ Հայաստանը դիւրաւ կրնայ նըւաճուիլ, քանի որ իրեն՝ Վասակի՝ նման հանճարեղ նախարար մը, որ ո՛չ միայն Սիւնեաց Տէրն էր, այլ նաեւ Մարզպան եղած էր Վրաց աշխարհին, եւ այդ միջոցին Մարզպանն ըլլալով Արեւելեան Հայաստանի, ազդեցիկ դիրք մը ունէր Պարսիկ բարձր պաշտօնատարներու շարքին, առանց այլեւայլի կը վստահեցնէր Միհր Ներսեհը, թէ կրօնական ձուլման գործը շատ դիւրին էր...:

Ահա՛ թէ ինչո՞ւ համար կանխեցի դիտել տալ վերեւ այս առաջին իրողութիւնը, թէ ուղղակի Յազկերտ Բ. ինքն չստեղծեց Վարդանանց պատերազմին պատճառները:

Բ.

Երկրորդ իրողութիւնը սա՛ է. Վասակեանք բըռնելով Պարսից կողմը, կ՚արհամարհէին ազգային կամքը, ժողովրդական տիրող ոյժը, որ կազմակերպուած էր Հայաստանեայց Եկեղեցիով:

Արշակունեաց թագաւորութեան բարձումէն ետքը երկրին պաշտօնական վարիչներն էին նախարարներ. բայց իրականութեան մէջ տիրող ոյժը Հայ եկեղեցականութեան ձեռքն էր, որ կ՚անձնաւորէր Հայ ժողովուրդը, իբրեւ կրթիչն անոր միտքին եւ ուսուցիչը քրիստոնէական լոյս հաւատքին: Եկեղեցականութիւնը միացած ու նոյնացած էր ժո-

ղովուրդին հետ նաեւ ընդդէմ նախարարական հարստահարութեանց, Հայոց Եկեղեցւոյն բարերար, ժողովրդապետական դերը այս շրջանին շատ լաւ արտայայտուած է։ Այս դերը կղերապետական կամ եկեղեցապետական բնոյթ չունէր· որովհետեւ կղերը կամ եկեղեցին իրեն սեփական շահ մը չունէր· անոր սեփական շահը ժողովուրդին շահն էր։

Այս մասին ուշագրաւ է դարձեալ Մ. Փորթուգալի տեսութիւնը.— «Ոեւէ կրօնի պաշտօնեայք ամէն տեղ ժողովրդեան վրայ մեծ ազդեցութիւն ունեցող կարգ մի կը կազմեն։ Ուր քաղաքական իշխանութիւնը միահեծան է, թագաւորէն զատ ուրիշները քիչ շատ իրարու հաւասար են· ամենեցուն ոյժը կ'ամփոփէ մէկ հոգւոյ ձեռքը եւ քահանայութիւնը անոր օժանդակ եւ հպատակ կ'ըլլայ։ Բայց ուր երկրին ձեւակերպութենէն կամ ուրիշ հանգամանաց պատճառաւ աւանդական կամ տանուտէրական դրութիւնը կը տիրէ, անդ ժողովուրդը երկու կարգի կը բաժանի· մին թուով սակաւագոյն, բայց բռնութեամբ տիրապետող, կեղեքիչ եւ այլոց քրտանց պտուղը վայելող, եւ միւսը շատ աւելի բազմաթիւ, բայց աղքատ, տգէտ եւ ստրուկ։ Մինչ Հայոց աղատանին գոռոզացեալ զինուորութեամբ՝ որսի արշաւանօք կը զուարճանայր եւ կալուածոց եկամտօք կը ճոխանայր, շինականք կրկին արքունեաց՝ թագաւորին եւ նախարարին՝ գանձը լեցնելու համար կրկնակի հարկաց եւ տրոց ներքեւ կը ճընշուէին· եւ եթէ յանցանք մը գործէին, բացի դրամական տուգանաց՝ եւ գան ըմպէին յոլով։ Քրիստոնէութիւնն ի Հայաստան, ինչպէս եւ Միջին դարուց մէջ յԵւրոպա, անբանական ուժոյ յափշտակու-

թեանց եւ հարստահարութեանց տեղ հաւասարութեան սկզբունքը քարոզելով ու զրկեալ ու խեղճ ժողովրդեան միտքը արթնցնելով ու բարձրացնելով, կը բարձրացնէր նաեւ անոնց նիւթական վիճակը ու ի հիմանց կը քանդէր նախարարաց զօրութիւնը: Միւս կողմանէ՝ այդ նոր վարդապետութիւնը ներկայացնող եկեղեցականք՝ որք ինքզինքնին ազատաց կարգը դասեր էին եւ նոցա ամենայն առանձնաշնորհութիւնքն ունէին, ժողովրդեան անհամեմատ մեծագոյն բայց զրկեալ մասին պաշտպան եւ ազատարար կանգնելով նախարարաց դէմ, բընականաբար եւ նորա իրական տէրն եւ հրամանատարը կ'ըլլային: Արդար է եւս ասել՝ որ կրօնական մեծարեալ կերպարանքներէն զատ, ուսմամբ, գիտութեամբ, աշխարհաշէն եւ ազգօգուտ ձեռնարկութեամբ, նա մանաւանդ եւ հայրենի ազատութեան սիրովն, մնացեալ ժողովուրդէն եւ նոյն ինքն տանուտեարց խմբէն գեր ի վերոյ գտանէին: Յայս սակս մեր հայրապետքն քաղաքական իրաց մէջ աւելի կարեւոր մասնակցութիւն ունեցան քան իրենց հաւասար կամ աւելի նշանաւոր եպիսկոպոսունք Հռովմէական միապետութեան մէջ: Արքայական աթոռոյն առընթեր՝ կանգներ էին կաթողիկոսական աթոռը, որոյ տէրը թագաւորին պէս Արշակունի Պարթեւ իշխանաց ցեղէն կ'իջանէր, եւ անոր նման որդւոց յորդիս կը յաջորդէր: Բարոյական մեծ ազդեցութեամբն զոր ունէին՝ շատ անգամ յաջողութեամբ կռուեր էին քաղաքկան իշխանութեան հետ, եւ անոր տկարացած ատենը՝ նմա նեցուկ եւ պաշտպան եղան: Արքունի գահուն խորտակուելէն ետքը ոչ միայն իրենց իշխանութիւնը պահեցին Հայաս-

տանի մէջ, այլ եւ կը հրամայէին տակաւին Վրաց եւ Աղուանից ալ: Նոցա պահանջմամբ կամ խորհըրդով կը կարգուէին շատ անգամ սպարապետք, տանուտեարք եւ երբեմն ալ թագաւորք: Նոցա թախանձանքը եւ խնդիրքը աւելի ազդու էին դրացի եւ զօրաւոր արքունեաց առջեւ քան բնիկ թագակապ իշխանաց: Խնամութեամբ կամ ազգակցութեամբ եւ կամ հլու հնազանդութեամբ նոցա հաճելի եղող նախարարք նախապատիւ կ՚ըլլային քան պաղ եւ անտարբեր չարժողները: Այսպէս Մեծն Սահակ որ մասնաւոր փոյթ եւ խնամք կը տանէր իրեն խնամի Մամիկոնեան ցեղին որեարը կրթելու եւ լուսաւորելու, ի թախանձելոյ դստերն՝ Հայոց Սպարապետ անուանել կուտայ զիւր փեսայն զՀամազասպ Մամիկոնեան, հակառակ կամաց աւելի խոհեմ եւ հեռատես Վռամշապուհ արքայի, եւ թշնամի կ՚ընէ Բագրատունեաց տանուտէրը զՏիրոց, որոյ հայրը կամ նախորդը քաջ ասպետն Սահակ այնքան չքեղ յաղթանակօք եւ ծառայութեամբք պայծառացուցեր էր զսպարապետութիւնը: Բնական էր որ երեսէ ինկած նախարարք մասնաւոր ատելութիւն մը զգային եկեղեցականաց դէմ, ինչպէս որ ունեցեր էին այն թագաւորաց դէմ ալ՝ որք նոցա կռթներ կամ համամիտ գտնուեր էին: Կարելի է ըսել, թէ ոմանք ի հայրապետացն մերոց մոռացան, թէ շատ անգամ ինչ որ սովորական անհատի նկատմամբ առաքինութիւն կամ բնական պարտք մի կրնայ համարուիլ, իշխանաց համար պակասութիւն կամ յանցանք կ՚ըլլայ, թէ իշխեցողք՝ աշխարհիկ ըլլան թէ քահանայ՝ մահու չափ խորշելու են կուսակցութիւն յարուցանող առիթներէ, եւ թէ պարտին հաւասարա-

*կաց օգտէն զատ՝ մերձաւոր կամ ազգակից չունե-նալ»* (Անդ․ էջ 44–46)։

*«Նախարարական դրութիւնը սակայն, որ դշայս աւելի պինդ կազմութիւն ունեցող ազգաց բաղդատ-մամբ տկար պահեց, նոյա անհատական կորովյն աւելի դիմանալու պատճառ եղաւ։ Փոխանակ խառ-նամբոխ քաղաքաց մէջ դիզուելու եւ ապականու-թեան ենթարկուելու, ժողովրդեան աչխոյժ եւ գոր-ծունեայ մասը ընդհանրապէս ագարակներու մէջ եւ նահապետաց դղեկաց եւ աւանից բոլորտիքը սփռած կը բնակէր․ եւ թէպէտ Երասխայ դաշտին մէջ թա-գաւորաց կառուցած դաստակերտքն տակաւին կան-գուն եւ մարդաշատ էին, Հայաստանի մէջ՝ մանա-ւանդ թագաւորութեան վերնալէն իվեր՝ գիւղերը համեմատաբար աւելի կարեւորութիւն ստացեր, բազմացեր եւ չէնցեր էին։ Անդ ազատանին ործոր-դութեամբ եւ մնացած ժողովուրդը հողագործու-թեամբ պարապելով՝ մարմինին առողջ եւ սրտեր-նին առոյգ կը մնար, մինչ նախանձը կամ փառասի-րութիւնը վառ կը պահէր տանուտեարց պատերազ-մական ոգին։ Թո՛ղ այն երրորդ կամ չորրորդ հա-րստութիւնները զոր ունեցան Հայք յետագայ ժա-մանակաց մէջ, ի՞նչ հետք մնացեր էր ի հինգերորդ դարու՝ Աստրեստանեայց, Բաբելացւոց, Մարաց, Պարթեւաց եւ Իսրայելացւոց իշխանութիւններէն, որք Հայկազանց հետ կամ աւելի առքը ծներ եւ մեծ-ցեր էին։ Նոյն ինքն Հռովմէական մեծազօր ազգէն անուն մը կամ ստուեր մը միայն կայր․ իտալական բանակները կազմողներն եւ առաջնորդները վարձ-կան խուժդուժ զինուորք եւ զօրագլուխք էին․ իսկ արեւելեան կայսրութիւնը ջլատութեան, ապիկա-*

րութեան եւ աղքատութեան օրինակ միայն կրնար ըլլալ: Մինչդեռ Մարզպանութեան ներքեւ գտնուող Հայք, որք Յունաց բաժին ընկնող գաւառաց եւ առանձին կառավարուող Կորդուաց, Աղձնեաց, և Արզնարզինի բաղդատմամբ Հայաստանի մէկ կէսն անգամ չէին, իննսուն հազար զօրք կարող կը լինէին հանելու ու երեք բանակք կազմելու. Յազկերտի՝ Յունաց եւ Քուշանաց դէմ ըրած պատերազմներէն պարպուած արքունի գանձը կը լեցնէին կրկնապատկեալ տրոց եւ հարկաց կանոնաւոր վըճարմամբ, ի մեծ ապշութիւն Պարսից, որ նոցա կեղեքմանէն աւելի Հայոց իրական հարստութեան ապացոյց էր, եւ Խորազմի անապատին մէջ հայկական այրուձին մեծամեծ ծառայութիւններ կը մատուցանէր ապերախտ տանն Սասանեանց:

Իսկ եթէ ուզենանք գիտնալ թէ ի՛նչ ազդեցութիւն ունեցաւ քրիստոնէութիւնը Հայոց բարուց վըրայ, բաւական է բաղդատել Բուզանդայ՝ Արշակայ եւ Պապայ դարուն ըրած նկարագիրը Եղիշեայ աքսորեալ նախարարաց Տիկնանց նկարագրին հետ: Վըռամշապհոյ քսանամեայ իմաստուն կառավարութեամբ, ուսեալ եւ եռանդուն հայրապետաց ջանիւքը՝ աւետարանական սկզբունքը Հայոց մտաց եւ սըրտին մէջ տողորուեր էին. հայկական ընտանիքը սըրբուեր էր ի հեթանոսական խառնակութեանց. եւ առտընին կենաց մաքրութեամբը անհատից կորովը եւ կտրճութիւնն ալ աւելցեր էր: Ամէն կողմ դպրոցներ, ուսումնարաններ բացուեր էին եւ բեմբասացութիւնք հրապարակային դասախօսութեանց տեղը բռներ էին. Նախարարք ալ ատեն ատեն վէճերնին մոռնալով, ուսմանց եւ ընթերցման կը պարապէին

ու կը յորդորէին զդպրութիւնս․ երկրին ընտրելագոյն երիտասարդները ծաղկաքաղ մեղուաց նման, այն ժամանակի քաղաքականութեան գլխաւոր կեդրոններուն մէջ, հելլէն եւ ասորի դպրութիւնքը եւ գաղափարները հաւաքելով՝ դարձեր էին ի հայրենիս․ եւ թէպէտ դոցա Հայաստան բերած գիտութեանց ծիլերն հնացեալ կամ հիւանդ արմատէ առնուած էին, բայց արգաւանդ հողոյ եւ կազդուրիչ բնութեան մը ազդեցութեամբ՝ զօրաւոր կերպով աճեր եւ գեղեցիկ պտուղներ արտադրելու սկսեր էին։ Եթէ Սասանեանք կամ մեր կռուասէր նախարարք միջոց տուած ըլլային, հուժկու քաղաքակրթութիւն մը եւ ճոխ մատենագրութիւն մը պիտի գոյանար, յատուկ հայկական կերպարանօք, որոյ նախնծայքը եւ բեկորքը եւեթ մեր այնքան հիացումը եւ օտարաց զարմացումը կը շարժեն այժմ (Անդ․ էջ 58—60)։

Հայաստանի այս վիճակը, հինգերորդ դարուն մէջ, անչեղ եւ ճակատագրական հետեւանքն էր Քրիստոնէութեան, որ իր կարգին ծնունդ տուաւ հայերէն գիրերու գիւտին եւ Ոսկեդարուն, ուր տեղի ունեցաւ Վարդանանց պատերազմը։ Այս հսկայ աշխատութեան հեղինակներն ու անխոնջ վաստակաւորներն էին հայ եկեղեցականներ, որոնք Աւետարանով եւ հայերէն գրականութեամբ լուսաւորեցին տգէտ Հայութիւնը, սորվեցուցին անոր քաղաքացիական ոչ–ստրուկ կեանքը եւ ստեղծեցին հայ ժողովրդապետութիւնը, այնպէս որ բոլոր հայութիւնը իւր Եկեղեցին կը ճանչնար իբրեւ իւր գոյութեան պայմաններուն մարմնացումը։

Այս բացատրութիւններէն ետքը այլեւս շատ

դիւրին է հասկնալ, թէ Վարդանաց պատերազմը բղխած է ոչ թէ կրօնական մոլեռանդութենէ, ոչ թէ կղերական շահերէ, այլ ուղղակի Հայ Ազգին շահերէն, Հայ Ազգին կամքէն: Դարձեալ՝ շատ դիւրին է ըմբռնել, թէ այս կամքին հակառակ ոեւէ շարժում վնասակար պիտի ըլլար ազգային դատին, ո՛վ որ ալ եղած ըլլար հակառակ շարժման հեղինակը կամ պաշտպանը: Եւ Վասակի դատապարտութեան պատճառները յառաջ եկան նոյն իսկ այդ հակառակ շարժումէն:

Գ.

Երրորդ իրողութիւնը սա՛ է. Վասակին ծրագիրը, հայկական գահը վերականգնելու մասին, սխալ էր—վասնզի կարելի չէր:

Եթէ հայ նախարարները կ'ուզէին, որ Հայոց թագաւորական գահը մնար, պէտք չէր որ արշակունի վերջին Արտաշէսին գահազրկութիւնը պահանջէին, պատճառելով անոր հոյլ մը անարժանութիւնները. վասնզի առհասարակ, նոյն ինքն հայ նախարարներ աւելի արժանաւոր չէին: Արքունիքին կեանքը ամէն երկրի եւ ամէն իշխանութեան մէջ կ'ընդօրինակուի նախարարական պալատներու մէջ ալ: Մեծն Սահակի պէս կաթողիկոս մը ուզեց որ իր ախտաւոր ոչխարը պահուի, որովհետեւ զայն կը գերադասէր օտար գազանին: Բայց նախարարներու փառասիրութիւնները եւ իրարու հանդէպ սնուցած ատելութիւնները չէին հանդուրժեր բնիկ թագաւորի մը տկարութիւններուն. ուզեցին ազատ ըլլալ ազգային կապերէ, որպէսզի կարող ըլլան գոհացնել իրենց առանձնական փառասիրութիւնները, եւ հաճելի ըլլալով Պարսիկ Արքունիքին, խլել թագա-

կապ–մարզպանութեան կամ կուսակալութեան դիրքը: Սակայն Արտաշէս Գ.ին գահընկէցութենէն ետքը Տիզբոնի կառավարութիւնը աւելի իմաստուն եւ աւելի խղճամիտ գտնուեցաւ Հայոց հանդէպ քան զիրար բզքտող հայ նախարարները, տալով արեւելեան Հայաստանի կառավարութեան համար հայ կամ պարսիկ մարզպաններ, ամէնքն ալ արժանիքի տէր անձնաւորութիւններ, որոնց մէջ նոյն ինքն Վասակ Սիւնի:

Իրաց այս վիճակին մէջ Վասակի առանձին եւ պաղտնամիտ ձեռնարկութիւնը՝ հայ թագաւորութիւնը վերականգնելու համար՝ անիմաստ յանդըգնութիւն մըն էր, չըսելու համար անխելք. որովհետեւ Վասակ շատ խելացի անձնաւորութիւն մըն էր, եւ կարծեց որ իր խելքը բաւական պիտի ըլլայ խաբելու Ազգը եւ խաղցնելու Միհրներսեհի պէս փորձ եւ իրմէ աւելի խելացի եւ խորամանգ քաղաքագէտ մը, որ երկար տարիներէ ի վեր ղեկավարն էր Պարսիկ Պետութեան եւ շատ լաւ գիտէր Հայաստանի վիճակը եւ հայ նախարարներու իւրաքանչիւրին արժանիքը:

Վասակ շլացած իր կարողութենէն եւ իբր բարձր պաշտօնատար իր վայելած համարումէն Տիզբոնի Արքունիքին առջեւ, եւ անշուշտ քաջալերուած իրեն համախոհ նախարարութիւններէ, ուզեց վերականգնել Հայուն կործանեալ գահը. բայց իրականին մէջ այդ գահը կ'ուզէր իրեն համար կանգնել, եւ սաոր ամենեւին նպաստաւոր չէին արտաքին ու ներքին պայմանները: Այնպէս որ Մ. Փորթուգալ շատ իրաւամբ դիտել կուտայ Վասակի նկատմամբ, թէ «պէտք չէ փութալ գովելու զՀայաստան ինքնագլուխ ընելու

փափաքը․ այսպիսի մեծ գործ մը կամ անձնական մեծամեծ շահատակութեամբք եւ կամ այլոց քաջութեանը եւ աշխատութեանցը օգտակար եւ պատշաճ գործածութեամբը կրնար յաջողիլ։ Վասակ որ ի մարտի փղերուն կռնակը պահուըտող անձ մի էր, եւ զուրկ ըլլալով ի պատերազմական հանճարոյ, բաւական անձնուրացութիւն ալ չունէր այլոց յաղթանակներէն չզչարելու համար, չէր յարմար այդ նպատակը ի գլուխ հանելու (Անդ․ էջ 42)։

Կ'արժէ չեշտել անգամ մըն ալ, թէ ազգային դատին մէջ, զուտ նախարարական կամ կուսակցական շահի համար եւ այդ շահը պարտկելով ազգային շահի մը կեղեւով, ազգային կամքի ու գիտակցութեան հակառակ ծրագիրներ դարձնել, պարզապէս դաւաճանութիւն է։ Վասակ այսպիսի ծրագիր մը կը հետապնդէր ամէն գնով․ ամէն տեսակ դիմակ գործածեց, թէ իր Ազգին եւ թէ Տիզբոնի Արքունիքին առջեւ, որպէս զի յաջողի․ բայց իր բոլոր անուրանալի կարողութիւնները չծառայեցին իր գաղտնի նպատակին գործադրութեան, որովհետեւ նոյն ինքն խորագէտն Միհրներսեհ երեսանց կը մեծարէր Վասակը, բայց ներքնապէս «յոյժ դսրովէր զնա»։ Վասն զի նոյն ինքն Վասակի դէպի Դենիմազդեզ ցոյց տուած իրական հակումը, որ շատ հրապուրիչ պէտք էր ըլլալ Միհրներսեհի աչքին, ամենեւին օգտակար չեղաւ, քանի որ բուն Հայ ժողովուրդը որոշած, վճռած էր քրիստոնեայ մնալ եւ այս մասին շատ ամուր եւ շատ կտրուկ էր իր յայտարարութիւնը — «Ցայսմ հաւատոց զմեզ ո՛չ ոք կարէ խախտել, ո՛չ հրեշտակք եւ ո՛չ մարդիկ, ո՛չ սուր, ո՛չ հուր, ո՛չ ջուր, ո՛չ ամենայն զինչ եւ են դառն հարուածք։ Ա-

մենայն ինչ եւ ստացուածք մեր ի ձեռս քո, եւ մարմինք մեր առաջի քո կան, ըստ կամաց քոց արա զի՛նչ եւ կամիս: Եթէ սովին հաւատովք թողուս, ոչ յերկրի ա՛յլ տէր փոխանակեմք ընդ քեզ, *եւ ոչ յերկինս ա՛յլ Աստուած փոխանակեմք ընդ Յիսուսի Քրիստոսի, որ չիք ա՛յլ Աստուած բաց ի նմանէ»* (Եղիշէ):

*Ուխտապահները մինչեւ վերջը հաւատարիմ մընացին իրենց այս որոշման վրայ. միայն Վասակն էր որ հազար միջոցներու դիմեց եւ չյաջողեցաւ, եւ Վասակի այս գործին մէջ բռնած ընթացքը խելացի չէր: «Զի յայլ ժամս իմաստուն էիր, եւ ես գիտէի. զայս՝ գործ իմաստութեան ոչ գործեցեր»* (Եղիշէ):

Դ.

*Զորրորդ իրողութիւնը սա՛ է. Վարդանանց Պատերազմը, իբրեւ հայկական շարժում ազգային կարեւորութիւն ունի Հայոց համար եւ այս պատճառաւ ալ մեծ եւ տարածեալ հանգամանք մը առած է մեր ազգային կեանքին եւ պատմութեան մէջ. մինչ Պարսից պատմութեան տեսակէտէն պատմական կարեւոր դէպք մը չէ նկատուած: Արդի դիւանագիտական բացատրութեամբ պիտի ըսուէր* ներքին ապստամբութիւն *մը, որ կարգադրուած է: Այս է պատճառը, որ արտաքին պատմութեան մէջ չէ յիշուած Վարդանանց Պատերազմը:*

*Իսկ Հայութեան տեսակէտէն* Վարդանանց Պատերազմին *ազգային ստոյգ եւ ծանրակշիռ հանգամանքը լաւ հասկնալու համար, պէտք է շարունակել Քաջն Վարդանի սկսած շարժման պատմութիւնը, եւ Վարդանանց գործունէութենէն ետքը՝ սերտել նաեւ Վահանեանց գործունէութիւնը:*

Վասակին քաղաքականութիւնը վնասակար եղաւ. այսինքն՝ այսինչ կամ այնինչ նախարարին կամ բարձր ու դիրքի տէր անձերուն ուրացումն ազգային կրօնը եւ յարումը պարսիկ դենին, այլ եւ այլ շահերու նկատումներով, սոսկալի վիճակ մը ստեղծեցին Հայոց ներքին կեանքին մէջ։

Պարսիկ գերիշխանութեան ներքեւ գտնուող հըպատակ բոլոր քրիստոնեայ ազգեր գրեթէ ուժասպառ եղեր էին ի հաշիւ Պարսից կռուելով անապատներու մէջ եւ հեռաւոր սահմաններու վրայ։ Եղիշէ իր երկրորդ Եղանակին մէջ տխուր պատկերը կը գծէ Հայոց զինուորութեան։ Ասիկա անտանելի էր։ Մամիկոնեան Նախարարութիւնը, իբր Սպարապետութիւն, երկու հարիւր տարիներէ ի վեր լաւագոյն վիճակներու հասցուցեր էր Հայոց բանակը։ Եւ Վարդան Մամիկոնեան, որ Մեծն Սահակի ձեռքին եւ շունչին տակ կրթուած, ուռճացած, եղած էր իրապէս քաջ զինուոր մը, յարգի անձնաւորութիւն մը թէ՛ Բիւզանդիոնի եւ թէ՛ Տիզբոնի արքունեաց առջեւ, իբրեւ Ստրատելատ կամ Սպարապետ, որ քառասուն պատերազմներու մտած ելած, եւ իր զինուորի արժանիքը շինած ու փառաւորած էր, կսկիծով կը տեսնէր թէ «Այնպիսի պատուական զինուորութիւն հասեալ էր ի չարաչուք անարգութիւն, եւ հայրենի ազատութիւնն չարաչար կայր ի ծառայութեան մարդախոշոշ բռնաւորին, որ եւ ըստ հեթանոսաց օրէնս անցանէր արիւնհեղութեամբ»։ Այս վիճակը աւելի եւս վատթարացաւ, երբ բարձ ու դիրք ստանալու համար քաջալերուեցաւ հաւատուրացութիւնը Տիզբոնի կողմէն, եւ անարժաններու հոյլեր սկսան ճոխանալ Հայոց մէջ։ Վարդան իրաւամբ կը մարմ-

նացնէր իր քաջութեան մէջ Հայ Ազգին մաքուր ոյժը եւ մաքրութեան եւ բարձրութեան մէջ կարմրեցաւ Տղմուտի ափերուն մօտ:

Բայց Վարդանանց Պատերազմէն ետքը Հայ Զինուորութեան քաջութիւնը անարգէ աւելի վիճակի մը հասած կը նկատուէր Պարսից աչքին. բոլոր հպատակ ազգերու մէջ յետին եւ անպիտան էր Ասորի բանակը, բայց Ասորիէն աւելի անպիտան կը համարուէր Հայ բանակը: Եւ Վահան Մամիկոնեան, որ այդ անարգանքը կը լսէր չէր կրնար հանդուրժել:

Ղ. Փարպեցի շատ տխուր, բայց միանգամայն կենդանի գոյներով կը պատկերացնէ անարգութեան այդ վիճակը, ուր կը գտնուէր Հայութիւնը Վարդանանց Պատերազմէն ետքը. կեղտոտ նկարագիրները այնքան քաջալերուած էին, որ իրենց տուները իբրեւ անպիտան ամօթէն պահուըտողներ, անարժանապէս Պարսից Արքունիքէն ուրացութեամբ կը գնէին Տանուտէրութիւնը եւ ո՛չ թէ արժանաւորներու պէս՝ աստուածպաշտութեամբ կը տիրանային. անմիտ, վնասակար, անպիտան, վատ մարդիկ, որոնցմէ ոմանք լեռնախոյս աւազակներու նման մէջտեղ ելած իրենց ուրախութեամբ կը վերտէին, ոմանք կատակով ստուածներ կը գնէին, եւ այդ կերպով թէ՛ աստուածները եւ թէ՛ անմիտ վաճառողները միասին կը թշնամանէին. բոլորն ալ ստոյգ մարդոցմէ դուրս եւ անարժան ու անծանօթ՝ ազնուատոհմերու:

Ա՛լ Հայոց աշխարհին մէջ լաւութիւն հեռացած էր, իմաստութիւնը կորսուած, քաջութիւնը մեռած, քրիստոնէութիւնը թաքչած, եւ Հայոց զորքերը, որ երբեմն ուրիշ բոլոր զօրքերուն մէջ քաջա-

*նուն էին եւ զօրագլուխներն ալ անուանի եւ յաղթող, հիմա ամէնուն ծաղր ու ծանակ եղած էին. այնպէս որ նոյն ինք Պերոզ, յայտնապէս բոլորատեանին առջեւ նախատելով կ'ըսէր, թէ «Այր անպիտան եւ դունդ յետին, որ զամ մի յիմ իշխանութիւնն է՝ Ասորոց է. բայց քան զԱսորի՝ Հայն է այր յետին եւ անպիտան: Եւ էր լուրն այն արժանի լալոյ եւ ողբալոյ»* (Ղ. Փարպ., *էջ* 378–80):

*Վահան Մամիկոնեան, թէեւ պաշտօնապէս Տանուտէր չէր իր նախարարութեան եւ չունէր բանակ, բայց Ազգի աչքին միակ անձն էր որ կ'անձնաւորէր իր հօրեղբայր Վարդանը, չէր կրնար հանդուրժել այդ նախատինքին ու անարգանքին. եւ հետեւաբար, ուզեց հասկցնել Պարսից՝ թէ Հայեր վատ չէին. այլ վատ էին այն Հայեր, որ ազգային կամքին հակառակ եւ ի վնաս կը քաջալերուէին Տիզբոնի արքունիքէն՝ իրենց հաւատուրացութեան եւ քսութեան փոխարէն: Վահան գործի ձեռնարկեց, բայց աւելի դժուարութիւններու բախեցաւ քան իւր հօրեղբայրը: Վասակ Սիւնիի ջերմ կուսակիցներէն Խորխոռունեաց նախարար Գադիշոյ Մախազ եւ եւտքը Գդիհոն Սիւնի կը շարունակէին Վասակեանց քաղաքականութիւնը: Վահանին խրոխտ, բայց արդարացի ընթացքը մեղկացած նախարարներու դէմ, ատելի ըրած էին զինքն անոնց: Բանսարկութիւն եւ մատնութիւն այնքան անտանելի դարձուցին Վահանին վիճակը, որ այսպիսի* «մտացի, առողջախորհուրդ եւ բարեսէր» *քաջ մը՝ ստիպուեցաւ երթալ Դուռը եւ «տկարանալ ի հաւատս»: Սակայն ասով ալ չփակուեցաւ չարախօսներուն բերանը. վասն զի Վահան կ'ատէր այնպիսիները, որ չէին գիտեր խօսք խօսիլ*

«ի հրապարակի առաջի իշխանի,» նոյնպէս անոնք որ որսի կ'երթային կամ նշան կ'առնէին եւ չէին կրնար նետը թիրախին հասցնել՝ կը դատապարտէր զանոնք· կը նստի, կ'ըսէին, եւ ամէնքն ալ քթի տակէն կը ծաղրէ (նստի, ասէին, եւ ամենեցուն ունչս առնէ)։ Բոլոր անճարակ նախարարներ կամ գործակալներ, որ արքունի գործերու մէջ իրենց անմտութեան հետեւանքով, ձիրք մը չէին կրնար ցոյց տալ, պատճառը Վահան կը համարուէր։ Հակառակ այս բոլոր ներքին չարիքներու, Վահան կրցաւ իր դիրքը եւ կարողութիւնը բարձր բռնել Տիզբոնի կառավարութեան առջեւ, եւ երեք կռիւներու մէջ ցոյց տուաւ թէ Հայ մարդը վատթար եւ անպիտան չէ· եւ այս մասին Վահանին խօսածները Պարսից Միհրան զօրավարին, զորս Փարպեցին գրեթէ նոյնութեամբ պատմագրած է (Ղ· Փարպ· էջ 471–481) կ'արժէ, որ լաւ ուսումնասիրեն անոնք, որ Վարդանանց Պատերազմի մասին յստակ գաղափար մը կ'ուզեն ունենալ։

Վահան կը գտնուէր բարոյական անկումի մը անապատին առջեւ· վասն զի ո'չ միայն Վասակեանք չէին քնած, այլ նաեւ շատեր թուլցան կամ վատ գտնուեցան իր կռիւներուն մէջ եւ թշնամիին կողմն անցան։ Վահան, ատեն եղաւ որ միայն հարիւր եւ նոյն իսկ քառասուն, երեսո'ւն հոգիով մնաց պատերազմի դաշտին վրայ, բայց չվհատեցաւ եւ ապշեցուցիչ քաջագործութիւններ ըրաւ· եւ վերջապէս հասկցուց Պարսից Կառավարութեան, թէ սխալ էր ազգային զանգուածէն բաժնուելով, ազգային կամքին, ազգային հաւատքին դէմ գործող նախարարները, իրենց ուրացութեան համար քաջալերել, եւ Հայաստանի պէս հաւատարիմ եւ իւր վաստակ-

ներով նշանաւոր երկիր մը փճացնել: Վերջապէս Վահանի հետ գործ ունեցող երկու զօրապետներ, Միհրան եւ Հազարաւուխտ, կրցան համոզել Վաղարշը, թէ աւելորդ են այս բռնութիւններ Հայոց աշխարհին վրայ. որովհետեւ Վահանի նման քաջ զինուոր մը, իր խելքով ու զինուորի արժանիքով, աւելի օգտակար պիտի ըլլար արքունի ծառայութեան, քան ուխտանենգները: «Զի յորժամ Հայք այնպիսի որեարով մեր էին, Վիրք եւ Աղուանք չիշխէին բնաւ թիւրել զանձինս եւ այլազգագոյնս ինչ խորհել» (Անդ. էջ 552):

Նիխորի պէս հեզ, մտացի եւ աշխարհաշէն բարձր պաշտօնատար մը Հայաստան ղրկուեցաւ՝ բանակցելու համար Վահանին հետ, եւ Վահան ուխտապահ եւ հաւատարիմ նախարարներու հետ խորհրդակցելէ ետքը, երեք պայմաններ առաջարկեց Նիխորին. այդ երեք պայմաններու մէջ խտացած է Վարդանանց եւ Վահանեանց պատերազմներու ամբողջ պատմութիւնը:

«Առաջին պիտանի եւ կարեւոր խնդիրն է այս, որ մեր հայրենի եւ բնիկ օրէնքը (հաւատքը) մեզի թողուք, եւ ոեւէ Հայ մարդ մոգ չընէք եւ մոգութեան համար դահ ու պատիւ չտաք, եւ կրակատունը (ատրուշան) Հայոց աշխարհէն ի բաց տանիք, եւ մինչեւ հիմայ աղտոտ եւ անպիտան մարդոց ձեռքով մեր եկեղեցւոյն եղած թշնամանքը տեսնել չտաք մեզ, եւ թոյլ տաք՝ որ քրիստոնեայ մարդիկ եւ քահանաներ՝ քրիստոնէութեան կարգն ու պաշտօնը անվախ կերպով պաշտեն ուր որ ուզեն:

«Երկրորդ խնդիրն այս է, որ դուք մարդը չէք ճանչնար իշխողի վայել կերպով (իշխանաբար).

պէտք է որ իրաւացի կերպով գիտնաք լաւն ու վատթարը, զատել պիտանին ու անպիտանը, հասկնալ տոհմիկն ու անտոհմիկը, լաւերու տեղ դնել պատուականը, քաջը ու օգտակարը· արհամարհել եւ բանի տեղ չդնել վատն ու անպիտանը· սիրել վաստակաւորները· իմաստունները մօտ պահել եւ անմիտները չմօտեցնել, այլ հրապարակէն (արքունի ատեան) ալ վռնտել:

«Երրորդ խնդիրը այս է՝ կ'ուզենք, որ Արեաց աշխարհի տէրն ու Թագաւորը ինքն անձամբ, իր աչքերով տեսնէ եւ իր ականջներով լսէ, եւ ինքն ուղղակի գիտնայ լաւն ու անլաւը, եւ ո՛չ թէ ուրիշներու բերնով խօսի պէտք եղածը: Այս է պատճառը, որ չկայ ուղիղ հայեցուած եւ արդար լսողութիւն, այլ յաճախ սուտ խօսքեր կը լսուին եւ տրուած հրամաններն ալ ընդունայն են, եւ բոլորովին կ'այլայլէ հասկըցողութիւնը (իմաստ): Եւ երբ այսպէս է ամէն բան, բոլոր վաստակողները կը կործանին եւ կը կորսուին իրենց ծառաներով, եւ երկիրը ու անոնց բնակիչները չեն կրնար մնալ անշարժ ու հաստատուն: Բայց Թագաւորը, որ իւր առողջ աչքերով տեսնէ եւ իր աննախանձ ականջով լսէ եւ արդար խօսքերով խօսի իւր ծառաներուն, այն ատեն ծառաները կը կենդանանան, վաստակով չեն կշտանար, այլ աւելցնելով իրենց վաստակը կը ջանան օրէ օր շատցընել բարին, եւ այսպէսով երկիրը կը շէննայ եւ Թագաւորն ալ չքեղութեամբ կը պայծառանայ»:

Վահան Մամիկոնեան այս պայմանները առաջարկեց Նիխորի պատգամաւորներուն, («Շապուհ Խորհրդեան Դպիր»ին եւ «Միհրվշտասպ Ճուարչացի»ին), Արտազ գաւառի Եղինդ գիւղին մէջ, մինչ

Նիխոր Հեր գաւառի Նուարսակ գիւղին մէջ էր, եւ պահանջեց որ Տիզբոնի կառավարութիւնը «գրով եւ կնքով» ընդունի այդ երեք պայմանները, որոնք ընդունուեցան:

Ղ. Փարպեցիի պատմութեան ամէնէն թանկագին մասն է այն, ուր կը նկարագրուի Վահանին եւ Նիխորին բանակցութիւնն ու խօսակցութիւնը, նախ պատգամաւորներու միջոցաւ եւ ետքը՝ անձամբ: Վահան Տիզբոն կ՚երթայ, կը ներկայանայ Վաղարշին եւ պետութեան աւագանոյն, կը բացատրէ Հայոց ցաւը եւ կորովով կը խնդրէ, որ ընդունուին իւր պայմանները. եւ ատոնք ո՛չ միայն կ՚ընդունուին եւ հրովարտակով կը հաստատուին, այլ նաեւ Վաղարշ կը փութայ Վահանը նստեցնել Մամիկոնեան նախարարութեան գահին վրայ, իբրեւ Տանուտէր Մամիկոնեանց եւ կուտայ անոր՝ Հայոց Սպարապետութեան պաշտօնն ալ, որ Մամիկոնեան Տան իրաւունքն էր դարերէ ի վեր: Վահան այնքան խիստ էր իր առաջարկած պայմաններուն գործադրութեան, որ երբ եկան աւետել իրեն, թէ «զտէրութիւն Մամիկոնէից եւ զՍպարապետութիւն Հայոց» Շահը իրեն կուտայ, պատասխանեց, թէ ինքը չկրնար դէմ կենալ տրուած հրամանին, բայց կ՚ուզէր, ըսաւ, քիչ մը «գործ եւ սպաս» ցոյց տալ եւ այսպիսի արժանիքով հաճոյ ըլլայի եւ անկէ ետքը «որ ինչ թուէր ձեզ եւ կամէիք առնել՝ առնէիք. բայց առ այս նուազ կամէի թէ ներէիք ինչ» (Ղ. Փարպ., էջ 607): Բայց լռեցուցին Վահանը եւ նստեցուցին զայն «ի գահու Տէրութեան Մամիկոնենից, տուեալ ցնա ըստ օրինի նախնեաց իւրոց եւ զՍպարապետութիւն Հայոց աշխարհին» (Անդ. էջ 608): Վահանի հետ, ազգային կամքին ու

*հաւատքին հաւատարիմ եւ «ուխտապահ» նախարարներն ալ արժանացան շնորհներու իրենց արժանաւորութեան համեմատ։*

*Վահանին այս յաջողութիւնը ինքնին դատապարտութիւնը եղաւ Վասակի յաջորդներուն եւ հետեւողներուն, եւ փորձառութիւնը ցոյց տուաւ, թէ Վասակի պէս խելացի պետական անձնաւորութեան մը ծրագիրը, Հայոց թագաւորութիւնը վերականգնելու մասին, երազ մըն էր․ նոյն իսկ իր անձնական կամ նախարարական փառասիրութեան տեսակէտէն ալ անօգուտ եւ վտանգաւոր քայլ մը, քանի որ աններելի միջոցներով ուզած էր խաբել ազգային ամբողջութիւնը եւ նենգել իւր ուխտին կամ պատւոյ խօսքին։*

*Արդէն, երբ Վահան՝ Նիխորին հետ խօսակցեցաւ անձամբ, ուխտանենգներուն օրհասը եկած էր․ թէ՛ անոնք որ Նիխորին շուրջը կը գտնուէին եւ թէ՛ անոնք որ Տիզբոնի արքունիքին մէջ եւ շուրջը, այնպէս ամօթահար եղան իրենց վարկաբեկումէն, որ այլ եւս չէին կրնար երես ելլել, իբրեւ մարդ պատւոյ։*

*Այդպիսիներ, եթէ հնար ըլլար, ամէն գնով պիտի գնէին ապստամբութեան անունը։ Բայց հնար չէր այդ։ Բոլոր ուրացեալներ վռնտուեցան, եւ անոնք որ Նիխորի վրանէն ներս կ'ուզէին մտնել, կ'ըսէին․ «մենք ապստամբներէն ենք», եւ պահակներ թող կուտային այնպիսիներուն որ ներս մտնեն (Ղ․* Փարպ․, *էջ* 590)։

*Վահան այդպիսիներու մասին հետեւեալ կերպով խօսեցաւ Վաղարշի առջեւ, — «Ցո՛յց տուէք մարդ մը, որ Պերոզ արքայից արքայէն պատուուած ըլլայ ո՛չ թէ ձեր օրէնքը կատարելուն համար, այլ իր պի-*

տանութեան կամ կուլի մէջ գործ եւ վաստակ ցուցունելուն համար։ Վասն զի Արեաց զօրագլուխները շատ տեղեր գտնուած են, թող ըսեն անոնցմէ ոեւէ մէկուն երեւելի մէկ գործը՝ որ անոնք ըրած եւ ձեր զօրագլուխներն ալ տեսած ըլլան, եւ անոնց այսպիսի վաստակին համար հատուցում ըրած ըլլաք անոնց։ Սակայն անոնց կեղտոտ գործերը եւ մահապարտութիւնը յայտնապէս գիտեն իրենց գաւառակիցները եւ Հայոց աշխարհին ուրիշ մարդիկը, թէ ի՛նչ տեսակ արարածներ են ատոնք. «լի՛ ամենայն աղտեղութեամբք, սուտք, անպիտանք, աղտեղագործք, գաղտաշուրջք, գողք, լեռնախոյսք, գերեզմանակրկիտք, խաբեբայք», որոնց հետ Հայոց աշխարհին կրսեր չինականներն իսկ կը գարշէին հաց ուտելէ եւ կամ անոնց մօտ երթալէ, որ չըլլայ թէ պղծուին, մեր օրէնքին համեմատ. ահա՛ այսպիսիներն են, որ կուդային եւ խաբէութեամբ ձեր օրէնքները կ'ընդունէին եւ ըստ կամի աղտոտելով կրակը, անմիտներու տեղ կը դնէին ձեզ. (Անդ., էջ 603)։

Վահանին դիտողութիւնները թէեւ ծանր, բայց իրաւացի էին, եւ Վաղարշ մեծ հաճոյք զգաց ճանչնալով Հայու ճշմարիտ ներկայացուցիչը, ինչպէս որ Նիխոր նոյնքան հաճութեամբ տեսակցած էր անոր հետ Նուարսակ գիւղի վրանին տակ եւ հրաման տըւած էր նուիրակներուն, որ ա՛լ ներս չընդունին ուրացեալները, նոյն իսկ դուռը չմօտեցնեն, ըսելով անոնց, թէ «Գործոյ ինչ դուք չէք իմաստուն բանից, եւ լսել իսկ չգիտէք, արդ զտեղի ատենին յարժանաւոր առնէ ընդէ՞ր խափանէք. զի թող նստի անդ մարդ այն՝ որ զխօսս աւագացն եւ զբանս իմաստնոցն լսել գիտէ եւ օգտել» (Անդ, էջ 588)։

Վահան մեծ պատուով եւ շքեղութեամբ վերադարձաւ Հայաստան: Յովհան Մանդակունի, ժամանակին քաջարի Կաթողիկոսը, ազգային ցոյցերով եւ հանդիսաւորութեամբ դիմաւորեց եւ ընդունեցաւ ազգային կամքին մարմնացումը, յանձին Մամիկոնեան դիւցազնին, որ գիտցած էր յարգել տալ այդ կամքը Պարսից կառավարութեան:

Քիչ մը ետքը Անդեկան, «խելացի, մտադիր, իմաստահայեաց» պաշտօնատար մը՝ Մարզպան ղրկուեցաւ Հայաստան, որ իրաց վիճակին տեղեկանալէ ետքը, համոզեց Տիզբոնի կառավարութիւնը, թէ անդէպ է ուրիշ Մարզպան կարգել Հայոց աշխարհին վրայ, ցորչափ Վահան Մամիկոնեան մը կայ հոն, հեռատես, արդարախոհ, աշխարհահոգ, քաջասիրտ, ամէն գործի յարմար եւ յաջողակ եւ ամէն բանի մէջ յառաջադէմ: Եւ այսպէս, Վաղարշ Հայաստանի Մարզպանութեան հրովարտակն ալ ղրկեց Վահանին, Դուին Մայրաքաղաքը: Վահան, գիտնալով հանդերձ Հայու «խանտածութիւնը» (չար նախանձ) չկրցաւ մերժել այս պետական վստահութեան նոր հաւաստիքը, համակերպեցաւ եւ սկսաւ իր գործին՝ Դուինի եկեղեցւոյ մէջ գոհաբանական հոգեյոյզ պաշտամունքէ մը ետքը, ուր Մանդակունին սիրով եւ ներողամտութեամբ գեղուն քարոզով մը՝ յորդորեց ուրացողները, որ ապաշխարեն եւ միանան Եկեղեցւոյն:

Այսպէս փակուեցաւ Վարդանանց Պատերազմով պաշտպանուած ազգային դատը, որու շուրջ մղուած բոլոր կռիւներ եւ եղած զոհողութիւններ հասան իրենց նպատակին:

Պատմական այս դասերէն բարոյական փորձա-

*ուցմունք մը կը ցայտէ , այն ալ սա՛ է , որ* Հայոց ազգային-կրօնական կեանքին մէջ անջատ գործունէութիւն , ուր նախարարութեան կամ կուսակցութեան անունով , որչափ ալ բուռն եւ յաջող նկատուի այդ գործունէութիւնը , չկրնար յաջողիլ , չկրնար ազգային ըսուիլ , քանի որ չբղխիր Ազգին կամքէն :



# ՎԱՐԴԱՆԱՆՑ ՊԱՏԵՐԱԶՄԸ

## ՆՈՐ ՏԵՍՈՒԹԻՒՆՆԵՐ

(Կոչնակ, 1917, Փետր. 3. Թիւ 5)

ՔՐԻՍՏՈՍԻ չորս հարիւր յիսուն մէկ *Թուականը Հայոց Պատմութեան ամէնէն կարեւոր դէպքերէն մէկուն Թուականն է: Այդ դէպքն է Վարդանանց* մեծ *պատերազմը: Հայեր կը սիրեն իրենց վերաբերեալ պատմական իրողութիւնները մեծցընել եւ փառաւորել: Ասիկա իրողութիւնները խեղաթիւրելու եւ զանոնք իրենց նպաստաւոր կերպով պատմագրելու Թաքուն մտքէն չէ որ յառաջ կուգայ, այլ այդ իրողութիւններու ներքին արժէքէն եւ նըշանակութենէն: Այսպէս, Վարդանանց Պատերազմը, արտաքին կերպով՝ իբրեւ Ազգերու ընդհանուր պատմութեան վերաբերեալ դէպք եւ իբրեւ ռազմագիտական գործողութիւն, ոեւէ ուշագրաւ հանգամանք չունի. բայց ներքնապէս, Հայոց համար, իր ներքին արժէքով եւ նշանակութեամբ,* մեծ է *Վարդանանց պատերազմը, վասն զի ուղղակի կապ եւ աղերս ունի Հայ Ազգին գոյութեան ապահովութեան խնդրոյն հետ:*

*Պատմական այս երեւոյթը չիտակ եւ քաջ ըմբռնելու համար, պէտք է ուշադրութիւն ընել քանի մը խնդիրներու:*

*Ա.*— Ինչո՞ւ համար Վարդանանք զէնք վերցուցին Պարսից դէմ:

*Որովհետեւ Դենիմազդէզը, Պարսից այն ատենուան քէշը (կրօնը) չուզեցին ընդունիլ Հայք: Բայց*

այս չէր բոլորը։ Եթէ խնդիրը զուտ կրօնական ըլլար, թերեւս շատ պիտի դիւրանար ատոր լուծումը։ Կրօնքի հետ կապուած էին քաղաքական եւ քաղաքագիտական մեծ խնդիրներ։ Վասն զի Պարսկաստան, պէտք է խոստովանիլ, որ շատ ազատամիտ եւ թոյլատու էր հանդէպ իր պետականէն տարբեր կրօններու եւ դաւանանքներու։ Այնպէս որ Պարսկաստանի մէջ, ի միջի այլոց, Քրիստոնէական Եկեղեցին (ասորի) շատ տարածուած, շա՛տ պայծառ ու զօրաւոր էր։

Ասիկա գիտենք ո՛չ միայն արտաքին պատերազմներէ, այլ նաեւ Եղիշէէն, որ մասնաւոր խըռնամքով ի վեր կը հանէ այս պարագան, երբ դիտել կուտայ, թէ Շապուհի ատեն տիրապետող այդ ազատութիւնը ի՛նչպէս կը փոխուի — կարծես անհասկընալի պատճառներով— Յազկերտ Բ.ի ատեն եւ հալածանքի կը վերածուի ընդդէմ Քրիստոնէութեան։ Հակառակ մոգերու մոլեռանդութեան, որոնք ամենեւին չէին ուզեր հանդուրժել ուրիշ կրօններու, Քրիստոնէութիւնը բարգաւաճ վիճակ մը ունէր թէ Պարսկաստանի եւ թէ Պարսկաստանի գերիշխանութեան ենթարկեալ երկիրներու մէջ։ (*)

(*) «Քանզի յիշեցուցանեմք քեզ զժամանակն Շապհոյ արքայի, որ էր հայր հաւուն քո Յազկերտի, եւ ետ նմա Աստուած զերկիրն Հայոց, ի ժառանգութիւն սովին օրինօք, որով եւ մեք իսկ վարիմք այժմ, եւ հարքն մեր եւ հաւքն հարցն մերոց կացին նմա ի ծառայութեան վաստակս. եւ սիրով կատարէին զամենայն հրամանն բանի նորա, եւ բազում անգամ ի նմանէ մեծապարգեւք լինէին։

«Եւ յայնց ժամանակաց մինչեւ ի քո հայրենի աթոռդ՝ եւ մեք զնոյն ծառայութիւն ծառայեցաք, բայց թերեւս քեզ յաւագոյն քան զառաջնոցն» (Եղիշէ, Բ. Յեղ. էջ 34–35)։

*Արդ, եթէ զուտ կրօնական լինէր խնդիրը, ինչպէս դիտել տուինք, դիւրին էր ատոր լուծումը· — այսինքն՝ Դենիմազդէզը, Զրադաշտին հաստատած կրօնը, վաղեմի կրօններուն լաւագոյնն էր: Անոր կրօնական արժէքը ա՛յնչափ բարձր էր, ո՛րչափ իր բարոյական եւ փիլիսոփայական նշանակութիւնը: Եւ մենք գիտենք, որ Վասակեանք շատ խոտոր չէին դներ Քրիստոնէութեան եւ Զրադաշտականութեան մէջ: Ասկէ զատ, Վարդանանց եւ ետքը Վահանեանց շրջաններուն ալ, ամէնէն ջերմ եւ անկեղծ Հայ-Քրիստոնեաներէն ոմանք— եւ նոյն ինքն Վարդան— պահ մը կրցաւ կրօնափոխ ըլլալ,*

---

«Լուեալ իսկ իմ էր ի նախնեաց մերոց, եթէ յաւուրս Շապհոյ արքայից արքայի, իբրեւ սկսաւ ուսումն այդ աճել եւ բազմանալ եւ լնուլ զամենայն երկիրն Պարսից, եւ եւս անդր յԱրեւելս հասանել, իսկ որ վարդապետքն էին օրինացն մերոց՝ յորդորեցին զթագաւորն, զի մի՛ բնաւ ամենեւին բարձցին օրէնք մոգութեան յաշխարհէն, ետ հրաման սաստիկ, զի լռեալ դադարեսցէ Քրիստոնէութիւնն: Եւ ո՛րչափ նա կամեցաւ արգելուլ, եւս քան զեւս աճեցին եւ բազմացան, եւ հասին մինչեւ յաշխարհն Քուշանաց, եւ անտի ի հարաւակողմն՝ մինչեւ ի Հընդիկս տարածեցաւ»:

«Եւ այնպէս աներկիւղ եւ համարձակք էին յաշխարհին Պարսից, մինչեւ յամենայն քաղաքս աշխարհին եկեղեցի շինեցին, որ զանցուցանէր պայծառութեամբ զթագաւորաբնակ արքունեօքն: Շինէին եւ վկայարանս իմն անուանեալս, եւ զնոյն զարդ եկեղեցեաց զարդարէին, եւ յամենայն տեղիս՝ յաղատս եւ յանապատս միայնանոցս շինէին: Եւ իբրեւ ոչ ինչ երեւէր յայտնի օգնութիւն ուստեք, աճելով աճէին եւ բազմանալով բազմանային, եւ մարմնաւոր մեծութեամբք մեծանային: Զպատճառս հաստութեան մենք ինչ ոչ գիտէաք· բայց այսչափ ինչ ճշմարտիւ իմանայաք, զի տիեզերք ամենայն զկնի ուսմանն նոցա գնային» (Եղիշէ, Գ· Ցեղ· էջ 45–46):

գաղտնի եւ ամուր Քրիստոնէութեամբ, որպէս զի կարող ըլլային փրկել Ազգային Դատը:

Խնդրին քաղաքական եւ քաղաքագիտական կողմը Հայ Ազգին տեսակէտէն, Հայութեան եւ այն ալ Քրիստոնեայ-Հայութեան պահպանութիւնն էր եւ ապահովութիւնը:

Քրիստոնէութիւն՝ իր երեք չորս դարու կեանքին մէջ՝ եղած էր Արեւելքի մեծ, տիրապետող եւ կրօնական կապերով բոլոր Քրիստոնեայ ազգերը միացնող կրօնը: Զրադաշտականութիւնը, իր բոլոր հրապոյրներով, չէր կրցած աշխարհակալ կրօն մը ըլլալ: Նոյն ինքն Պարսկաստանի մէջ բացի ուրիշ աղանդներէ, Քրիստոնէական եկեղեցւոյն այնքան ծաւալումն ու զօրացումը՝ կ'ապացուցանէ, թէ Դենիմազդէզը՝ փոխանակ ծաւալելու՝ կ'ամփոփուէր, եւ օր մը այնչափ պիտի տկարանար եւ անհասկնալի պիտի ըլլար, որ տեղի պիտի տար աւելի զօրաւոր կրօնական նոր հոսանքի մը: Սասանեան Հարստութեան ներկայացուցիչները, Արտաշիր Բաբականէն ի վեր, ի զուր աշխատած պիտի ըլլային՝ թեւ թիկունք ըլլալով Դենիմազդէզի վերականգնըման եւ ծաւալման:

Ասկէ զատ Հռոմէական եւ Բիւզանդական կայսրութեանց Քրիստոնէացումը՝ աւելցուց իրենց քաղաքական տիրապետութեանց հրապոյրը աշխարհի ծանօթ մասերուն վրայ: Ո'չ միայն աշխարհի քաղաքական զօրութիւնը կեդրոնացած էր նոր կրօնքի (Քրիստոնէութեան) լուսով լուսաւորուած այդ աշխարհակալ պետութիւններու ձեռքին մէջ, այլ եւ մտաւոր մշակոյթը, քաղաքակրթութեան բոլոր ազ-

դակները կը գտնուէին Հռոմէա—Բիւզանդական կայսրութեան ներքեւ։

Հայերը չէին կրնար ընդունիլ Դենիմազդէզը, քանի որ լուսաւորեալ եւ հզօր ազգերու կրօնական դրութեան մէջ մտած էին, եւ շատ նշանակելի զարգացում, յառաջացում եւ արդիւնք ձեռք բերած էին, մինչեւ Ե. Դարու առաջին կէսը։ Հայերը, իրենց Թագաւորական իշխանութեան կորուստէն ետքը, Քրիստոնէութեան եւ Ազգային Մատենագրութեան շնորհիւ, այնպիսի ներքին ոյժ մը ձեռք բերած էին՝ իրենց Հայութիւնը պահելու եւ պահպանելու համար, որ զայն պիտի չուզէին որեւէ կերպով ու գընով ձեռքէ հանել։ Եւ Ազգային այս նոր ինքնուրոյնութեան պահպանման գիտակցութիւնը այնքան մըշակուեցաւ եւ զօրացաւ Հայ Ազգին մէջ, որ ետքը, դարերու ընթացքին չուզեց տեղի տալ Քրիստոնեայ զօրաւոր ազգերու պահանջումներուն եւ բռնադատութեանց առջեւ։ Այս ոգիով եւ մեթոտով կրնայ դիւրութեամբ բացատրուիլ նաեւ այն պայքարներուն արժէքը, զորս ունեցաւ Հայաստանեայց Եկեղեցին Յոյն եւ Լատին Եկեղեցիներու հետ, հետագայ դարերու ընթացքին։

Եթէ Սասանեանք բռնացան Հայոց վրայ, պատճառը ներքնապէս քաղաքական էր, թէեւ երեւոյթը կրօնական էր։ Անոր համար շատ պայծառ ապացոյց մը ունինք պատմութեան մէջ։ Հայերէն գիրերու գիւտէն առաջ, Հայեր քրիստոնեայ էին։ Սասանեան կառավարութիւնը հաշտ աչքով չդիտեց ոչ թէ Քրիստոնեայ-Հայաստանը, այլ Քրիստոնեայ Բիւզանդիոնի հետ կրօնական եւ մտաւորական կապերով կապուած Հայաստանը։ Այս էր պատճառը

որ պահ մը, կրակի մատնուեցան Պարսկահայաստանի մէջ գտնուող բոլոր յունարէն գրեանք եւ ասորերէնը զօրացաւ հոն: Բայց հայերէն գիրերուն գիւտէն ետքը, երբ Հայք ունեցան իրենց առանձին Ազգային մատենադրութիւնը, խնդիրը փոխուեցաւ: Շահնշահներու կառավարութիւնը այլեւս դիտողութիւն չունէր, որովհետեւ Պարսկահայաստանը թէեւ Քրիստոնեայ, բայց Յոյն դրականութիւնը չունէր, գոնէ այն իմաստով, որ Հայաստանի եկեղեցիներուն մէջ Սուրբ Գրոց յունարէն ընթերցումը վերջ գտած էր, իսկ ասորերէնի տեղ հայերէն մտած էր, եւ ասիկա շատ տարբերութիւն չէր ըներ գերիշխան կառավարութեան տեսակէտով:

Ուրիշ ապացոյց մը, որուն վրայ դեռ ուշադրութիւն չէ դարձուած, Պարսկահայաստանի եւ Յունահայասաանի առանձին առանձին պահպանութեան խնդիրն է. — այսինքն ո՛չ Տիզբոն, ո՛չ ալ Բիւզանդիոն չէին ուզեր, որ իրենց գերիշխանութեան տակ երկուքի բաժնուած Հայաստանը վերնայ մէջտեղէն, ոչ թէ Հայոց սիրոյն համար, այլ իրենց քաղաքական եւ աշխարհակալական նկատումներուն եւ շահերուն համար: Քանի որ ո՛չ Շահնշահներու կառավարութիւնը, եւ ո՛չ ալ Կայսրներու կառավարութիւնը չկրցաւ ամբողջ Հայաստանը—առանց բաժանման—իւրացնել՝ աւելի յարմար դատեցին երկուքի բաժնելով՝ իբրեւ պատուար պահել զանոնք իրենց երկրին սահմաններուն վրայ:

Վարդանանց պատերազմը ծագեցաւ այս բաժանեալ Հայաստանի պարսկային մասին վրայ, եւ Վարդանանք չկրցան զինուորական ոյժ եւ օգնութիւն գտնել Բիւզանդիոնէն, հակառակ եղած դի-

մումներու եւ տրուած խոստումներու, եւ Հայեր մնացին մինակ, այն ալ պառակտուած վիճակի մէջ, այսինքն՝ Վարդանանք հեռատես եւ աւանդապահ ազգային գոյութեան պահպանման խնդրին մէջ, իսկ Վասակեանք պատեհապաշտ եւ համակերպելու կողմնակից: Այս ներքին եւ արտաքին դժուարութեանց մէջ է, որ Վարդանանք կը յաջողին Ազգային Դատը պաշտպանել Աւարայրի դաշտին վրայ: Կը մղեն մեծ պատերազմը, կ'իյնան հազար երեսուն եւ վեց Հայեր, բայց վերջնական յաղթութիւնը եւ ամբողջ խնդրին լուծումը կը մնայ Վահանեանց, որոնք հաւատարիմ Վարդանանց ազգային ուղղութեան, կը կռուին, կը բանակցին, եւ վերջապէս ձեռք կը բերեն կրօնական ազատութեան եւ ներքին ինքնավարութեան մը իրաւունքներն ու պայմանները՝ Սասանեան գերիշխանութեան ներքեւ:

Բ.— Հայաստան ի՞նչ կարեւորութիւն ունէր ընդհանուր տեսակէտէն:

Երբ մեր միտքը բերենք Պարսկաստանի Նախասասանեան հզօր կառավարութեանց աշխարհակալութեանց ծրագիրը, եւ անոնց ձեռք բերած յաջողութիւնները, մա'նաւանդ Քսէրքսէսի արշաւանքը դէպի Եւրոպայի մեծ դռները (Կ. Պոլսի նեղուցները) բաւական նոր լոյսեր կրնանք սփռել Սասանեան եւ Բիւզանդական բանակներու ընդհարման պատմական ընդհանուր պատճառներուն վրայ: Ո՞վ պիտի իշխէր Բիւզանդիոնի (Կ. Պոլիս), Քսէրքսէսի ձախողուածէն ետքը.— Վերականգնուած եւ սակայն ծերունի Դենեմազդէ՞զը, թէ մատղաշ եւ զօրաւոր Քրիստոնէութիւնը: Սասանեանք ո'րչափ ալ փորձեցին իշխել Կ. Պոլսին, բայց Բիւզանդիոնի կառավարու-

*Թիւնը իղերեւ հանեց այդ բոլոր փորձերը, եւ կայսերական բանակները միշտ կարող եղան արշաւել երկու պետութիւններու մէջ տեղ տարածուած երկիրներու վրայ եւ մտենալ նոյն իսկ Տիզրոնի դռներուն:*

*Հայաստան դատապարտուած էր ճակատագրօրէն՝ ոտնակոխ ըլլալու այս ընդհարումներու ատեն եւ կռուելու մէկ կամ միւս կողմի գերիշխանութեան դէմ: Հայ Արշակունի հարստութեան կործանումէն ետքը, Հայաստանի բաժանումը աւելի լաւ համարուեցաւ, եւ Հայ ազգը կրցաւ օգտուիլ այն բաժանումէն, եւ ինչպէս որ դիտել տուինք, շնորհիւ իր ներքին նոր ոյժին — Հայ Քրիստոնէութեան եւ Հայ գրականութեան — պահել իր գոյութիւնը:*

*Բայց ինչ որ անկարելի եղաւ Պարսից, կարելի եղաւ շատ ետքը Թրքաց կամ իսլամ ոյժին: Իսլամութիւնը ո՛չ միայն Պարսկաստանը կուլ տուաւ, այլ նաեւ Բիւզանդական կայսրութիւնը: Այդ ընդհուր շրջանին ալ դարձեալ Հայաստան ոտքի տակ էր, եւ մերթ Պաղտատի եւ մերթ Դամասկոսի Խալիֆաներուն կռթնելով, զուրկ քաղաքական միացուցիչ զօրութենէ, կրցաւ պահել իր գոյութիւնը շնորհիւ իր Քրիստոնէութեան, որուն համար շարունակ նահատակուեցաւ: Սելճուքեանց շրջանին եւս նոյն քաղաքական եւ նահատակային կեանքը եղաւ Հայաստանի ճակատագիրը: Իսլամութիւնը իր ծաւալման ուժով, վերջապէս կրցաւ տիրել Բիւզանդիոնին, բայց ատով չփակուեցաւ խնդիրը: Եւ այսօրուան համեւրոպական պատերազմը ցոյց կուտայ, թէ մինչեւ որ Ֆաթիհի գրաւած Կ. Պոլիսը չանցնի Քրիստոնէութեան ձեռքը—հոգ չէ թէ Ռուսիո՞յ*

ձեռքին տակ կամ իբրեւ միջազգային մայրաքաղաք առանձին կառավարութեամբ — Հայաստանի խնդիրը, իբրեւ Արեւելեան կոչուած Խնդրին հանդոյցներէն մին՝ պիտի չլուծուի։ Եւ անշուշտ Ընդհանուր Պատմութեան տեսակէտէն կարեւորութիւն մը ունէր Հայաստանը, որ Գերմանօ—Թիւրք զինակցութեան գլխաւոր զոհն եղան Հայք, զուտ իրենց Քրիստոնէութեան պատճառաւ, ինչպէս նաեւ զոհուեցան միեւնոյն քաղաքականութեան՝ Ասորի եւ Սիւրիացի Քրիստոնեայ ժողովուրդներ։

Կարելի է ըսել, հին պատմական երեւոյթը ո՛չ թէ կը կրկնուի, այլ կը շարունակուի։ Սա՛ տարբերութեամբ միայն, որ պատմութեան այդ հին շրջաններուն, Հայ Ազգը, թէեւ պատերազմներով եւ գաղթականութիւններով տկարացած, բայց իր տիրական մեծամասնութիւնը, մայրենի հողին վըրայ, հնարաւորութիւններ ունէր իր գոյութեան սպառնացող վտանգներուն դիմագրաւելու, հակառակ իր կորուստներուն եւ զոհողութիւններուն։ Այսօր Հայ Ազգը չունի այդ հին շրջաններու առաւելութիւնները. որովհետեւ անլուր եւ աննման քաղաքական բարբարոսութեան մը, բռնի, անպատիւ, եւ ասպետական ոգիէ զուրկ, խսկապէս վանտալական հայրենազրկութեան մը ենթարկուեցաւ ան։ Եւ մեր ներքին չարիքներուն շնորհիւ, մեծ մեծ համեմատութիւններ առաւ մեր Ազգի գլխուն եկած այդ փորձանքները, որուն պատասխանատու ենք մենք Հայերս։ Այնպէս որ եթէ մեր ներքին բոլոր շարժումները կազմակերպուէին Վարդանանց ոգիով, ըստ իս, մեր ազգային գոյութեան այս կերպով վտանգուիլը մեծ համեմատութիւններ չէր առներ։

Գ.– Ի՞նչ էր Վարդանանց եւ Վահանեանց շարժումներու ոգին:

*Ես ամենեւին պիտի չուզէի խօսիլ եւ գրել Վարդանանց պատերազմին եւ անոր շարունակութեան եւ յաջող ելքին վրայ, եթէ այդ շարժումներու ոգին պէտք չըլլար Վարդանանց դարուն յաջորդող բոլոր ժամանակներու Հայոց համար: Ես նոյն իսկ չէի ուզեր, որ ուրիշներ ալ խօսէին Վարդանանց անունով, չպարծէին անոնց քաջագործութեամբ, եւ երեւակայական տխեղծ պատկերներ եւ նկարներ չշինէին Վարդանի համար, Սուրբն Ղեւոնդի համար, Վարդանանց պատերազմի համար, եւ պիտի չհանդուրժէի մա՛նաւանդ, որ Վարդանանց յիշատակները տօնախմբուէին Հայաստանեայց Եկեղեցւոյ մէջ, եթէ անոնց ոգին պիտի չխանդավառէր ապրող Հայութիւնը եւ պիտի չառաջնորդէր անոր՝ իր դժուարութիւններու միջոցին:*

*Այդ ոգին շատ յայտնի է եւ ներշնչող՝ ի՛նչպէս Վարդանանց շարժումին մէջ, նոյնպէս անոնց վրայ գրուած ամբողջ գրականութեան մէջ, մեր Երդ. Դարու պատմագիրներէն սկսեալ մինչեւ մեր օրերը:*

*Վարդանանք եւ Վահանեանք կռուեցան մտքի եւ խղճի ազատութեան համար· ուրիշ խօսքով՝ Հայ Քրիստոնէութեան համար, որ արտայայտուած է Հայաստանեայց Եկեղեցիով: Այս ոգին զսպանակն է այդ շարժումներուն:*

*Վարդանանք եւ Վահանեանք չհանդուժեցին ներքին շարիքներուն: Ըրին ինչ որ կարող էին ընել՝ ուղղելու եւ սիրաշահելու համար փառասէրները, մատնիչները, ուրացողները, բայց երբ չյաջողեցան սիրով, յաջողեցան սրով:*

Վարդանանք եւ Վահանեանք՝ իրենց շարժումներու բովանդակ ընթացքին հաւատարիմ (Loyal) եղան ո՛չ միայն իրենց Հայ—Քրիստոնէական ըսկըզբունքներուն, այլ նաեւ գերիշխան Կառավարութեանց: Ասիկա մեծ քաջութեամբ եւ հիանալի համարձակութեամբ շեշտեցին իրենց գործքին եւ խօսքին մէջ հաւասարապէս:

Վարդանանք եւ Վահանեանք ասպետական ճըշգըրիտ ոգիով վարուեցան թշնամիներու հետ: Ասիկա Հայ զինուորին եւ ասպետին ամէնէն չքնաղ եւ հոյակապ առաքինութիւնն էր, որ կը շեշտուի Մամիկոնեան Նախարարութեան բոլոր պատմութեան մէջ: Ճերմակաձի Մուշեղ զօրավարին ասպետական վարմունքին պատմութիւնը Շապուհի կանանոցին հանդէպ, Փաւստոս Բիւզանդի ազնիւ դրուագներէն մէկն է: Այս ոգին ասպետակա՛ն է բառին ամէնէն իրական ու մաքուր առումով, եւ այս ոգին է, որ կը բարձրացնէ զէնք բռնող Հայ կտրիճներու քաջութիւնը:

Վարդանանք եւ Վահանեանք, կ՚արժէ եւ հարկ է որ շեշտեմ մասնաւոր խնամքով, Հայաստանեայց Եկեղեցւոյ ազատութեան դէմ լարուած ներքին եւ արտաքին որոգայթներն եւ ոտնձգութիւնները ջախջախեցին: Վարդանանց պատերազմին մէջ Հայաստանեայց Եկեղեցւոյն, Դենշապուհի կարգադրութեամբ, հարկի տակ իյնալը ըմբոստացուցիչ պատճառներէն մին եղաւ: Եւ ասոր կրնային հանդուրժել, որովհետեւ ասիկա նիւթական կողմն էր եկեղեցւոյ ազատութեան բռնաբարութեան, բայց կա՛ր նաեւ անոր հոգեւոր ազատութեան դէմ վտանգ մը, որուն պաշտպանութեան համար ո՛չ միա՛յն գրչի

*հոյակապ պայքարով մը գերազանցեցին Վարդանանք իրենց զինուորական քաջութիւնը, այլ նաեւ իրենց մեծ պատերազմով նուիրագործեցին եկեղեցւոյ ազատութիւնը* (*)։

*Այս ոգին մնաց Հայ ժողովուրդին ներսը, եւ ամենեւին չհանդուրժեց ան, որ իր եկեղեցին նիւթապէս սրբապղծուի իր հաւատքին եւ արեան թշնամիներուն ձեռքով. այնպէս որ նոյն իսկ իր եկեղեցական սրբութիւնները (գիրք, սպասք, անօթք, պատկերք, եւայլն) երբ գերուած գերփուած են, դրամական փրկանքներով եւ հոգեկան մաշումներով յաջողած է ազատել զանոնք։ Ամէն անգամ, որ ձեռագիր Աւետարանի մը յիշատակարաններու մէջ հանդիպիմ այսպիսի դէպքի մը արձանագրութեան, կը յուզուիմ, տաքութիւն մը կ'եռայ ներսս, աչքերս կը լեցուին, եւ հպարտ կ'զգամ ինքզինքս, որ իր թշուա-*

---

(*) Հայք կ'ըսէին Յազկերտին. «Մի՛ դու, արքայ, եւ մի՛ զայդ այլ առ մեզ ասեր. քանզի ոչ է եկեղեցի շինուած մարդոյ, եւ ոչ տուրք արեգական, որպէս դուդ այլ ընդ այլոյ կարծես՝ թէ աստուած իցէ. ոչ միայն զի աստուած չէ, այլ եւ կենդանի չէ։ Այլ եկեղեցիք ոչ են պարգեւք թագաւորաց, եւ ոչ արուեստ ճարտարութեանց, եւ ոչ գիւտք իմաստնոց, եւ ոչ աւար քաջութեան զինուորաց, եւ ոչ պատիր խաբէութիւնք դիւաց. նա եւ բնաւ իսկ ամենեւին զինչ եւ ստացեալ յերկրաւորացն, կամ ի վեհից կամ ի վատթարաց, բնաւ ուրեք եկեղեցի ի նոցանէ ոչ գտցի։ Այլ շնորհք են մեծին Աստուծոյ, ոչ միում ումեք. ի մարդկանէ տուեալ, այլ ամենայն բանաւոր ազգաց, որք վիճակեալք են ի բնակութիւն ի ներքոյ արեգականս։ Հիմունք նորա եդեալ են ի վերայ հաստատուն վիմի. ոչ ներքինք շարժել կարեն, եւ ոչ վերինք դրդուեցուցանել։ Եւ զոր երկինք եւ երկիր ոչ դողացուցանէ, մի՛ ոք ի մարդկանէ խրոխտասցի յաղթել նմա» (Եղիշէ, Բ. Յեղ. էջ 35-36)։

*ութեան մէջ ազատական եւ ասպետական ազգի մը զաւակն եմ ։*

*Եկեղեցւոյ եւ եկեղեցւոյ վերաբերեալ ամէն նուիրական բանի ազատութեան նախանձախնդիր այս ոգին, որ մեր ժամանակներու մէջ, յաւակնոտ եւ անհարազատ ազգասիրութենէ մը սկսաւ արհամարհուիլ, պայման է որ բռնէ կեդրոնական տեղը մեր բոլոր շարժումներուն մէջ։*

*Վարդանանք եւ Վահանեանք՝ դեռ այսօր եւ վաղը, եւ յաւէ՛տ, ցո՛րչափ Հայ Ազգն ապրի ոեւէ չափով ու կերպով, իրենց ոգիով պէտք են վառել հայերը, խանդավառել եւ առաջնորդել։*

Վարդանանց պատերազմը *պատմական պարզ յիշատակ մը պէտք է մնայ* Հայոց Պատմութեան *մէջ—որովհետեւ այդ պատերազմին բոլոր պարծանքը իրենցն է միայն—, եթէ իր ոգիով պիտի չոգեւորէ մեզ։*



# ՎԱՐԴԱՆԱՆՑ ՊԱՏԵՐԱԶՄԻՆ ՏԵՂԸ

ՎԱՐԴԱՆԱՆՑ *պատերազմին տեղւոյն անունը կապուած է* Աւարայր *կամ* Աւերայր Դաշտին *հետ* :

*Կա՛ն նաեւ* Տղմուտ Գետ, Շաւարշան դաշտ *եւ* Արտազ Գաւառ *անունները, որոնք նոյնպէս կապուած են Վարդանանց Պատերազմին տեղագրութեան հետ* :

*Բայց խնդիրը սա՛ է.— Հայաստանի աշխարհագրական քարտէսին վրայ ո՞ւր պէտք է փնտռել այդ տեղերը* :

*Մ. Խորենացին է, որ առաջին տեղեկութիւնը կ՚ընձեռէ մեզ Շաւարշանի եւ Արտազի մասին* :

*Ըստ Խորենացւոյն՝ Շաւարշան կամ Շաւարշական* Գաւառը *կ՚իյնայ Մասիս լեռան հարաւային արեւելեան կողմը* (ի հարաւոյ յարեւելից կուսէ Մասեաց) :

*Այս Շաւարշան Գաւառը, յետոյ կը կոչուի* Արտազ Գաւառ *այն գաղութին պատճառաւ, որ բերուեցաւ Ալանաց Արտազ աշխարհէն, եւ Արտաշէս Թագաւորի հրամանաւ զետեղուեցաւ Շաւարշան Գաւառին մէջ* : *Այս գաղութը, ի յիշատակ իր բընաշխարհին,* Արտազ *կոչեց իր այս նոր գաղթավայրը* (*Մ. Խոր. Բ. ծբ.:— Հմմտ. Բ. լդ*) :

*Շաւարշան շատ նշանաւոր է Վարդանանց Պատերազմէն յառաջ ալ* : *Հո՛ն էր Հայ Թագաւորաց ամառանոցն եւ բանակետղը* : *Հո՛ն է որ Ս. Թադէոս Առաքեալ հանդիպեցաւ Սանատրուկ Թագաւորին, եւ*

*քրիստոնէացուց Հայոց Օրհորդն զՍանդուխտ, որուն հետեւանքով նահատակուեցան երկուքն ալ հոն, եւ յետոյ, ի յիշատակ այս նահատակութեան, շինուեցաւ Ս. Թադէոսի Վանքը, Մակուայ հիւսիսային կողմը, ծործորի մը մէջ, գետեզերքը*:

*«Եւ անդ ասեն գյղութիւն մօր Սրբոյ ու Մեծի Լուսաւորչին»* (*Մ. Խոր. Բ. հդ*):

*Ըստ Փարպեցւոյ՝ Աւարայր* Գիւղ *մըն է Արտազ* Գաւառին *մէջ, եւ այդ գիւղին մօտ՝ Տղմուտ* դաշտին *մէջ, «չրջափակ տեղ» մըն էր, զոր ընտրեցին պարսիկ զօրավարներ «յաղագս երկիւղի զօրացն Հայոց», եւ հո՛ն դրին իրենց բանակը*: (Ղ. Փրպ. *էջ* 226):

*Եղիշէ անխտիր կը գործածէ* Դաշտն *Արտազու եւ* Դաշտն *Աւարայրի բացատրութիւնները «առ ափըն Տղմուտ գետոյն»* (Եղիշէ *էջ* 77, 147, 90):

*Տղմուտ յայտնապէս* գետի *անուն է, եւ Փարփեցին՝ երբ կ՚ըսէ Տղմուտ* դաշտ, *ըսել կ՚ուզէ Տըղմուտի* դաշտ, *այսինքն՝ այն* դաշտը, *որու մէջէն կ՚անցնի Տղմուտ* գետը:

*Վերջին պատմագիրներու համաձայն*, Արտազ՝ Մակու *է. իսկ Մակու, ըստ Ալիշանի, կ՚իյնայ արդի Պարսիկ Հայաստանի հիւսիսային ծայրը, այսինքն Պայազիտի (արեւմուտքէն), Մասիս լերան (հարաւէն) եւ Երասխ գետին (արեւելքէն) մէջ տեղ գտնուած երկիրը մինչեւ Պալըք գետ*:

*Դարձեալ ըստ Ալիշանի*, Շաւարշական *կամ* Աւարայր *դաշտը կ՚իյնայ Մակուայ արեւելեան հիւսիսային (պիտի ըլլար՝ հարաւային) կողմը, Տղմուտ գետին եզերքը, եւ կը հաւանի թէ Տղմուտ գետն է*

*հիմակուան Աք-Չայ վտակը, որ կը խառնուի Երասխ գետին. հոն է նաեւ Աք-Չայ լճակը։*

*Ալիշան այս ճշգրտումներն ընելով հանդերձ, կ'ըսէ. — «Այլ աւա՛ղ, զի ոչ ոք ցարդ հետախուզեաց եւ ետ ծանօթս ճշգրիտս զցանկալի վայրացն, յորում կրօնք եւ հայրենիք միաբանեալ գործս սրխրալիս կատարեցին յաւուրսն անդ հարստութեան Հայոց»* (Տեղագիր Հայոց Մեծաց, *էջ* 56)։

*Իսկ Միքայէլ Փորթուգալ, քննելով Պարսկաստանէն Հայաստան բերող ճամբաները, կ'ըսէ.*

*Երկու ճամբայ միայն կայ Պարսկաստանէն Այրարատ: Եւ ասոնց ամէնէն հարթն ու կարճն է Երասխ գետին արեւելեան ափունքը. իսկ միւսն է Բագրեւանդի կամ Պայազիտի ճամբան, կրկին լեռնագօտիներու մէջ, եւ այն ճամբէն է որ կարաւաններ կ'երթեւեկեն մինչեւ ցայժմ Դավրէժէն Էրզրում։*

*Արդ, դիտել կուտայ, այս երկու ճամբաներէն ո՛ր մէկն ալ ընտրէ Դավրէժի եւ Խոյի վրայէն եկող բանակ մը, անպատճառ պիտի անցնի Արտազու դաշտին մէջէն կամ քովէն։*

*Այս դիտողութիւնը հիմնուած է սա՛ իրողութեան վրայ, որ Պարսիկ բանակին կեդրոնավայրն է Հեր եւ Զարեւանդ գաւառը, որ միշտ բնուկ ճամբան եղած է Պարսկաստանէն Հայաստան, եւ Պարսիկք միշտ այս գիծէն յարձակած են Հայաստանի վրայ պատերազմներու ատեն։*

Հեր *կը համապատասխանէ հիմակուան* Խոյ *գաւառին, իսկ* Զարեւանդ՝ Սալմաստ *կամ* Տիլմաճ *գաւառին, երկուքն ալ կից Ուրմիոյ ծովուն* (Տեղագիր Հայոց Մեծաց *էջ* 57)։

«Ուստի յԱրտազ պէտք էին դիմաւորել Հայք զՊարսիկս եթէ կ'ուզէին արգիլել նոցա Հայաստան մտնելը, ինչպէս եւ յԱրտազ դիմելու են Պարսիկք եթէ հարկ ըլլայ պաշտպանել զԱտրպատական ընդդէմ թշնամւոյ մը, որ թէ ի Բագրեւանդայ եւ թէ յԵրասխայ դաշտէն կրնայ անդ հասանել:

«Աւարայրի պատերազմէն 1063 տարի ետքը, այս է 22 Օգոստոս 1514ին, Եաւուզ Սուլթան Սէլիմ՝ Շահ Իսմաիլի բանակները նոյն տեղերը խորտակեց, քանզի Չալտըրանի դաշտը նոյն ինքն Շաւարշականն է: Սէլիմ Բագրեւանդայ եւ Մակուայ ճամբով կուգար, Իսմաիլ ալ Խոյի (Միք. Փորթ. ԵՂԻՇԷ էջ 341–42 ծնթ.):

Միքայէլ Փորթուգալ, կ'եզրակացնէ, թէ «պատերազմին վայր Մեծ դաշտ մի է ընդ մէջ Արտազ եւ Հեր եւ Զարեւանդ գաւառաց», թէ այդ դաշտը Արտազու կից կամ անոր մասն ըլլալուն համար, կ'ըսուի Արտազու դաշտ: Դաշտիս մէջ գետ մը պիտի ըլլայ՝ Տղմուտ, որոյ մէկ կողմը Հայք՝ միւս կողմը Պարսիկք բռնեցին: Գետը դժուարութիւններ կը մատուցանէ Պարսից. բայց Հայք աւելի հըմուտ վայրացն դիւրաւ կ'անցնին: Տղմուտին ոռոգած մասին կամ գոնեա սորա հարաւային ափանց՝ Փարպեցին «Տղմուտ դաշտ» կ'ըսէ. իսկ Եղիշէ կ'անուանէ «դաշտ Աւարայրի». վասն զի Աւարայր, ըստ Փարպեցւոյ, գիւղ մի էր, եւ այդ գիւղի մօտ բանակեցան Պարսիկք՝ ի շրջափակ տեղի Տղմուտ դաշտի: Դաշտին եզերքը (այս է ըստ աշխարհագրական քարտիսից՝ արեւմտեան և հիւսիսային կողմերը) կը գտնուին «լեռնադաշտք եւ ամուրք ձորոց»:

*Եւ յետոյ, հետեւելով Պ. Գալուստ Շիրմազան-եանի տեղագրութեան եւ տեղեկագրութեան* (ԱՐԱ-ՐԱՏ ամսագիր *Էջմիածնի*, 1872, *Նոյեմբեր եւ Դեկ-տեմբեր*) *սա՛ քաղուածը կու տայ.*

— «*Ցարեւելս Մասեաց եւ ի հիւսիսոյ Մակուայ գետոյ, կայ արդարեւ տափարակ տեղի մը, զոր հարթ է նախնեաց Գերատոյ դաշտն համարել, եւ որ շարունակութիւն մի է Շարուրայ դաշտին, յոր-մէ կը բաժանի Երասխաւ։ Բայց ըստ քննութեանց Պ. Շիրմազանեանի այդ Գերատոյ կամ Մակուայ դաշտը չէ Աւարայրինը, ըստ որում չէ* շրջափակ *ու անյարմար է պատերազմի։*

*Մակուայ գետն անցնելէ ետքը, դէպ ի հարաւ երթալով, կը հասնիս, ասէ, երկրորդ դաշտի մը, որ գլխաւոր գիւղին անուամբը մարթ է կոչել զնա Քարաչեադին։ Այդ երկրորդ դաշտն ալ կը խառնուի երրորդի մը հետ, զոր այժմ Զորսի դաշտ կը կոչեն, եւ որ կը զատուի յերկրորդէն՝ միայն Ազատ գետով։*

*«Ըստ Թադէի վանականաց՝ այդ Ազատն է Տըղ-մուտ գետը, եւ լեռներով շրջափակ Զորսը՝ Աւա-րայրի դաշտը։*

*«Ուստի Պարսիկք Ազատ եւ Խոյ գետոց մէջ-տեղը՝ Զորսի դաշտին մէջ, իսկ Վարդանանք նոյն դաշտին Ազատայի հիւսիսակողմը գտնուող Քարա-չեադինի մասին մէջ բանակած ըլլալու են։*

*«Վանականք ի հնուց հետէ սովորութիւն ունին, Քարաչեադինը անցնելէ ետքը Վարդանանց շարա-կանը երգելու։*

*«Մեր ճանապարհորդը Զորսի դաշտին հողը կաւային եւ կարդէ դուրս տղմուտ տեսեր էր, եւ ամենայն կերպով յարմար բանակ մը պատրաստելու։*

«Ցարեւելս Զորսի դաշտին է աւանն Մառական. այս կողմերս նշանաւոր է այծեմի պորտին արտադրած մուշկը կամ քարացեալ արիւնը, որ դեղի համար սուղ կը վաճառի։ Ռամկական աւանդութիւն մը կ'ըսէ, թէ այդ մուշկը Վարդանանց Պատերազմէն յառաջ չէր ըլլար, եւ թէ այծեմունք այդ սրբազան տեղեաց վրայ երեք օր արածուելէ ետքը կը սկսին արտադրել զայն։

«Պայազիտի, Մակուայ եւ սոցա գեղերուն Հայք՝ տարին մի անգամ սաստիկ պահք կը պահեն սուրբ Վարդանայ համար Հոկտեմբերի վերջերը։

..........«ի հարաւոյ Ս. Թադէի վանաց Պ. Տիրմազանեան տեսեր էր Տաւարչան քաղաքին աւերակները» (Միք. Փորք. Անդ, էջ 342–43 ծնթ.)։



# ԹԱՆԿԱԳԻՆ ՅԻՇԱՏԱԿԱՐԱՆ ՄԸ

## ՇՀԹ — 1130

*ԵՂԻՇԷԻ Վարդանանց Պատմութեան* ամէնէն հին ձեռագիրներէն մէկը, որ գրուած է 1174ին, կը գտնուի Ս. Էջմիածնի Մատենադարանին մէջ: Իսկ այս թանկագին յիշատակարանը ա՛յն Ձեռագրին է, որ գրուած է 1130ին, Այնթապի մօտ, Տլուքի Ս. Պօղոս վանքին մէջ, Ս. ՎԱՐԴԱՆ Եկեղեցւոյ հովանւոյն տակ, Սամուէլ Եպիսկոպոսի Առաջնորդութեան ատեն, գրիչ ՅԱԿՈԲՈՍի ձեռքով: Այդ չքնաղ Ձեռագիրը, Պիթլիսի Ամրտօլ վանքին սեփականութիւնն էր, եւ ես 1900ի Մայիս ամսուն մէջ քննած եմ զայն եւ ձեռքովս օրինակած եմ ատոր այս թանկագին յիշատակարանը եւ հրատարակած իմ ԾՈՎՔ անուն գրքոյկին մէջ (էջ 49)։

— *«Գրեցաւ յիշատակարանս Քաջին Վարդանայ եւ Սրբոց Ընկերաց իւրոց եւ Սուրբ Քահանայից եւ Աշակերտաց նոցուն, եւ Նախարարացն Հայոց, որք նահատակութեամբ եւ հեղմամբ արեան իւրեանց հերքեալ կործանեցին զզրադաշտական մոլորութիւնն եւ եղեն վկայք Քրիստոսի Աստուծոյ, որոց աղաւթիւք եւ բարեխաւսութեամբ ողորմեսցի Քրիստոս Աստուած՝* ՀՕՐ ՍԱՄՈՒԷԼԻ, *որ զընտրեալ աւրինակս շնորհեաց եւ բազում սատար եղեւ գրոյս։*

*«Եւ ես անպիտան եւ վերջին ի գրչաց* ՅԱԿՈՎԲՈՍ՝ *մեծաւ փափագանաւք եւ արտաջան աշխատութեամբ ըստ կարի իմոյ գրեցի եւ կատարեցի զսա աւգնականութեամբ եւ շնորհաւք Սուրբ Հոգւոյն։ Վասն որոյ աղաչեմ զամենեսեան, յիշեսջիք զգծողս, որ բազում մեղաւք վիրաւորեալ եմ ի սատանայէ, եւ արտասուաւք պաղատիմ ամենեցուն, ողորմեցարուք ինձ բանիւ առ Աստուած, յիշելով զծնողս իմ եւ զեղբայրիկն իմ, որ սակաւ ժամանակաւ յառաջ ի մահ կոչեցաւ ի Տեառնէ, եւ բարեխաւսութեամբ այս Սրբոյս եւ ամենայն Սրբոց ողորմեսցի Քրիստոս Աստուած մեզ եւ ամենեցուն առ հասարակ ի գալստեան իւրում. Ամէն։*

*«Ի Թուականն Հայոց ՇՀԹ, ի բռնակալութիւնն Փռանգաց* կոմսին Ճաւսլնին: *Բայց գրեցաւ ի* Գաւառս ՏԼՈՒՔ *կոչեցեալ, ի Վանքս* ՊԱՒՂՈՍ*ի, ընդ հովանեաւ* ՍՈՒՐԲ ՋԱՒՐԱՎԱՐԻՍ *եւ յԱռաջնորդութեանն Սուրբ Հաւրն* ՍԱՄՈՒԷԼ*ի»*։

# ՄԱՏԵՆԱԳՐՈՒԹԻՒՆ


Մ. ԽՈՐ. — Մովսէսի Խորենացւոյ Պատմութիւն Հայոց. տպ. 1881, Վենետիկ. ի Վանս Մխիթարեանց։

Փ. ԲՈՒԶ. — Փաւստոսի Բուզանդացւոյ Պատմութիւն Հայոց, ի Չորս Դպրութիւնս. Երրորդ Տպագրութիւն, 1914. Վենետիկ, ի Տպարանի Սրբոյն Ղազարու։

Ղ. ՓԱՐՊ. — Ղազարայ Փարպեցւոյ Պատմութիւն Հայոց եւ Թուղթ առ Վահան Մամիկոնեան, Երրորդ Տպագրութիւն. 1891. Վենետիկ. ի Վանս Սրբոյն Ղազարու։

ԵՂԻՇԷ — Սրբոյ Հօրն Մերոյ Եղիշէի Վարդապետի Մատենագրութիւնք, ըստ ընտրելագոյն ընթերցուածոց գրչագրաց. տպ. 1859, Վենետիկ. ի Տպարանի Սրբոյն Ղազարու։

ԿՈՐԻՒՆ — Կորիւն, Պատմութիւն Վարուց եւ մահուան Սրբոյն Մեսրոպայ Վարդապետի Մերոյ Թարգմանչի. տպ. 1894, Վենետիկ, Սուրբ Ղազար։

ՉԱՄՉԵԱՆ — Պատմութիւն Հայոց, ի սկզբանէ աշխարհի մինչեւ ցամն Տեառն, 1874. յերիս հատորս, ի Հայր Միքայէլ Վրդպէ. Չմչեանց, եւն. տպ. 1784–86. Վենետիկ. ի Տպարանի Յովհաննու Փիացեանց։

ՏԵՂԱԳԻՐ — Տեղագիր Հայոց Մեծաց, Հ. Ղ. Վ. Ալիշանեանի, տպ. Վենետիկ, 1855, ի Ս. Ղազար։

ՅՈՒՇԻԿՔ — Հայրենեաց Հայոց ի Հ. Ղեւոնդէ Մ. Ալիշան. Հատոր Ա. տպ. 1869. ի Ս. Ղազար Վենետկոյ։

ԵՂԻՇԷ, ՔՆՆ. Ուսմ. — Եղիշէ, Քննական Ուսումնասիրութիւն, գրեց Բարգէն Ծ. Վ. Կիւլէսէրեան ի Դպրեվանուց. տպ. 1909, Վիեննա, Մխիթարեան Տպարան։

ՄԻՔ. ՓՈՐԹ. — Եղիշէի Վարդապետի վասն Վարդանայ եւ Հայոց Պատերազմին եւ Քննադատութիւնք Միքայէլ Փաշայի Փորթուգալ. տպ. 1903. Վենետիկ, ի Տպարանի Սուրբ Ղազարու։

ԱՆԴՐԻԿ· — Հ· Ն· *Անդրիկեան· Բիւզանդիոնի Մամիկոնեան-ները· տպ·* 1904· *Վենետիկ, Սուրբ Ղազար։*

ԿԻՊՊԸՆ — The History of the Decline and Fall of the Roman Empire, by EDWARD GIBBON, Esq. with notes, by the Rev. H. H. Milman, a new edition. in five volumes. Philadelphia: Porter & Coates, 1880.

ՄՈՄՍէՆ — The History of Rome, by THEODOR MOMMSEN, trans lated by William P. Dickson, D. D., The Popular Editon, (in four volumes). London, Richard Bentley & Son. 1881.



# ԲԱԲԳԷՆ ՍՐԲԱԶԱՆԻՆ ԳՈՐԾԵՐԸ

## Ա.

## ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹԻՒՆՆԵՐ

1.– ԿԻԼԻԿԻԱ, Տպ. Թիփլիս, 1896: էջ 40:

2.– ԾՈՎՔ, ՏԼՈՒՔ, ՀՌՈՄԿԼԱՅ, Տպ. Վիեննա. 1904: էջ 127:

3.– ԿՈԼՈՏ ՅՈՎՀԱՆՆԷՍ ՊԱՏՐԻԱՐՔ, Տպ. Վիեննա. 1904: էջ 235:

4.– ԵՂԻՇԷ. ՔՆՆԱԿԱՆ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹԻՒՆ, Պսակուած Յովսէփ-Իզմիրեանց մրցանակով. Տպ. Վիեննա. 1908: էջ 464:

5.– ՀԱՅԱՍՏԱՆեԱՅՑ ԵԿԵՂԵՑԻՆ ՀԻՆԳԵՐՈՐԴ ԴԱՐՈՒ ՄԷՋ, Տպ. Կ. Պոլիս. 1912: էջ 118:

6.– ՔԱՋՆ-ՎԱՐԴԱՆ, Կենսագրութիւն Հայոց Մեծ Սպարապետ ՎԱՐԴԱՆ ՄԱՄԻԿՈՆԵԱՆԻ, Պտմ. Վարդանանց Պատերազմին եւ Ուսումնասիրութիւնք. Տպ. Պոստոն. 1920: էջ 176:

## Բ.

## ԵԿԵՂԵՑԱԿԱՆ ԳՈՐԾԵՐ

7.– ԺՈՂՈՎՈՒՐԴԻՆ ՏՕՆԱՑՈՅՑԸ, Տպ. Կ. Պոլիս. 1901: էջ 86:

8.– ՄԻՒՆԱՃԱԹ. Աղօթագիրք մը յատկապէս պատրաստուած թուրքերէն խօսող Հայոց համար: Գ. րդ տպ. Կ. Պոլիս: էջ 327:

9.— ՔԱՐՈԶՆԵՐ, Ա. Հատոր, տպ. Կ. Պոլիս, 1904: էջ 403:

## Գ.

## ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹԻՒՆՔ

10.– ԼՈՅՍ, Շաբաթաթերթ Եկեղեցագիտական. Տպ. Կ. Պոլիս, Ա. Տարի, 1905. էջ 1260: Բ. Տարի, 1906, էջ 1248:

11·– ՅԻՇԱՏԱԿԱՐԱՆ Պասմաճեան Գրիգոր Պատրիարքի, Յառաջաբան եւ Բնագիր, Տպ· Փարիզ: էջ 153:

12·– ԽՈՐԷՆ ՊԱՏՐԻԱՐՔԻ (Աշըխեան) գրած ժամանակակից Պատմութիւնը, իր Պատրիարքութենէ հրաժարումէն ետքը, Տպ· Կ· Պոլիս·, որ դժբախտաբար այրեցաւ բոլորովին Տէր Ներսէսեան Եղբարց Տպարանին հրդեհի ատեն, եւ միայն օրինակ մը պրծաւ:

## Դ·

## ՀՐԱՏԱՐԱԿԵԼԻ

— ՄԱՅՐ ՑՈՒՑԱԿ Կ· Պոլսի Ազգային Մատենադարանի 300–ի մօտ հայերէն ձեռագիրներուն:

— ՄԱՅՐ ՑՈՒՑԱԿ Անկիւրիոյ Կարմիր Վանքի 300–է աւելի հայերէն ձեռագիրներուն:

— ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ԱՆԿԻՒՐԻՈՅ:

— ՀԱՅԱՍՏԱՆԵԱՅՑ ԵԿԵՂԵՑԻ, Դասեր Աւետարանէն:

— ՕՐՄԱՆԵԱՆ ՍՐԲԱԶԱՆ, Կենսագրական վերլուծումներ:

